## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ, 1980

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути) — теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՈՂԱԳՈՐԾՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ



### ՍՈՎԵՏՆԵՐԸ ԵՎ ԿՅԱՆՔԸ



### ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐ



### ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ԳԻՏՈՒԹՅՈՒՆ. ԱՃԻ ԱՍՏԻՃԱՆՆԵՐ

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ

# ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Մենք, թանկագին Լեոնիդ Իլյիչ, տասներորդ հնգամյակի չորրորդ տարում ձեռք բերված աշխատանքային մեծ հաղթանակի՝ պետությանը հացահատիկի, բանջարեղենի, խաղողի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, եթերայուղատու կուլտուրաների վաճառքի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների գերակատարման առթիվ Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեին, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին, գյուղատնտեսության աշխատավորներին, գիտնականներին ու մասնագետներին, կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական մարմինների աշխատողներին, Հայկական ՍՍՀ-ի բոլոր աշխատավորներին Ձեր հղած ողջույնին նվիրված միտինգի մասնակիցներս, հանրապետության բոլոր աշխատավորների անունից մեր կուսակցության մարտական շտաբին՝ ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին անսահման շնորհակալություն ենք հայտնում մեր աշխատանքը բարձր գնահատելու համար:

Ձեր ջերմ ու սրտագին շնորհավորանքը, ոգեշնչող և մոբիլիզացնող հսկայական ուժի խոսքերը առաջ բերեցին հանրապետության աշխատավորների աշխատանքային ակտիվության նոր հուժկու վերելք: Այս օրերին տեղի ունեցող միտինգներում ու ժողովներում աշխատավորական կոլեկտիվները ստանձնում են նոր սոցիալիստական պարտավորություններ, իրենց անսասան պատրաստակամությունն են հայտնում կուսակցության հոգատարությանը է՛լ ավելի մեծ հաջողություններով պատասխանել կոմունիստական շինարարության բոլոր տեղամասերում:

Սովետական Հայաստանի գյուղատնտեսության, ամբողջ էկոնոմիկայի զարգացման գործում ձեռք բերված բարձր բնագծերը կուսակցության XXV համագումարի որոշումների, ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան և 1978 թվականի հուլիսյան պլենումների կուրսի հետևողական կենսագործման արդյունքն են: Դա կոմունիստական կուսակցության իմաստուն ղեկավարության արդյունքն է, լենինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործման, եղբայրական հանրապետությունների ժողովուրդների բարեկամության ու փոխօգնության արգասիքը, Սովետական Հայաստանի նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի մշտական հայրական հոգատարության արդյունքը:

Մենք լավ ենք հիշում 1979 թվականի նոյեմբերյան պլենումում Ձեր խոսքերը. «Ժողովրդի բարեկեցությունը հետևողականորեն բարձրացնելու համար անհրաժեշտ է կրկնապատիկ, եռապատիկ եռանդով կենսագործել արդյունավետության ու որակի բարձրացման կուսակցության կուրսը»: Մենք մեզ հաշիվ ենք տալիս, թե մեզ վրա ինչպիսի բարձր պատասխանատվություն են դնում

Նամակն ընդունված է հանրապետության աշխատավորության ներկայացուցիչների միտինգում, 1979 թվականի դեկտեմբերի 18-ին:



այդ ցուցումը, Ձեր ողջույնը և այն ցանկությունը, որ հանրապետության գյուղատնտեսության աշխատավորները է՛լ ավելի մեծ եռանդով ու հաստատակամությամբ պայքարեն գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի, նրա արդյունավետության բարձրացման համար, արժանի ավանդ ներդնեն կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումների իրագործման մեջ: Մենք մեր բոլոր ուժերը, ամբողջ եռանդը կգործադրենք, որպեսզի արդարացնենք կուսակցության բարձր վստահությունը, դրանով իսկ մեր արժանի ավանդը կներդնենք տասներորդ հնգամյակի խնդիրների հաջող լուծման գործում:

Հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների անասնապահները, անասնապահական համալիրների, թռչնաֆաբրիկաների ու միջտնտեսային ձեռնարկությունների աշխատողները ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի ու ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը «1979—1980 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար անասնապահության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին»:

Ըստ ամենայնի զարգացնելով ստեղծագործական նախաձեռնությունը, նրանք գտնում են անասունների ու թռչունների մթերատվության բարձրացման, կերի լավագույն օգտագործման, գլխաքանակի լրիվ պահպանման նոր ռեզերվներ, ձգտում են գործն այնպես կազմակերպել, որ ապահովեն մսի, կաթի, ձվի և մյուս մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի զգալի աճ:

Թանկագին Լեոնիդ Իլյիչ,

Մենք ուրախ ենք Կենտրոնական կոմիտեին զեկուցելու, որ Սովետական Հայաստանի աշխատավորները հնգամյակի չորրորդ տարին նոր հաջողություններով են եզրափակում տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր տեղամասերում: Նրանք ամբողջ սրտով միահամուռ կերպով հավանություն են տալիս և պաշտպանում կոմունիստական կուսակցության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը, որը նպատակամղված է մեր սիրելի հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության համակողմանի ամրապնդմանը, խոր հոգատարությամբ է տոգորված սովետական մարդկանց բարօրության նկատմամբ:

Այս բերկրալի և հանդիսավոր օրը մենք՝ միտինգի մասնակիցներս, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության ներկայացուցիչներս, կուսակցական, սովետական, արհմիութենական ու կոմերիտական մարմինների աշխատողներս, հայ ժողովրդի անունից, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների անունից Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, մեծ Լենինի գործի անխոնջ շարունակողին, խորին շնորհակալության խոսքեր ենք հղում Ձեր տիտանական աշխատանքի համար՝ հանուն ժողովրդի բարօրության, Ձեզ քաջառողջություն, անսպառ եռանդ ենք մաղթում՝ հանուն մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճման, հանուն աշխարհում կայուն խաղաղության, հանուն կոմունիզմի հաղթանակի:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին և անձամբ Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, հավաստիացնում ենք, որ այսուհետ ևս անձնվիրաբար, է՛լ ավելի մեծ եռանդով ու հաստատակամությամբ կպայքարենք գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի համար, նոր հաջողությունների կհասնենք հանրապետության տնտեսական ու սոցիալական զարգացման գործում:

Կեցցե՛ մեր մեծ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը:

Փա՜ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ մեր բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին:

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

# ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 110-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ

Մոտենում է Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը: Գիտական մտքի տիտան և իսկական ժողովրդական առաջնորդ, բոլշևիկյան հեղափոխական, կոմունիստական կուսակցության և աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծող Լենինը իր ամբողջ վառ ու հերոսական կյանքը նվիրաբերեց մեծ ու վսեմ գործին՝ պրոլետարիատի և բոլոր ճնշված մասսաների սոցիալական ազատագրության, աշխատավոր մարդկանց երջանկության համար մղված պայքարին:

Դասակարգային պայքարի համաշխարհային ասպարեզ ենելով որպես Մարքսի և Էնգելսի հավատարիմ ու տոկուն հետևորդ, Լենինը համակողմանիորեն զարգացրեց նրանց հեղափոխական ուսմունքը: Օժտված լինելով գիտական կանխատեսության, տեղի ունեցող իրադարձությունների ու երևույթների բուն էության մեջ խորապես թափանցելու անգերազանցելի ձիրքով, դիալեկտիկամատերիալիստական մեթոդը ստեղծագործաբար կիրառելով պատմական նոր պայմանների վերլուծության նկատմամբ, նա սկզբունքորեն կարևոր դրույթներով հարստացրեց մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը, նոր փուլ բացեց նրա զարգացման գործում:

Բոլոր երկրների հեղափոխականների գաղափարատեսական և մեթոդաբանական անգնահատելի զենքն է դարձել լենինյան ուսմունքը իմպերիալիզմի մասին, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի մասին, կուսակցության մասին, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում պրոլետարիատի դասակարգային դաշնակիցների մասին, սոցիալական և ազգային ազատագրության անխզելի կապի մասին, ինչպես նաև տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների մասին: Կարևոր նշանակություն ունեն լենինյան գաղափարները սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին: Լենինի տեսական ստեղծագործության պսակը հանդիսացավ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիների մասին նրա ստեղծած գիտությունը:

Հանճարեղ տեսաբան, համաշխարհային պրոլետարիատի մեծագույն ստրատեգ ու տակտիկ Լենինը կատարելապես տիրապետում էր հեղափոխական պայքարի և կոմունիստական շինարարության ղեկավարման արվեստին:

Լենինին, բոլշևիկների կուսակցությանը վիճակվեց պատմության մեջ առաջին հաղթական սոցիալիստական հեղափոխությունը նախապատրաստելու և գլխավորելու, գիտական սոցիալիզմի տեսությունը ժողովրդական մասսաների ամենալայն պրակտիկայի հետ միացնելու մեծ առաքելությունը:

Միլիոնավոր ճնշվածների և շահագործվողների, բոլոր աշխատավորների համար լենինիզմը դարձել է աշխարհի սոցիալական նորացման խորհրդանիշը, մեր դարաշրջանի հեղափոխական դրոշը: Լենինի անվան, նրա ուսմունքի հետ են կապված XX դարի բոլոր նշանավոր հեղափոխական իրադարձությունները:



Չկա և չի կարող լինել մարքսիզմ, առանց այն նորի, ինչ դրա զարգացման մեջ մուծել է Լենինը: Լենինիզմը արդի դարաշրջանի մարքսիզմն է, միջազգային բանվոր դասակարգի միասնական, ամբողջական, անընդհատ զարգացող ուսմունքը:

Լենինիզմի անանց նշանակությունն այն է, որ նա խոր կերպով և ճշտորեն է արտահայտում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, համաշխարհային սոցիալական առաջընթացի պահանջմունքները, հնարավորություն է ընձեռում մշակել արդիականության ամենահրատապ, կենսական հարցերի ճիշտ պատասխանները, սովորեցնում է համարձակորեն, ստեղծագործաբար լուծել հասունացած պրոբլեմները, զինում է հասարակական զարգացման հեռանկարների գիտական ըմբռնմամբ: Լենինի գաղափարական բազմահարուստ ժառանգությունը, նրա ուսմունքի հեղափոխական-քննադատական ոգին, օպորտունիստական խեղաթյուրումներից մարքսիզմի արմատական սկզբունքների պաշտպանության գործում հետևողականությունն ու հաստատակամությունը, նրա բովանդակ կյանքը հեղափոխական մտքի և հեղափոխական գործողության անսպառ աղբյուր են ծառայում արդի միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման համար:

Լենինի պատմական մեծագույն ծառայությունը եղավ նրա կողմից նոր տիպի պրոլետարական կուսակցության ստեղծումը, որը գիտական տեսության և հեղափոխական պրակտիկայի անխզելի միասնության կենդանի մարմնացումն է, սոցիալիստական հեղափոխության և նոր հասարակության կառուցման ոգեշնչողը, առաջնորդը:

Ընթանալով Լենինի նշած ուղիով, սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ իրականացրեց երկրի սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, ամբողջ աշխարհին տվեց ազգային հարցի արդարացի լուծման օրինակ: Մեր հայրենիքը շատ կարճ ժամանակում վերածվեց սոցիալիստական հզոր տերության: Սովետական մարդիկ պաշտպանեցին Հոկտեմբերի նվաճումները ներքին հակահեղափոխության և ինտերվենցիայի դեմ մղված պայքարում: Ամբողջ մարդկության բախտի վրա հեղափոխականացնող վիթխարի ազդեցություն գործեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած հաղթանակը:

Լենինյան գաղափարների կենսագործման ուղղությամբ ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի գործունեության համաշխարհային պատմական արդյունքը եղավ զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը, որի մեջ ավելի ու ավելի լիակատար չափով են բացահայտվում նոր հասարակարգի ստեղծարար ուժերը, նրա իսկական մարդասիրական էությունը:

Մեր բոլոր հաղթանակների գլխավոր աղբյուրը կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունն է, կոմունիստների ունակությունը՝ Լենինի խոսքերով ասած, միաձուլվելու, որոշակի չափով ձուլվելու աշխատավորների ամենալայն մասսայի հետ, բարձրացնելու նրանց եռանդը, հերոսությունն ու խանդավառությունը, հեղափոխական լարված ջանքերը կենտրոնացնելով հերթական կարևորագույն խնդիրների վրա: Կուսակցությունը այդպես լենինաբար էր գործում թշնամական կապիտալիստական շրջապատման մեջ գտնվող մեկ երկրում սոցիալիզմի կառուցման և պաշտպանության ընթացքում: Նա այդպես էր գործում աշխարհում առաջին զարգացած սոցիալիզմի հասարակարգի ստեղծման ասպարեզում: Նա այդպես կգործի նաև այսուհետև:

Պատմության ընթացքը, այն խորագույն վերափոխումները, որոնք արմատապես փոխեցին արդի աշխարհի կերպարանքը, բերում են լենինյան գաղափարների ճշմարտացիության և անխորտակ ուժի նորանոր ապացույցներ:

Լենինիզմի դրոշով սոցիալիստական հեղափոխությունները հաղթանակեցին Եվրոպայի, Ասիայի և Լատինական Ամերիկայի մի շարք երկրներում: Մարքսիզմ-լենինիզմի, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիմքի վրա համախմբված համաշխարհային սոցիալիստական ընկերակցությունը գտնվում է սոցիալիստական առաջընթացի ավանգարդում, հանդիսանում ամենազինամիկ տնտեսական ու քաղաքական ուժը, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության պատվարը: Կյանքը հաստատեց Լենինի կանխատեսությունը

վորում են քաղաքական և աշխատանքային բարձր խանդավառության պայմաններում: Մոսկվայի և Լենինգրադի արտադրության առաջավորների նախաձեռնությամբ երկրում հայրենասիրական շարժում է ծավալվել անձնական հնգամյա առաջադրանքները մինչև 1980 թվականի ապրիլի 22-ը կատարելու համար:

**Սերտորեն համախմբված կուսակցության Կենտրոնական կոմիտեի, հավատարիմ լենինյան ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի Քաղբյուրոյի շուրջը, սովետական ժողովուրդը ջերմորեն հավանություն է տալիս և միահամուռ պաշտպանում ՍՄԿԿ-ի գլխավոր կուրսը, նրա ներքին և արտաքին քաղաքականությունը: Իր փորձված ավանգարդի ղեկավարությամբ մեր երկիրը լենինյան ուղիով վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ:**

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշեց Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը նշել որպես համաժողովրդական մեծ տոն: Մոսկվա քաղաքում, հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային կենտրոններում, աշխատավորների կոլեկտիվներում, զորամասերում և ստորաբաժանումներում անցկացնել հանդիսավոր ժողովներ:*

*Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, ՍՍՀՄ զինված ուժերի քաղմարմիններին առաջարկված է քաղաքական ու կազմակերպչական ակտիվ աշխատանք ծավալել հոբելյանի նախապատրաստության ուղղությամբ, ուժերը կենտրոնացնել կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների, կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների կատարման վրա, մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ըստ ամենայնի ամրապնդման վրա: Լենինյան համարձակությամբ և սկզբունքայնությամբ առաջադրել ու լուծել մեր զարգացման հասունացած պրոբլեմները, ապահովել աշխատավորների լայն մասնակցությունը եղած թերությունների հաղթահարմանը:*

*Պանծալի տարեդարձի նախապատրաստությունն ու տոնակատարությունը կոչված են ըստ ամենայնի նպաստելու ժողովրդի աշխատանքային ու հասարակական ակտիվության հետագա զարգացմանը, ջանքերի մոբիլիզացմանը 1980 թվականի պլանը կատարելու, տասնմեկերորդ հնգամյակի հաջող մեկնարկի լավ հիմք ստեղծելու համար: Կուսակցական, պետական և տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի, արտադրության ինտենսիվացման արագացման, գիտատեխնիկական առաջընթացի, էկոնոմիկայի պլանավորման և նրա կառավարման կատարելագործման, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության ուժեղացման հարցերը:*

*Հանձնարարել 1980 թվականի մարտ-ապրիլ ամիսներին անցկացնել «Ապրել, աշխատել և պայքարել լենինաբար, կոմունիստաբար» օրակարգով կուսակցական դռնբաց ժողովներ, դրանցում քննարկել կուսակցական կազմակերպությունների խնդիրները՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների, սույն որոշման, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումների լույսի ներքո:*

*Մասսայական սոցիալիստական մրցություն ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու, տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար: Սահմանել լենինյան պատվոգիր մինչև հոբելյանը հնգամյա առաջադրանքները կատարած աշխատավորական կոլեկտիվներին և արտադրության առաջավորներին պարգևատրելու համար:*

*Գիտատեխպետկոմին, ՀԱՄԿԽ-ին, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ մրցության հաղթողների համար նախատեսել անհրաժեշտ քանակությամբ ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ուղեգրեր՝ լենինյան հուշավայրերի այցելությամբ:*

*Կուսակցական և կոմերիտական քաղաքական ուսուցման, տնտեսագիտական կրթության սիստեմում, ուսումնական հաստատություններում, գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքում գլխավոր ուշադրությունը նվիրել Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ-ի պատմական փորձի խոր ուսումնասիրմանը՝ տնտեսական ու քաղաքական կոնկրետ խնդիրների լուծման հետ անխզելի կապի մեջ: Համակողմանիորեն բացահայտել լենինյան գաղափարների միջազգային նշանակությունը, նրանց հրատապությունը, ամենահաղթ ուժը: Լայնորեն ցույց տալ կուսակցության հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը Լենինի պատգամների կենսագործման, մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացման ուղղությամբ, ըստ ամենայնի պրոպագանդել զարգացած սոցիալիստական հասարակության նվաճումները, ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը: Համոզիչ կերպով պարզաբանել սոցիալիստական ընկերակցության ժողովուրդների պատմական նվաճումները, կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունները:*

*Ապահովել գաղափարադաստիարակչական գործունեության կատարելագործումը «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը համապատասխան: Հատուկ ուշադրություն դարձնել աշխատավորներին Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության օրինակով, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով դաստիարակելուն:*

*Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը՝ ծավալել դասախոսությունների, զեկուցումների ընթերցում, Մոսկվայում, միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասային ու մարզային կենտրոններում անցկացնել հասարակական-քաղաքական ընթերցումներ՝ «Լենինի գործը ապրում և հաղթանակում է»:*

*Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, կուլտուրայի մարմիններին՝ անցկացնել հանդիպումներ հեղափոխության վետերանների, պատերազմի և աշխատանքի հերոսների հետ, արշավներ և էքսկուրսիաներ դեպի լենինյան վայրերը, ներկայացումների, կինոֆիլմերի և հեռուստատեսային ֆիլմերի, երաժշտական փառատոներ, գեղարվեստական ցուցահանդեսներ, ընթերցողների կոնֆերանսներ՝ նվիրված Վ. Ի. Լենինին, կոմունիստական կուսակցությանը:*

*Նորացնել պետական և ժողովրդական թանգարանների, լենինյան սենյակների էքսպոզիցիաները, կազմակերպել Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության մասին պատմող գրքերի ցուցահանդեսներ և լուսանկարչական ցուցահանդեսներ, գրադարանների, կուլտլուսհիմնարկների, դիտողական ագիտացիայի ստուգատես-մրցույթներ:*

*ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին, հասարակական գիտությունների ակադեմիային՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ համատեղ Մոսկվայում 1980 թվականի ապրիլին անցկացնել գիտական կոնֆերանս՝ «Մարքսիզմ-լենինիզմը և արդի դարաշրջանը»:*

*Թերթերի ու հանդեսների խմբագրություններին, ՏԱՍՍ-ին, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմին՝ լայնորեն լուսաբանել Վ. Ի. Լենինի հոբելյանի նախապատրաստությունն ու տոնակատարությունը:*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կոմունիստներին, կոմերիտականներին, բոլոր սովետական մարդկանց կոչ է անում՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի հոբելյանը դիմավորել կոմունիզմի համար մղվող պայքարի նոր հաջողություններով, տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին դարձնել լենինյան հարվածային աշխատանքի տարի:*

*Կեցցե՛ լենինիզմը՝ հեղափոխական պայքարի, կոմունիզմի կառուցման և խաղաղության դրոշը:*

*Թո՛ղ դարեդար ապրեն մեծ Լենինի անունն ու գործը:*

*Կեցցե՛ կոմունիզմ կառուցող սովետական մեծ ժողովուրդը:*

*Կեցցե՛ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցությունը:*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

---

Հետևելով լենինյան պատգամներին, ՍՄԿԿ-ն քննադատաբար է գնահատում ձեռք բերվածը, իր ջանքերը նպատակամղում է հասունացած պրոբլեմների լուծմանը, համարձակորեն բացահայտում թերությունները, կոմունիստներին, աշխատավորներին մոբիլիզացնում է զարգացած սոցիալիզմի բոլոր հնարավորությունների առավելագույն արդյունավետ օգտագործման համար, ժողովրդի աշխատանքով ստեղծված ամեն ինչի նկատմամբ խնամքով հոգատար վերաբերմունքի համար:

ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումներում, պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում որոշված են սովետական էկոնոմիկայի հետագա վերելքի արմատական պրոբլեմները, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի էական բարձրացման, ժողովրդի բարեկեցության աճի կոնկրետ ուղիները:

Կուսակցության ուշադրության կենտրոնում են գտնվում հետևյալ հիմնական պրոբլեմները՝ վառելիքա-հումքային բազայի, էներգետիկայի, մետալուրգիայի, մեքենաշինության և քիմիական արդյունաբերության զարգացումը, տրանսպորտում, կապիտալ շինարարության մեջ գործերի վիճակի էական և անհետաձգելի բարելավումը, գյուղատնտեսության վերածումը էկոնոմիկայի բարձր զարգացած հատվածի, պարենամթերքի, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացումը:

Մեծ աշխատանք է ծավալվել էկոնոմիկայի պլանավորումն ու նրա կառավարումը, ամբողջ տնտեսական մեխանիզմը կատարելագործելու ուղղությամբ: Կուսակցությունը բոլոր կուսակցական, պետական ու հասարակական կազմակերպություններից, տնտեսական մարմիններից պահանջում է կարգապահության ու կարգուկանոնի հետագա ամրապնդում, ամենօրյա տքնաջան կազմակերպչական և դաստիարակչական աշխատանք, գործի նկատմամբ նախաձեռնողական և պատասխանատու վերաբերմունք, ընդունած որոշումների անշեղ կատարում:

Իր ամբողջ աշխատանքում կուսակցությունը հենվում է երկրի հզոր գիտական պոտենցիալի վրա, մշտապես հոգատարություն է ցուցաբերում ժողովրդի կրթության, հասարակության հոգևոր հարստության աճի մասին, կուսակցականության և ժողովրդայնության լենինյան սկզբունքների հիման վրա զարգացող բազմազգ սոցիալիստական կուլտուրայի արժեքները բազմապատկելու մասին: ՍՄԿԿ-ն առաջնահերթ ուշադրություն է նվիրում աշխատավորների կոմունիստական գիտակցականության զարգացմանը, գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավմանը, պրոպագանդայի գիտական մակարդակի, նրա մատչելիության և արդյունավետության բարձրացմանը, կյանքի հետ նրա կապի ամրապնդմանը: Կուսակցությունը հասարակության բոլոր անդամներին դաստիարակում է մարքսիզմ-լենինիզմի, սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, աշխատանքի ու հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, քաղաքական զգոնության և բուրժուական գաղափարախոսության նկատմամբ անհաշտության ոգով:

Անշեղորեն պահպանվում են կուսակցական կյանքի լենինյան նորմաները և կուսակցական ղեկավարման սկզբունքները, հետևողականորեն զարգացվում են ներկուսակցական դեմոկրատիան, քննադատությունն ու ինքնաքննադատությունը, բարձրացվում է պահանջկոտությունը ՍՄԿԿ յուրաքանչյուր անդամի նկատմամբ: Որքան ավելի են աճում ստեղծարար գործունեության մասշտաբները և բարդանում խնդիրները, իսկ պատմական գիտակցական ստեղծագործության մեջ են ներգրավվում ավելի ու ավելի լայն ժողովրդական զանգվածներ, այնքան ավելի անշեղորեն աճում է կոմունիստական կուսակցության՝ հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերը: ՍՄԿԿ-ն, նրա Կենտրոնական կոմիտեն սրբությամբ պահպանում ու բազմապատկում են լենինյան հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթները:

Մեծ Լենինի գաղափարների նկատմամբ հավատարմությամբ է տոգորված Սովետական Միության կոմունիստական կուսակցության ամբողջ միջազգային գործունեությունը: Լենինի կողմից առաջ քաշված և գիտականորեն հիմնավորված՝ պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, խաղաղ գոյակցության սկզբունքները իրականացվում են Սովետական Միության արտաքին քաղաքականության ասպարեզում: ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը արել են և անում են ամեն հնարավոր բան սոցիալիստական երկրների միասնությունն ու համախմբվածությունն ամրապնդելու համար, իմպերիալիզմի, նեոգաղութատիրության և ռասիզմի դեմ պայքարող ժողովուրդներին օգնություն և աջակցություն ցույց տալու, խաղաղությունն ու միջազգային անվտանգությունն ամրապնդելու, սպառազինությունների մրցավազքը դադարեցնելու և զինաթափում կատարելու համար:



ՍՄԿԿ-ն առաջ է քաշել խաղաղության ծրագիր և հետևողականորեն պայքարում է դրա իրականացման համար: Սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների միջև մի ամբողջ շարք պայմանագրերի կնքումը և նրանց միջև փոխշահավետ համագործակցության զարգացումը, Եվրոպայի անվտանգության ու համագործակցության համաեվրոպական խորհրդակցության հաջող անցկացումը հանգեցրին միջազգային լարվածության թուլացման պրոցեսի խորացման: Աշխարհի քաղաքական կլիմայի էական առողջացմանը կարող է նպաստել ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման սովետա-ամերիկյան երկրորդ պայմանագրի ուժի մեջ մտնելը: Եվրոպայում սպառազինությունների ու զինված ուժերի կրճատման և խաղաղության ու անվտանգության իսկական ամրապնդման ռեալ հեռանկարներ են բացում Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների կոնստրուկտիվ առաջարկությունները, Սովետական Միության նոր խաղաղ նախաձեռնությունները:

ՍՍՀՄ-ը, սոցիալիստական երկրները, մոլորակի բոլոր խաղաղասեր ուժերը հաստատակամորեն պայքարում են հանուն այն բանի, որ լարվածության թուլացումը մնա միջազգային հարաբերությունների առաջատար միտումը, որ քաղաքական լարվածության թուլացումը լրացվի ռազմական լարվածության թուլացմամբ:

Աշխարհում տեղի ունեցող պոզիտիվ փոփոխությունները հանդիպում են իմպերիալիստական ռեակցիայի կատաղի դիմադրությանը: Միլիտարիստական և ռեակցիոն շրջանները ակտիվացնում են իրենց ելույթներն ընդդեմ լարվածության թուլացման, ձգտում են իրենց օգտին փոխել ուժերի հարաբերակցությունը, ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, փորձում են միջամտել ուրիշ երկրների ներքին գործերին, ճնշել ժողովուրդների ազատագրական շարժումները:

Որպես իմպերիալիզմի ուղղակի աջակից հանդես է գալիս Չինաստանի ղեկավարությունը, որը վարում է խաղաղության և սոցիալիզմի գործի համար թշնամական, մեծապետական, հեգեմոնիստական քաղաքականություն: Մերկացնելով այդ քաղաքականության ռեակցիոն էությունը, ցույց տալով մաոիզմի գաղափարախոսության ու պրակտիկայի անհամատեղելիությունը գիտական սոցիալիզմի հետ, ՍՄԿԿ-ն դրա հետ մեկտեղ անշեղորեն հանդես է գալիս ՍՍՀՄ-ի և ՉԺՀ-ի միջպետական հարաբերությունների նորմալացման օգտին, նրանց իսկական բարիդրացիության և փոխշահավետ համագործակցության օգտին:

Մարքս-լենինյան գաղափարների ձգողական ուժը, ռեալ սոցիալիզմի հեղինակության և ազդեցության աճը առաջ են բերում դասակարգային հակառակորդի կատաղի դիմադրությունը: Բուրժուազիան և նրա գաղափարախոսները, ամեն գույնի օպորտունիստներն ու ռևիզիոնիստները ուժեղացնում են պայքարն ընդդեմ կոմունիզմի, փորձում են խեղաթյուրել մարքսիզմ-լենինիզմը, ամլացնել նրա հեղափոխական էությունը, «հակասություններ» գտնել գիտական սոցիալիզմի տեսության և սոցիալիստական երկրներում դրա իրականացման պրակտիկայի միջև: Նրանք ձգտում են նսեմացնել մարքս-լենինյան ուսմունքի համաշխարհային պատմական նշանակությունը, սոցիալիզմի հաջողությունները, վարկաբեկել սոցիալիստական ապրելակերպը: Իմպերիալիզմի և նրա աջակիցների ոտնձգություններին կոմունիստները պատասխանում են իրենց շարքերի ինտերնացիոնալ համախմբման, բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի, դոգմատիզմի, նացիոնալիզմի դեմ, մարքսիզմ-լենինիզմի անաղարտության և նրա ստեղծագործական զարգացման համար հետևողական պայքարով:

Սովետական մարդիկ Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը դիմա-

վորում են քաղաքական և աշխատանքային բարձր խանդավառության պայմաններում: Մոսկվայի և Լենինգրադի արտադրության առաջավորների նախաձեռնությամբ երկրում հայրենասիրական շարժում է ծավալվել անձնական հնգամյա առաջադրանքները մինչև 1980 թվականի ապրիլի 22-ը կատարելու համար:

**Սերտորեն համախմբված կուսակցության Կենտրոնական կոմիտեի, հավատարիմ լենինյան ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը, սովետական ժողովուրդը ջերմորեն հավանություն է տալիս և միահամուռ պաշտպանում ՍՄԿԿ-ի գլխավոր կուրսը, նրա ներքին և արտաքին քաղաքականությունը: Իր փորձված ավանգարդի ղեկավարությամբ մեր երկիրը լենինյան ուղիով վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմ:**

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշեց Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը նշել որպես համաժողովրդական մեծ տոն: Մոսկվա քաղաքում, հանրապետական, երկրամասային, մարզային, օկրուգային, քաղաքային և շրջանային կենտրոններում, աշխատավորների կոլեկտիվներում, զորամասերում և ստորաբաժանումներում անցկացնել հանդիսավոր ժողովներ:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին, ՍՍՀՄ զինված ուժերի քաղմարմիններին առաջարկված է քաղաքական ու կազմակերպչական ակտիվ աշխատանք ծավալել հոբելյանի նախապատրաստության ուղղությամբ, ուժերը կենտրոնացնել կուսակցության XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների, կոմունիստական շինարարության հրատապ խնդիրների կատարման վրա, մեր հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ըստ ամենայնի ամրապնդման վրա: Լենինյան համարձակությամբ և սկզբունքայնությամբ առաջադրել ու լուծել մեր զարգացման հասունացած պրոբլեմները, ապահովել աշխատավորների լայն մասնակցությունը եղած թերությունների հաղթահարմանը:

Պանծալի տարեդարձի նախապատրաստությունն ու տոնակատարությունը կոչված են ըստ ամենայնի նպաստելու ժողովրդի աշխատանքային ու հասարակական ակտիվության հետագա զարգացմանը, ջանքերի մոբիլիզացմանը 1980 թվականի պլանը կատարելու, տասնմեկերորդ հնգամյակի հաջող մեկնարկի լավ հիմք ստեղծելու համար: Կուսակցական, պետական և տնտեսական մարմինների, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման, աշխատանքի արտադրողականության աճի, արտադրության ինտենսիվացման արագացման, գիտատեխնիկական առաջընթացի, էկոնոմիկայի պլանավորման և նրա կառավարման կատարելագործման, կազմակերպվածության ու կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության ուժեղացման հարցերը:

Հանձնարարել 1980 թվականի մարտ-ապրիլ ամիսներին անցկացնել «Ապրել, աշխատել և պայքարել լենինաբար, կոմունիստաբար» օրակարգով կուսակցական դռնբաց ժողովներ, դրանցում քննարկել կուսակցական կազմակերպությունների խնդիրները՝ ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների, սույն որոշման, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումների լույսի ներքո:

Մասսայական սոցիալիստական մրցություն ծավալել Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը արժանավայել դիմավորելու, տասներորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու համար: Սահմանել լենինյան պատվոգիր մինչև հոբելյանը հնգամյա առաջադրանքները կատարած աշխատավորական կոլեկտիվներին և արտադրության առաջավորներին պարգևատրելու համար:

Գիտատեխպետկոմին, ՀԱՄԿԽ-ին, մինիստրություններին ու գերատեսչություններին՝ մրցության հաղթողների համար նախատեսել անհրաժեշտ քանակությամբ ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի ուղեգրեր՝ լենինյան հուշավայրերի այցելությամբ:

Կուսակցական և կոմերիտական քաղաքական ուսուցման, տնտեսագիտական կրթության սիստեմում, ուսումնական հաստատություններում, գաղափարադաստիարակչական ամբողջ աշխատանքում գլխավոր ուշադրությունը նվիրել Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ-ի պատմական փորձի խոր ուսումնասիրմանը՝ տնտեսական ու քաղաքական կոնկրետ խնդիրների լուծման հետ անխզելի կապի մեջ: Համակողմանիորեն բացահայտել լենինյան գաղափարների միջազգային նշանակությունը, նրանց հրատապությունը, ամենահաղթ ուժը: Լայնորեն ցույց տալ կուսակցության հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը Լենինի պատգամների կենսագործման, մարքս-լենինյան ուսմունքի ստեղծագործական զարգացման ուղղությամբ, ըստ ամենայնի պրոպագանդել զարգացած սոցիալիստական հասարակության նվաճումները, ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությունը: Համոզիչ կերպով պարզաբանել սոցիալիստական ընկերակցության ժողովուրդների պատմական նվաճումները, կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի արմատական առավելությունները:

Ապահովել գաղափարադաստիարակչական գործունեության կատարելագործումը «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը համապատասխան: Հատուկ ուշադրություն դարձնել աշխատավորներին Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության օրինակով, կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական և աշխատանքային ավանդույթներով դաստիարակելուն:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին, «Գիտելիք» համամիութենական ընկերության վարչությանը՝ ծավալել դասախոսությունների, զեկուցումների ընթերցում, Մոսկվայում, միութենական հանրապետությունների մայրաքաղաքներում, երկրամասային ու մարզային կենտրոններում անցկացնել հասարակական-քաղաքական ընթերցումներ՝ «Լենինի գործը ապրում և հաղթանակում է»:

Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, կուլտուրայի մարմիններին՝ անցկացնել հանդիպումներ հեղափոխության վետերանների, պատերազմի և աշխատանքի հերոսների հետ, արշավներ և էքսկուրսիաներ դեպի լենինյան վայրերը, ներկայացումների, կինոֆիլմերի և հեռուստատեսային ֆիլմերի, երաժշտական փառատոներ, գեղարվեստական ցուցահանդեսներ, ընթերցողների կոնֆերանսներ՝ նվիրված Վ. Ի. Լենինին, կոմունիստական կուսակցությանը:

Նորացնել պետական և ժողովրդական թանգարանների, լենինյան սենյակների էքսպոզիցիաները, կազմակերպել Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության մասին պատմող գրքերի ցուցահանդեսներ և լուսանկարչական ցուցահանդեսներ, գրադարանների, կուլտլուսհիմնարկների, դիտողական ագիտացիայի ստուգատես-մրցույթներ:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտին, հասարակական գիտությունների ակադեմիային՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ համատեղ Մոսկվայում 1980 թվականի ապրիլին անցկացնել գիտական կոնֆերանս՝ «Մարքսիզմ-լենինիզմը և արդի դարաշրջանը»:

Թերթերի ու հանդեսների խմբագրություններին, ՏԱՍՍ-ին, ՍՍՀՄ հեռուստառադիոպետկոմին՝ լայնորեն լուսաբանել Վ. Ի. Լենինի հոբելյանի նախապատրաստությունն ու տոնակատարությունը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կոմունիստներին, կոմերիտականներին, բոլոր սովետական մարդկանց կոչ է անում՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի հոբելյանը դիմավորել կոմունիզմի համար մղվող պայքարի նոր հաջողություններով, տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին դարձնել լենինյան հարվածային աշխատանքի տարի:

Կեցցե՛ լենինիզմը՝ հեղափոխական պայքարի, կոմունիզմի կառուցման և խաղաղության դրոշը:

Թո՛ղ դարեդար ապրեն մեծ Լենինի անունն ու գործը:

Կեցցե՛ կոմունիզմ կառուցող սովետական մեծ ժողովուրդը:

Կեցցե՛ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցությունը:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ
ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ

## Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1979 թվականի դեկտեմբերի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի արդյունքները և պլենումի որոշումներից, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Պլենումը լսեց Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, Հայկական ՍՍՀ պետպլանի նախագահ ընկ. **Հ. Ս. Սաղոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման 1980 թվականի պետական պլանի մասին» և Հայկական ՍՍՀ ֆինանսների մինիստր ընկ. **Զ. Ա. Զանոյանի** զեկուցումը «Հայկական ՍՍՀ 1980 թվականի պետական բյուջեի մասին և Հայկական ՍՍՀ 1978 թվականի պետական բյուջեի կատարման մասին»:

Զեկուցումների շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Երևանի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. **Ն. Պ. Ստեփանյանը,** ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. **Ռ. Ս. Արզումանյանը,** Հայկական ՍՍՀ առևտրի մինիստր ընկ. **Ս. Ռ. Սաֆարյանը,** ագրոքիմիական պրոբլեմների և հիդրոպոնիկայի ինստիտուտի դիրեկտոր, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս ընկ. **Գ. Ս. Դավթյանը,** «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման բանվոր ընկ. **Ն. Ա. Խլղաթյանը,** «Հայշրշին» գլխավոր վարչության պետ ընկ. **Մ. Գ. Գևորգյանը,** ՀԿԿ Թալինի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Պ. Մ. Խաչատրյանը:**

Պլենումը լսեց նաև «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո հանրապետության կուսակցական, սովետական և մյուս կազմակերպություններում աշխատավորների նամակների հետ տարվող աշխատանքի, քաղաքացիների ընդունելության կազմակերպման վիճակի և հետագա բարելավման միջոցառումների մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. **Հ. Մ. Ոսկանյանը:**

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Օրջոնիկիձեի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Ս. Գրիգորյանը,** Հայկական ՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեի նախագահ ընկ. **Գ. Ա. Մարտիրոսյանը,** Հրազդանի ձեռնարկության բանվորուհի ընկ. **Պ. Կ. Կուլումջյանը,** ՀԱՄԽ-ի քարտուղար ընկ. **Վ. Ֆ. Հարությունյանը,** Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստր ընկ. **Է. Ս. Գաբրիելյանը,** Հայկական ՍՍՀ ներքին գործերի մինիստր ընկ. **Ե. Գ. Պատալովը,** «Կոմունիստ» թերթի խմբագիր ընկ. **Բ. Մ. Մկրտչյանը:**

Պլենումում ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի նամակների բաժնի վարիչի առաջին տեղակալ ընկ. **Վ. Ի. Լոբուսովը:**

Քննարկված հարցերի վերաբերյալ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը ընդունեց համապատասխան որոշումներ:

Եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Կենտկոմի պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժնի վարիչ հաստատեց ընկ. **Ռ. Լ. Ստեփանյանին:**

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը:



# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

*Ընկերնե՛ր:*

*Ավարտվում է 1979 թվականը՝ հնգամյակի չորրորդ տարին: Այն դարձավ հանուն ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների կենսագործման, հանուն մեր երկրի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման սովետական ժողովրդի լարված, ստեղծագործ աշխատանքի ևս մի տարի:*

*Նոյեմբերին տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումում և ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում քննարկվեցին տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարում երկրի տնտեսական ու սոցիալական հետագա զարգացման կենսականորեն կարևոր հարցեր:*

*Պլենումում մեծ ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը: Նրա ելույթում տրված է հնգամյակի չորս տարում կուսակցության և ժողովրդի ստեղծարար գործունեության խոր վերլուծությունը, բացահայտված են ձեռք բերված հաջողությունների մասշտաբները, պարզորոշ սահմանված են հնգամյակը հաջողությամբ ավարտելու խնդիրները, նշված են դրանց կատարման կոնկրետ ուղիներն ու միջոցները, առաջադրված են երկրի արտադրողական ուժերի հետագա կոմպլեքսային զարգացման, հասարակական արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի հատատուն բարձրացման գործում բացառիկ նշանակության ծրագրային նոր խնդիրներ: Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում միաժամանակ բացահայտված են թերությունները, նեղ տեղերը, ցույց են տրված դրանց հաղթահարման ուղիները, կուսակցության և ժողովրդի առաջ դրված խնդիրների լուծման միջոցները:*

*Երկիրը զգալի առաջընթաց է ունեցել ժողովրդական տնտեսության զարգացման, ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա վերելքի ասպարեզում:*

*«Հաջողություններն առկա են՝ և փոքր հաջողություններ չեն,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը պլենումում:— Դրանցում մենք լավ հիմք ենք տեսնում 1980 թվականի ժողովրդատնտեսական խնդիրների լուծման համար, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ուղիով վստահորեն առաջ ընթանալու համար»:*

*1980 թվականի պլանը հատուկ տեղ է գրավում ամբողջ տասներորդ հնգամյակում: Այն ունի ոչ միայն սոցիալ-տնտեսական, այլև քաղաքական մեծ նշանակություն՝ ՍՄԿԿ XXVI համագումարին նախապատրաստվելու առնչությամբ:*

*Հաջողությամբ կատարելով տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարվա և ամբողջ հնգամյակի առաջադրանքները, մենք դրանով իսկ ամուր հիմք ենք ստեղծում հաջորդ՝ տասնմեկերորդ հնգամյակի համար: Հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1978 թվականների արդյունքները և 1979 թվականի պլանների սպասվելիք կատարումը հիմք են տալիս ասելու, որ Սովետական Հայաստանի աշխատավորները կուսակցական կազմակերպության ղեկավարությամբ ակտիվորեն և հաստատակամորեն պայքարել են հանրապետության սոցիալ-տնտեսական առաջընթացի խնդիրների իրականացման համար և այդ գործում հասել են զգալի հաջողությունների:*

*Հնգամյակի չորս տարվա առաջադրանքները հիմնական ցուցանիշներով կկատարվեն և կգերակատարվեն: Ազգային եկամտի աճը կկազմի 30,8 տոկոս՝*

---

*Տպագրվում է կրճատումներով:*

հնգամյա պլանով նախատեսված 27,4 տոկոսի փոխարեն, արդյունաբերական արտադրության ծավալինը՝ 36,1 տոկոս, պլանով նախատեսված 33,7 տոկոսի փոխարեն: Ժողովրդական տնտեսությունը հնգամյակի չորս տարում կտանա ավելի քան 350 միլիոն ռուբլու արտապլանային արդյունաբերական արտադրանք: Նույն ժամանակաշրջանում արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալի բացարձակ աճը կկազմի 1.400 միլիոն ռուբլի:

Ներկայումս մեր հանրապետության արդյունաբերությունը 2.260 արտադրատեսակներ թողարկում է պետական որականիշով, որոնց տեսակարար կշիռը արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ կազմում է շուրջ 16 տոկոս: Բարձրացել է լայն սպառման ապրանքների որակը, ավելացել դրանց արտադրության ծավալը:

Տասներորդ հնգամյակի չորս տարում հանրապետությունում կիրացվեն շուրջ 14 տոկոսով ավելի կապիտալ ներդրումներ, քան նախորդ հնգամյակի համապատասխան ժամանակահատվածում: Գործարկվել են 60-ից ավելի ձեռնարկություններ, խոշոր արտադրամասեր և այլ օբյեկտներ:

Հաշվի առնելով նաև 1979 թվականի սպասվելիք կատարողականը, հնգամյակի 4 տարիներին պետական, հասարակական և կոոպերատիվ կազմակերպությունների կապիտալ ներդրումների հաշվին շահագործման հանձնված բնակելի տարածության մակերեսը կկազմի 3,5 միլիոն քառակուսի մետր, շարք կմտնեն 109 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, 22,4 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 3.270 մահճակալով հիվանդանոցներ, մեծ թվով կոմունալ և այլ շինություններ:

Զգալի հաջողությունների են հասել գյուղատնտեսության աշխատողները: Գյուղատնտեսության արտադրանքի արտադրությունը կավելանա 23,9 տոկոսով՝ հնգամյա առաջադրանքով նախատեսված 21,1 տոկոսի փոխարեն: Հնգամյակի չորս տարիների ընթացքում պետությանը հնգամյա պլանով նախատեսվածից ավելի է վաճառվել հացահատիկ՝ 46 տոկոսով, շաքարի ճակնդեղ՝ 31 տոկոսով, բանջարեղեն՝ 13 տոկոսով, կարտոֆիլ՝ 8 տոկոսով, բուրդ՝ 4 տոկոսով , կաթ՝ 9 տոկոսով:

Հնգամյակի չորս տարում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը կաճի 28,9 տոկոսով, իսկ կենցաղային սպասարկումների ծավալը՝ 47,8 տոկոսով, որոնք բարձր են չորս տարիների համար հնգամյակի նախանշումներից:

Հետևողականորեն իրականացվում է ՍՄԿԿ XXV համագումարի կուրսը աշխատավորների նյութական բարեկեցության և նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման բնագավառում: Հանրապետությունում բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները հնգամյակի չորս տարվա ընթացքում կաճեն 15,8 տոկոսով: Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը այդ տարիներին կավելանա 12,6 տոկոսով, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 19 տոկոսով: Զգալի են ձեռքբերումները գիտության և կուլտուրայի զարգացման ասպարեզում:

Ինչպես տեսնում եք, հանրապետությունը քիչ հաջողությունների չի հասել ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում: Միաժամանակ մեզանում դեռ կան չլուծված շատ հարցեր ու թերություններ, որոնք և հնարավորություն չեն տվել հասնելու ավելի բարձր ցուցանիշների:

Ներկա պլենումի խնդիրն է՝ ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի և պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթի պահանջների լույսի ներքո վերլուծել հանրապետության էկոնոմիկայի վիճակը և Հայաստանի կուսակցական կազմակերպության, բոլոր աշխատավորների ուշադրությունը կենտրոնացնել տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարում մեր առջև ծառացած խնդիրների վրա:

Հանրապետության արդյունաբերության աշխատողների առջև ծառացած է հնգամյակը հաջողությամբ եզրափակելու բարդ և պատասխանատու խնդիրը: Բանն այն է, որ վերջին երկու տարում մի շարք օբյեկտիվ պատճառներ բարդացրել են արդյունաբերական շատ ձեռնարկությունների աշխատանքը: Դրանք հիմնականում էներգապահպանման որոշակի ապակայունացման և նյութական ռեսուրսների անբավարարության հետևանք են:



Չնայած այս օբյեկտիվ դժվարություններին, արդյունաբերության աշխատողները հիմնականում կատարել են ընթացիկ տարվա 11 ամսվա առաջադրանքները: Արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալի պլանը կատարվել է 101,5 տոկոսով, անցած տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ աճը կազմել է 8 տոկոս՝ տարեկան պլանով նախատեսված 7 տոկոսի փոխարեն: Պլանից ավելի արտադրվել է 71 միլիոն ռուբլու և իրացվել 60 միլիոն ռուբլու արդյունաբերական արտադրանք: Հարկավոր է, ընկերնե՛ր, արդյունաբերության բոլոր աշխատողների ուժերը մոբիլիզացնել դեկտեմբեր ամսվա պլանների հաջող կատարման համար այն հաշվով, որպեսզի պահպանվեն ձեռք բերված աճի տեմպերը:

Առավել դժվարին է լինելու 1980 թվականը: Ո՞րն է եկող տարվա յուրահատկությունը: 1980-ի ցուցանիշներով ամբողջանում են հնգամյակի ցուցանիշները: Իսկ, ինչպես գիտեք, արդյունաբերական արտադրանքի ծավալների աճը հնգամյա պլանով նախատեսված էր 43—47 տոկոսի սահմաններում: Անցած չորս տարիների արդյունքներով հանրապետության արդյունաբերությունը ընթանում է, ինչպես հայտնի է, 2,4 կետի առավելությամբ: Բայց եկող տարվա համար արդյունաբերական արտադրանքի ծավալի աճը պլանավորված է 6,2 տոկոս: Սա հանգեցնում է այն բանին, որ տարվա պլանը 100 տոկոսով կատարելու դեպքում իսկ հնգամյակի ընթացքում աճի տեմպը կկազմի 45,2 տոկոս: Այսինքն, հնգամյակի կատարումն ապահովվում է XXV համագումարի նախանշած ծրագրով: Բայց միայն միջին սահմանում: Իսկ մենք մեր առջև խնդիր ենք դրել հասնել արդյունաբերական արտադրանքի ծավալի աճի հնգամյա պլանով սահմանված ցուցանիշի առավելագույն մակարդակին՝ 47 տոկոսի: Եվ դրան հասնելու համար եկող տարում անհրաժեշտ է ապահովել արդյունաբերական արտադրանքի ծավալի աճ՝ առնվազն 8 տոկոսի չափով:

Այստեղից էլ խնդիրը:

Նախ՝ հանրապետության պետպլանը պետք է համառորեն աշխատի պլանային ցուցանիշը բարձրացնելու ուղղությամբ՝ առնվազն 0,5 կետով: Իսկ հիմնականում Կենտրոնական կոմիտեն այսօր խնդիր է դնում մշակել և իրականացնել ներքին ռեզերվները մոբիլիզացնելու, նյութերը և հումքը ըստ ամենայնի տնտեսելու գործնական միջոցառումներ, ապահովել հանդիպական պլանների և սոցիալիստական բարձր պարտավորությունների ընդունումն ու կատարումը այն հաշվով, որպեսզի ապահովվի 1980 թվականի պլանի գերակատարումը 1,5—2 տոկոսով:

Հանրապետության աշխատավորական կոլեկտիվների մեծ մասը ոչ միայն կատարում, այլև գերակատարում է իր առաջադրանքները, դրանով իսկ ապահովում, ընդհանուր առմամբ, արդյունաբերության պլանների կատարումը: Բայց դրանց հետ միասին դեռ կան մեծ թվով ձեռնարկություններ, որոնցում տակավին ցածր է պետական և պլանային կարգապահությունը, չի ապահովվում պլանների կատարումը: Տասն ամսվա արդյունքներով իրացման պլանը թերակատարել են 86 ձեռնարկություններ: Արդյունաբերական արտադրության արտադրանքի ծավալի պլանը չեն կատարել 94 միավորումներ և ձեռնարկություններ: Նրանք պակաս են տվել 30 միլիոն ռուբլու արտադրանք:

Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական մարմինները կոչված են ապահովելու խստիվ պլանային կարգապահությունը: Համաչափ, հստակ աշխատանքը, բոլոր ցուցանիշներով, լրիվ անվանացանկով պլանի անվերապահ կատարումը, բոլոր սպառողներին, այդ թվում նաև արտահանվող արտադրանքի մատակարարման պարտավորությունների անպայման կատարումը պետք է օրենք դառնա ժողովրդական տնտեսության բոլոր օղակների համար: Անհրաժեշտ է ուժեղացնել պլանի կազմակերպող և մոբիլիզացնող դերը, սիստեմատիկ վերահսկողություն իրականացնել յուրաքանչյուր աշխատավորի ու բրիգադի, յուրաքանչյուր տեղամասի ու արտադրամասի, յուրաքանչյուր ձեռնարկության և ամբողջ ճյուղի համար սահմանված առաջադրանքների կատարման նկատմամբ:

Պլանների չհիմնավորված ճշգրտումները՝ դրանց իջեցման ուղղությամբ, փաստորեն ձեռք բերված մակարդակին դրանց համապատասխանեցումը լուրջ վնաս են հասցնում ժողովրդական տնտեսությանը, իջեցնում աճի տեմպերը, խանգարում արտադրական ռեսուրսների արդյունավետ օգտագործմանը, իսկ

երբեմն առաջավորների շարքն են դուրս բերում այնպիսի ձեռնարկություններ, որոնք դրան արժանի չեն։ Այս երևույթի դեմ հարկավոր է հետևողականորեն պայքարել 1980 թվականին, երբ մենք այլևս նահանջի տեղ չունենք, ու եթե պլանը պետք է ճշգրտվի, ապա միայն բարձրացման ուղղությամբ։

Այսօրվա կարևորագույն պահանջներից մեկը հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման պայքարն է։ Եվ դա ոչ թե ժամանակավոր կամպանիա է, այլ կուսակցության կուրսը, որը, ինչպես ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, վերցված է լրջորեն և տևական ժամանակով։

Արտադրության արդյունավետության բարձրացման գործում մենք հասել ենք որոշակի դրական արդյունքների, բայց դրանք դեռ բավարար չեն, եթե դիտելու լինենք ՍՄԿԿ XXV համագումարի, Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի որոշումների լույսի ներքո։

Հանրապետության արդյունաբերությունը միայն 1976 թվականին է ունեցել հնգամյակի նախանշումներին համապատասխանող աշխատանքի արտադրողականության բարձրացման պլան և գերակատարել է այն։ Մնացած բոլոր տարիներին, մենք չնայած յուրաքանչյուր տարի ապահովում ենք պլանի կատարումն ու նույնիսկ գերակատարումը, այնուամենայնիվ, ետ ենք մնում հնգամյակի կանխագծումներից։

Այդ վիճակը մեզ, բնականաբար, գոհացնել չի կարող։

Աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի ետ մնալու պատճառները շատ են։ Այդ թվում կան օբյեկտիվ պատճառներ, բայց կան նաև ետ մնալու սուբյեկտիվ պատճառներ, որոնք կապված են պլանային առաջադրանքների թերակատարման, իջեցման ուղղությամբ ծավալային արտադրության պլանների փոփոխման, արտադրության և աշխատանքի անբավարար կազմակերպման, ռիթմիկության խախտման, սարքավորումների պարապուրդների և դրանց անարդյունավետ շահագործման, հերթափոխայնության ցածր գործակցի, կադրերի բարձր հոսունության և աշխատաժամանակի կորուստների, հումքի, նյութերի և կոմպլեկտավորող առարկաների ժամանակին չապահովման, աշխատողների պրոֆեսիոնալ-տեխնիկական անբավարար որակավորման, ընդհանուր առմամբ, աշխատանքային կարգապահության ցածր մակարդակի հետ։

Մեծ նշանակություն տալով արդյունավետության բարձրացման պրոբլեմին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, ուսումնասիրեց հաստոցաշինական և գործիքային արդյունաբերության ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների աշխատանքը արտադրական կարողությունները արդյունավետ օգտագործելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղղությամբ։ Ճյուղի ձեռնարկություններում բանվորների ավելի քան 40 տոկոսը զբաղված է ձեռքի աշխատանքով։ Շատ ձեռնարկություններում սարքավորումների մի մասը ֆիզիկապես ու բարոյապես հնացել է։ Ֆոնդահատուցումը հնգամյակի չորս տարում մնացել է 1975 թվականի մակարդակի վրա։

Դանդաղ տեմպերով է աճում սարքավորումների հերթափոխայնության գործակիցը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը մի ճյուղի գործունեության վերլուծության օրինակով ցույց է տալիս թե՛ աշխատանքում տեղ գտած թերությունները և թե արտադրական կարողությունների օգտագործման արդյունավետությունն ու աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու հսկայական ռեզերվները։

Հարկ է նշել մի շարք մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների և կազմակերպությունների անբավարար գործունեությունը աշխատանքի արտադրողականության պլանաչափ ու հետևողական բարձրացման ասպարեզում։ Այդ կարևորագույն ցուցանիշի իրենց իսկ սահմանած առաջադրանքները չեն կատարել հաստոցաշինական, սարքաշինական, շինարարական և ճանապարհային մեքենաշինության մինիստրությունների, ինչպես նաև հանրապետության շինանյութերի արդյունաբերության, սննդարդյունաբերության, գյուղական շինարարության մինիստրությունների մի շարք ձեռնարկություններ։ Այդ կարևոր գործի նկատմամբ իրենց ուշադրությունը թուլացրել են շատ կուսակցական կազմակերպություններ, շրջանային, քաղաքային կուսակ-



ցական կոմիտեներ, սովետական, տնտեսական և պլանավորող մարմիններ։

Այսօր մեզ չի բավարարում նաև հանրապետության արդյունաբերական շատ ձեռնարկությունների, առանձին ճյուղերի աշխատանքը՝ թողարկվող արտադրանքի տեխնիկական մակարդակը և որակը բարձրացնելու ասպարեզում։ Թեև պետական որականիշով արտադրանքի թողարկման ասպարեզում մենք կատարել ենք տարեկան առաջադրանքը և սոցիալիստական պարտավորությունները, բայց անբավարար են օգտագործվում եղած հնարավորությունները։ Հանրապետության որոշ շրջաններում կուսակցական կոմիտեները առհասարակ աչքաթող են արել արտադրանքի ատեստավորման կարևորագույն հարցը (Արագածի, Ախուրյանի, Կրասնոսելսկի շրջաններ), իսկ Գուգարքի, Նոյեմբերյանի և Թալինի շրջաններում ձևականորեն որականիշի համար ատեստավորելով մի քանի անուն արտադրանք, փաստորեն այդպիսիք չեն թողարկում։

Անբավարար է գործում պետստանդարտի Հայաստանի հանրապետական վարչությունը, որը կոչված է գլխավորելու արտադրանքի ատեստավորման կազմակերպման ամբողջ աշխատանքը։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում ունեցած իր խորիմաստ ճառում Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը առանձնահատուկ տեղ հատկացրեց վառելիքաէներգետիկ պրոբլեմին։ Կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների առջև խնդիր է դրվում անհրաժեշտ աշխատանք տանել խորապես կշռադատված և տնտեսապես հիմնավորված էներգետիկ ծրագրի իրականացման ուղղությամբ, վառելիքաէներգետիկ ռեսուրսների խնայողության ամբողջ աշխատանքը բարձրացնել որակապես նոր մակարդակի, մշակել էլեկտրաէներգիայի և արդյունաբերական արտադրանքի արտադրության համար վառելիքի և էներգիայի տեսակարար ծախսումները նվազեցնելու, շարժիչների և էներգետիկ կայանքների խնայողականությունը բարձրացնելու, երկրորդային էներգառեսուրսները լայնորեն օգտագործելու, անտնտեսվարության և շռայլության դեմ պայքարն ուժեղացնելու միջոցառումների կոմպլեքսային լայն ծրագիր։

Այս ասպարեզում մեր անելիքները շատ են։

Ինչպիսի տեմպերով էլ մենք զարգացնենք էներգետիկան, ջերմության և էներգիայի տնտեսումը այսուհետև էլ մնում է համապետական կարևորագույն խնդիր։

Ժողովրդական տնտեսության զարգացման ներկա մասշտաբների պայմաններում առանձնապես հրատապ են դառնում թողարկվող արտադրանքի նյութատարության պրոբլեմը, նյութական ռեսուրսների խնայողության պրոբլեմը։ Նյութական ռեսուրսների ընդհանուր հաշվեկշռի մեջ առանձնահատուկ տեղ է գրավում մետաղը, և չնայած դրա արտադրության հսկայական ծավալներին, այնուամենայնիվ, մետաղը չի բավականացնում։ Դա մշտապես զգում են թե՛ արդյունաբերության, թե՛ շինարարության աշխատողները։ Բայց դա բացատրվում է ոչ միայն անբավարար ռեսուրսներով։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ մետաղի ռացիոնալ օգտագործմանը մեծ վնաս են հասցնում հնացած տեխնոլոգիական պրոցեսների դեռևս լայն կիրառությունը, մետաղի ուղղակի վատնումը, նրա անբավարար պահպանումը, նպատակին չօգտագործելը։ Մենք պարտավոր ենք, նշում է նա, վերջ տալ տրնտեսման և խնայողության հարցերում տեղ գտած անփութությանը։ Արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմակերպություններում, մինիստրություններում ու գերատեսչություններում ինչպես հարկն է չեն զբաղվում ծախսումների նորմաների վերանայման հարցերով, այդ ցուցանիշը չեն պլանավորում՝ տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, առավել խնայողական պատրաստուկների օգտագործման, թանկ նստող, դեֆիցիտային նյութերը առավել էժան նյութերով փոխարինելու հիման վրա։

Արդյունաբերական արտադրանքի թողարկումն ավելացնելու կարևոր գործոն է արտադրական կարողությունների ժամանակին յուրացումն ու արդյունավետ օգտագործումը։ Մեզանում շարք մտած խոշոր ձեռնարկությունները, արտադրամասերը, ավտոմատացված, մեքենայացված և հոսքային գծերը յուրացվում են դանդաղ, սահմանված նորմատիվ ժամկետների խախտումով։ Դա բացասական ազդեցություն է գործում արտադրության արդյունավետության և առաջին հերթին աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Պետք է շուտափույթ միջոցներ ձեռնարկել՝ ժամանակին և արդյունավետ

օգտագործելու գործարկված արտադրական կարողությունները:

Տրանսպորտը ուղղակի ներգործություն ունի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի վերջնական արդյունքների վրա: Առանձնահատուկ է երկաթուղային տրանսպորտի նշանակությունը: Վերջին տարիներին այն մեծ լարումով է աշխատում: Կան բեռների տեղափոխման ձգձգման, մարդատար գնացքների ուշացման, ժողովրդատնտեսական տարբեր բեռների առաքման համար նախատեսված վագոնների, կոնտեյներների պակասի բազմաթիվ փաստեր: Տրանսպորտի աշխատանքի և, ամենից առաջ, երկաթուղային տրանսպորտի աշխատանքի հարցը այժմ հատուկ սրություն է ստացել, և այդ մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում հանգամանալի խոսակցություն տեղի ունեցավ:

Դեռևս 1977 թվականի սկզբներին ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ծրագրային որոշում ընդունեցին երկաթուղային տրանսպորտի զարգացման միջոցառումների մասին: Այդ ուղղությամբ որոշակի աշխատանք կատարվել է: Բայց այսօր հարկ է պլենումում նորից ուշադրություն հրավիրել հանրապետության տրանսպորտային կազմակերպությունների և կլիենտուրայի չհամաձայնեցված աշխատանքի վրա, որի հետևանքով, շարժակազմի անբավարարության պայմաններում, լինում են տրանսպորտային ռեսուրսների մեծ կորուստներ: Վագոնների մեծ պարապուրդներ են ունենում հատկապես մթերումների, սննդարդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության, առևտրի մինիստրությունների և միութենական ենթակայության շատ ձեռնարկություններ:

Կատարելագործման կարիք ունի հանրապետության ավտոտրանսպորտի կազմակերպությունների գործունեությունը: Ինչպես նախկինում, լուրջ հանդիմանության է արժանի մարդատար տրանսպորտի աշխատանքը: Տրանսպորտային տնտեսությունների ղեկավարները անբավարար են զբաղվում իրենց կոլեկտիվներում արտադրության և աշխատանքի կազմակերպման կատարելագործման, կարգապահության ամրապնդման հարցերով:

Գործերի վիճակը շարունակում է լարված մնալ նաև կապիտալ շինարարության մեջ: Այստեղ պլանները սիստեմատիկաբար թերակատարվում են, շինարարության ժամկետները հաճախակի և չարդարացված կերպով ձգձգվում: Չորս տարիների կապիտալ ներդրումների իրացման պլանը կկատարվի 95 տոկոսով:

Կապիտալ շինարարության պլանների թերակատարման պատճառով ժամանակին չեն գործարկվել մի շարք ձեռնարկություններ և արտադրական կարողություններ: Դրանցից են «Նաիրիտ» արտադրական միավորման քլորոպրենի արտադրությունը, Իջևանի բենտոնիտի կոմբինատի բենտոնիտի փոշու արտադրությունը, հացամթերքների կոմբինատի Սևանի ալրաղացը, Ջրվեժի գաջի գործարանը և այլն:

Ընթացիկ տարում հանրապետությունում ամբողջությամբ վերցրած կապիտալ ներդրումների ծավալի 11 ամսվա պլանը կատարվել է 93 տոկոսով, այդ թվում արտադրական օբյեկտների գծով՝ 94,1 տոկոսով, իսկ շինմոնտաժային աշխատանքների գծով՝ համապատասխանաբար 96,8 և 98 տոկոսով: Հանրապետության 85 կարևորագույն կառույցներից կապիտալ ներդրումների պլանը կատարվել է ընդամենը 33 կառույցների գծով, իսկ 31 կառույցների գծով կատարվել է 75 տոկոսից ցածր մակարդակով:

Զգալիորեն թերակատարվել են բնակելի տների, դպրոցների, մանկական նախադպրոցական հիմնարկների գործարկման 10 ամսվա առաջադրանքները:

Շինարարների հացեին արդարացի շատ հանդիմանություններ են արվում շինարարական և մոնտաժային աշխատանքների կատարման ցածր որակի համար: Ապաշնորհ տնտեսավարման հետևանքով շատ շինարարական կազմակերպություններ թերակատարել են աշխատանքների ինքնարժեքի իջեցման պլանները, աշխատում են վնասով:

Շինարարության բնագավառում եղած լուրջ թերությունները այն բանի հետևանք են, որ դեռևս ցածր է պետական կարգապահության մակարդակը շինարարական մինիստրությունների ու գերատեսչությունների, ինչպես նաև շատ տրեստների ու վարչությունների ղեկավարների շրջանում, որոնք իրենց պարտականություններին վերաբերվում են առանց պատասխանատվության



բավարար զգացումի, ժամանակին բոլոր անհրաժեշտ միջոցները չեն ձեռնարկում ապահովելու շինարարության նորմալ կազմակերպումն ու իրականացումը, շարունակում են աշխատել անբավարար նպատակասլացությամբ և ձախողում են ժողովրդատնտեսական շատ օբյեկտների գործարկման պետական պլանների կատարումը:

Գործերի վիճակը դեռևս չի շտկել արդյունաբերական շինարարության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Է. Ավագյան), որը ընդհանուր առմամբ չի ապահովում կապալային աշխատանքների պլանների կատարումը: Այս տարի էլ մինիստրությունը անցած 11 ամսվա պլանը գլխավոր կապալառուի գծով կատարել է 92,8 տոկոսով, այդ թվում սեփական ուժերով իրականացվող աշխատանքների գծով՝ 93,2 տոկոսով, ընդ որում, աճի տեմպերը, անցած տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, կազմել են համապատասխանաբար 96,5 և 96,1 տոկոս:

Գյուղական շինարարության մինիստրությունը գերակատարել է պլանները գլխավոր կապալառուի գծով և սեփական ուժերով իրականացվող աշխատանքների գծով: Սակայն նրա ութ տրեստներից երկուսը (№ 2 և № 8 «Գյուղշին» տրեստները) թերակատարել են գլխավոր կապալառուի գծով պլանները, իսկ № 5 և № 8 «Գյուղշին» տրեստները՝ սեփական ուժերով իրականացվող աշխատանքների պլանները: Մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Գ. Թադևոսյան) չի ապահովել գյուղատնտեսության մինիստրության շատ օբյեկտների կառուցման և շինմոնտաժային աշխատանքների պլանների կատարումը: Անբավարար է իրականացվում նաև արդյունաբերական օբյեկտների շինարարությունը:

Շարունակում է անբավարար աշխատել «Հայգյուղշինմոնտաժ» տրեստը (87,6 տոկոս), որը ոչ միայն չի կատարում պլանները, այլև ձախողում է մի շարք գյուղատնտեսական օբյեկտների սարքավորումների մոնտաժումը:

Տարեցտարի մեծանում է շինարարական արտադրության տեխնիկական զինվածությունը, սակայն մի քանի մինիստրությունների կազմակերպություններում շինարարական մեքենաների և մեխանիզմների օգտագործման արդյունավետությունը նվազում է: Այս հանգամանքը շինարարական կազմակերպությունների կուսակցական կազմակերպություններից և ղեկավարներից պահանջում է հատուկ ուշադրություն դարձնել մեքենաների և մեխանիզմների օգտագործման բարելավմանը, մեխանիզատորական կադրերի պատրաստմանը, մեքենաների ու մեխանիզմների համակազմի նորոգման գործի բարելավմանը և դրանց նորացման արագացմանը:

Պետպլանը և շինարարական մինիստրությունները պետք է քննության առնեն և լուծեն շինարարական մեքենաների ու մեխանիզմների կապիտալ նորոգումը կազմակերպելու, դրանց օգտագործումը բարելավելու, հավաքակայանների աշխատանքի մասնագիտացումը խորացնելու հարցերի կոմպլեքսը:

Շատ նորակառույցների գործարկումը ձախողվում է գլխավոր կապալառու և ենթակապալառու կազմակերպությունների անկանոն աշխատանքի պատճառով:

Շինարարական և մոնտաժային շատ կազմակերպությունների ղեկավարներ քիչ ուշադրություն են դարձնում նորարարների փորձի, բանվորների աշխատանքի արտադրողականությունը բարձրացնող առաջավոր ձևերի ու մեթոդների մասսայական և գործնական արմատավորման ապահովմանը: Թերակատարվում են պրակտիկայում իրեն արդարացրած բրիգադային կապալի մեթոդի արմատավորման սահմանված պլանները:

Աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները թերակատարվում են: Հնգամյակի անցած չորս տարում, նախատեսված 22,2 տոկոսի փոխարեն, շինարարության մեջ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է փաստորեն 15 տոկոսով:

Կենտկոմի պլենումում հարկ է մեկ անգամ էլ հրավիրել շինարարական մինիստրությունների և գերատեսչությունների ուշադրությունը շինարարության ինդուստրիալ բազայի ստեղծման կենսականորեն անհրաժեշտ հարցի վրա: Օրերս Կենտկոմի բյուրոն հատուկ քննության առարկա դարձրեց այն: Բացահայտվեցին աղաղակող թերություններ: Զարմանալի է, բայց փաստ, որ շինա-

նում ասաց. «Թերևս քիչ կգտնվեն այնպիսի ճյուղեր, որտեղ վերջնական արդյունքները այդ աստիճան պայմանավորված լինեն որակով: Սակայն պետք է խոստովանել, որ մինչև այժ կոլտնտեսություններն ու սովխոզները պատշաճ ուշադրություն չեն դարձնում գործի այդ կողմին»: Այդ խոսքերը լիովին վերաբերում են նաև մեր հանրապետությանը: Տնտեսություններում պատշաճ մակարդակով չի կատարվում արտադրանքի նախնական մշակումը, չորացումը, տեսակավորումը, ղտումը, մի բան, որ հանգեցնում է մթերքների զգալի կորուստների և որակի իջեցման:

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումում մսի արտադրության հետագա աճը համարվեց առաջնահերթ խնդիր, որի լուծման համար անհրաժեշտ է լրիվ չափով օգտագործել մսի բոլոր տեսակների ավելացման հնարավորությունները:

Վերջին տարիներին, ինչպես արդեն ասվեց, հանրապետությունում զգալի աշխատանք է կատարվել մսի արտադրության ավելացման գործում: 1978 թվականին, 1975 թվականի համեմատությամբ, կոլտնտեսություններում, սովխոզներում և միջտնտեսային ձեռնարկություններում մսի արտադրությունն աճել է 23 տոկոսով, իսկ մթերումների ծավալը մեծացել 29 տոկոսով:

Սակայն կատարված ուսումնասիրություններն ու վերլուծությունները ցույց են տալիս, որ կուսակցության մի շարք շրջկոմներ և շրջսովետների գործադիր կոմիտեներ բավարար աշխատանք չեն կատարում մսի արտադրության և մթերումների ռեզերվների ու հնարավորությունների առավել լրիվ օգտագործման ուղղությամբ: Ոչ բոլոր շրջաններում ու տնտեսություններում է կազմակերպվում անասունների ինտենսիվ բտման և գիրացման գործը: Գուգարքի, Մարտունու, Վարդենիսի, Ղափանի, Մեղրու, Եղեգնաձորի և այլ շրջաններում 1979 թ. 9 ամիսներին պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշը 34—48 կիլոգրամով ցածր էր հանրապետության միջին ցուցանիշից:

Մսի պետական ռեսուրսների ավելացման մեծ ռեզերվ է նաև անասունների և թռչունների ներտնտեսային ծախսերի նվազեցումը: Մի շարք շրջաններում այս ուղղությամբ գրեթե ոչինչ չի արվում, իսկ կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործադիր կոմիտեները, գյուղատնտեսության, մթերումների մինիստրությունները լռությամբ են անցնում նման փաստի կողքով:

Հանրապետության մի շարք շրջաններում անբավարար է հոտի վերարտադրության կազմակերպումը: Դեռևս բարձր է մայրական կազմի ստերջությունը, էական պայքար չի կազմակերպվում անասունների ու թռչունների անկումների դեմ: Այս տարվա տասն ամիսների ընթացքում, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, հանրապետության տնտեսություններում պակաս է ստացվել 2.384 գլուխ հորթ և 6.396 գլուխ խոճկոր:

Այդ տեսակետից վիճակն անմխիթարական է Գորիսի, Կամոյի, Ստեփանավանի և այլ շրջաններում:

Անասնապահական մթերքների արտադրության զգալի ավելացման կարելի է հասնել առաջին հերթին նախրի մայրական կազմը մեծացնելու և, ինչպես խնդիր է դրվում, կովերի տեսակարար կշիռը 40—42 տոկոսի հասցնելու միջոցով: Սակայն կառուցվածքային կազմի ինչ բարելավման մասին կարող է խոսք լինել, երբ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում այդ ցուցանիշը արդեն տարիներ շարունակ մնում է 30—32 տոկոսի մակարդակին: Ավելին, 11 շրջաններում անցյալ տարվա համեմատությամբ կովերի գլխաքանակը կրճատվել է:

Զգալի թերություններ կան բնակչությունից մսի գնման պլանների կատարումն ապահովելու գործում: Մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության մինիստրության, նրա տեղական կազմակերպությունների անբավարար աշխատանքի, շրջսովետների գործկոմների թողտվության հետևանքով տարեցտարի նվազում են բնակչությունից մսի գնման ծավալները, թերակատարվում են պլանային առաջադրանքները: Այնինչ անհատական սեկտորում մսի արտադրության, հատկապես մթերումների ավելացման ռեզերվները շատ մեծ են:

Մսի արտադրության և մթերումների ավելացման մեծ ռեզերվներ կան «Հայթռչնարդի» և «Հայանասնարդի» տնտեսություններում: Բանն այն է, որ այստեղ գործնական աշխատանք չի տարվում արտադրական հզորությունների



լրիվ օգտագործման, կերի արդյունավետ ծախսման, անասունների աճեցման տեխնոլոգիայի ճիշտ կիրառման ուղղությամբ: Չեն լուծվել համալիրների նորմալ գործունեությանը նպաստող մի շարք տնտեսական և կազմակերպական հարցեր:

Միայն «Հայթռչնարդի» (վարչության պետ՝ Ս. Մելիքյան) և «Հայանասնարդի» (վարչության պետ՝ Ա. Էվոյան) անբավարար աշխատանքով կարելի է բացատրել այն, որ նրանք պետությանը մսի վաճառքի այս տարվա պլանները թերակատարում են:

Հանրապետության անասնապահների համար սկսվել է ամենապատասխանատու շրջանը՝ հանրային անասունների ձմեռումը: Այն բանից, թե ինչպես կանցկացվի ձմեռումը, մեծապես կախված են ոչ միայն եկող տարվա, այլև ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի արդյունքները: Անհրաժեշտ է առավելագույնս օգտագործել եղած կերային պաշարները և անասունների առաջիկա ձմեռման շրջանում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, զգալիորեն ավելացնել անասնապահական մթերքների արտադրությունը: Անասնապահության մթերատվության, նրա արդյունավետության բարձրացման գործում կարևոր դեր է պատկանում համակցված կերի արդյունաբերությանը: Մթերումների մինիստրությունը պետք է վճռական միջոցներ ձեռնարկի՝ վերացնելու եղած թերությունները և հասնելու լիարժեք համակցված կերի կայուն թողարկման:

Օրերս ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը որոշում ընդունեցին «1979—1980 թվականների ձմռան ժամանակաշրջանում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար անասնապահության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին», որտեղ առաջադրված են կոնկրետ խնդիրներ: Իրենց աշխատանքը այդ խնդիրներին համապատասխան պետք է կառուցեն կուսակցական, սովետական, գյուղատնտեսական մարմինները, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունները, ղեկավարներն ու մասնագետները:

Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման պրոբլեմներից մեկը տեխնիկայի ռացիոնալ օգտագործման, մեքենատրակտորային համակազմի սպասարկման և նորոգման գործի ճիշտ դրվածքն է: Վերջին տարիներին Վարդենիսի, Հրազդանի և Կամոյի շրջաններում որոշ աշխատանք կատարվեց տեխնիկայի համակենտրոնացման ուղղությամբ. ստացվեցին դրական արդյունքներ: Սակայն ո՛չ գյուղատնտեսության մինիստրությունը, ո՛չ էլ «Գյուղտեխպետկոմը» հարկ եղածին պես չեն զբաղվում փորձի ուսումնասիրությամբ ու նրա սահմանների ընդարձակմամբ, մինչև օրս չեն ընդհանրացվել և Կենտկոմ ու Մինիստրների խորհուրդ չեն մտցվել առաջարկություններ այդ հարցի վերաբերյալ:

Լուրջ ուշադրություն են պահանջում ջրատնտեսական շինարարությունը և մելիորացիան: Հատկապես անհանգստացնում է կուլտուր-տեխնիկական աշխատանքների ընթացքը Ախուրյանի, Ջողազի և այլ ջրամբարներին ենթակա հողերում: Անհրաժեշտ է հաշվի առնել, որ գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացումը զգալի չափով կապված է այդ ջրամբարներից ոռոգվող հողերի յուրացումից: Մինիստրների խորհուրդը պետք է հատուկ քննության առնի այս հարցերը:

Մեզ համար դեռևս պրոբլեմ է մնում ոռոգման ջրի ռացիոնալ օգտագործումը: Ջուրը տնտեսություններին տրվում է անվճար, բայց հարկավոր է վերջապես բոլորը հասկանան, որ հանրապետությունում ջուրը անգնահատելի է: Մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը (մինիստր՝ ընկ. Ռ. Շահոյան), որը կոչված է վերահսկելու և կարգավորելու ջրի խնայողական ծախսումը, պետք է լուրջ բեկում մտցնի իր աշխատանքներում:

Ընկերնե՛ր: 1980 թվականին հանրապետության գյուղատնտեսության աշխատողների առջև դրված են բարդ խնդիրներ, որոնց իրականացումը հրամայաբար պահանջում է, որպեսզի համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, կուսակցության շրջկոմները և շրջսովետների գործկոմները, գյուղի աշխատավորները մեծ ջանքեր գործադրեն հնգամյակի վերջին տարվա առաջադրանքների կատարման համար:

ու շրջկոմներին, հանրապետության մինիստրություններին ու գերատեսչություններին պարտավորեցրեց վճռական միջոցներ ձեռնարկել՝ իսպառ վերացնելու աչքակապությունը, հավելագրումները և պետական հաշվետվության այլ աղավաղումները, ստեղծելու անհանդուրժողականության մթնոլորտ պլանային առաջադրանքների կատարման իսկական իրավիճակը թաքցնող անձանց նկատմամբ, իսկ հավելագրումները կատարելու մեջ մեղավորներին և նրանց այդ բանին հարկադրած անձանց ենթարկել խիստ պատասխանատվության, ընդհուպ մինչև կուսակցության շարքերից վտարելը, զբաղեցրած պաշտոններից հեռացնելը և դատի տալը։

Մեր կենսագործունեության բոլոր ոլորտներում անհրաժեշտ կարգապահության և կարգ ու կանոնի հաստատումը պետք է լինի կուսակցական կազմակերպության գլխավոր գործը։ Եվ այստեղ հարկավոր են ոչ միայն խոսքեր կարգապահության մասին, ոչ միայն կարգ ու կանոնի կոչեր, այլ, ինչպես պլենումում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «ամենից առաջ՝ փութաջան ամենօրյա կազմակերպչական աշխատանք, կատարման հստակ ստուգում, կադրային ճկուն ու կշռադատված քաղաքականություն։ Անհրաժեշտ է օպերատիվ, սուր կերպով արձագանքել անտնտեսավարության դրսևորումներին, սահմանված պլանների, կանոնների ու նորմերի խախտումներին»։

Ընկերնե՛ր։

1980 թվականի պլանները լարված են։ Բայց դրանք պետք է կատարվեն ու գերակատարվեն։ Դրա համար հարկավոր է ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր արտադրական բջիջում ստեղծել բարձր պահանջկոտության, կազմակերպվածության, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի մթնոլորտ։ Դա նշանակում է, որ մենք բոլորս ամենուրեք և ամեն օր լարված պետք է աշխատենք՝ առավելագույն վերջնական արդյունքների հասնելու համար։

Կուսակցական կազմակերպությունների, պրոպագանդայի բոլոր միջոցների և օղակների առջև մեծ խնդիրներ են դրված տասներորդ հնգամյակի պետական պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման գաղափարական ապահովման ուղղությամբ։ Հնգամյակի եզրափակիչ տարին պետք է դառնա հարվածային աշխատանքի, լենինաբար աշխատելու տարի։ Խնդիրն այն է, որ կուսակցական խոսքը առավելագույն արդյունավետությամբ վերածվի հանրապետության բանվորների, կոլտնտեսականների, ժողովրդական մտավորականության աշխատանքային խանդավառության, աշխատանքային ջանքերի։

Պրոպագանդան և ագիտացիան պետք է լինեն խիստ կոնկրետ, համոզիչ, իրազեկ՝ պատասխանելու մարդկանց հուզող բոլոր հարցերին։ Այդ է պարտավորեցնում «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Անհրաժեշտ է այսուհետ ևս վճռականորեն պայքարել պրոպագանդայի արդյունավետությունը, առարկայականությունն ու ներգործունությունը ուժեղացնելու, կյանքի հետ նրա կապն ամրապնդելու, տնտեսական և քաղաքական հրատապ խնդիրների լուծման հետ այն սերտորեն շաղկապելու համար։

Միաժամանակ բոլոր կուսակցական, սովետական, տնտեսական մարմիններում, բոլոր հիմնարկություններում և ձեռնարկություններում անհրաժեշտ է զգալիորեն բարելավել աշխատավորների նամակներին ընթացք տալու աշխատանքը, ոչ միայն ժամանակին արձագանքել դրանց, այլև անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել նամակներում բարձրացված հարցերի կապակցությամբ։ Անհրաժեշտ է միշտ հիշել, որ յուրաքանչյուր նամակի ետևում մարդ է կանգնած, սովետական քաղաքացի, որի արդարացի պահանջներն ու գանգատները անուշադրության չպետք է մատնվեն։ Եվ որպեսզի այդ աշխատանքը հասցվի որակական նոր աստիճանի, անհրաժեշտ է բարձրացնել կուսակցական պահանջկոտությունը, առանց բացառության, բոլոր այն անձանց նկատմամբ, ովքեր պարտավոր են նամակների առնչությամբ որոշումներ ընդունել, արձագանքել դրանց, բավարարել աշխատավորների արդարացի խնդրանքը։ Հաշվի առնելով, որ այս հարցը ներկա պլենումում հատուկ քննարկման առարկա է, ուստի սահմանափակվելով, հարկ է մեկ անգամ ևս շեշտել կուսակցական ու պետական աշխատանքի այդ կարևոր բնագավառի, աշխատավորների յուրաքանչյուր



նամակի, ահազանգի, դիտողության, առաջարկության նկատմամբ զգայուն վերաբերմունքի կարևոր նշանակությունը։

Անհրաժեշտ է յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու հասցնել ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումի և ՍՍՀՄ տասներորդ գումարման Գերագույն սովետի երկրորդ նստաշրջանի որոշումների իմաստն ու նշանակությունը, աշխատավորների ջանքերն ուղղել կուսակցության առաջադրած խնդիրների՝ 1980 թվականի սոցիալ-տնտեսական զարգացման պլանների անվերապահ կատարմանը, ամբողջությամբ վերցրած՝ հնգամյակի իրականացմանը։

1980 թվականին սովետական ժողովուրդը, ամբողջ առաջադեմ մարդկությունը հանդիսավորությամբ կնշեն Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը։ Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական-մասսայական աշխատանքը պետք է ի սպաս դրվի այդ նշանակալի տարելիցի արժանավայել դիմավորմանը, հոբելյանական սոցիալիստական մրցության լայն ծավալմանը։

Հարկավոր է ապահովել Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակի տոնակատարության գաղափարաքաղաքական և կազմակերպական բարձր մակարդակը։ Հոբելյանի նախապատրաստությունն ու տոնակատարությունը կանցկացվեն կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների կուռ համախմբվածության, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր եղբայրական ժողովուրդների հետ անխախտ բարեկամության հետագա ամրապնդման նշանաբանով։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, հավաստիացնել ՍՄԿԿ Կենտկոմին, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները, սերտորեն համախմբված լենինյան կուսակցության շուրջը, կոմունիստական շինարարության ասպարեզում նոր նվաճումներով կնշանավորեն տասներորդ հնգամյակի եզրափակիչ տարին։ (Բուռն ծափահարություններ)։

# ՄԵԾԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՄԱՔԱՌՈՒՄՆԵՐԻ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

ՍԿՍՎԵՑ 1980 ԹՎԱԿԱՆԸ՝ մեր բազմաբեղուն գործունեության հանրագումարի ու նոր թռիչքների տարին։ Սովետական ժողովուրդը հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաջողությամբ կատարեց տասներորդ հնգամյակի չորրորդ տարվա պլանային առաջադրանքները։ Անցած չորս տարիների ընթացքում իրողություն դարձան ՍՄԿԿ XXV համագումարի կանխագծումները։ Նշանակալի հաջողություններ ձեռք բերեց ժողովրդական տնտեսությունը, բարձրացավ աշխատավորների բարեկեցությունը, հզորացավ երկրի պաշտպանունակությունը։

Այդ տարիներին, նախորդ հնգամյակի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, 16,2 տոկոսով աճել է ազգային եկամուտը՝ էկոնոմիկայի վերելքի ամփոփիչ ցուցանիշը։ Հիմնական արտադրական ֆոնդերը անցյալ տարի կազմեցին ավելի քան մեկ տրիլիոն ռուբլի, որոնց մեկ երրորդը նորացվել է։ Այս թվերի ետևում շուրջ հազար նոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ են։ Կառուցվել ու կառուցվում են ինդուստրիայի այնպիսի հսկաներ, ինչպիսիք են Սայանա-Շուշենսկոյեի հիդրոէլեկտրակայանը, Կամայի ավտոմոբիլի գործարանը, «Ատոմմաշ»-ը։ Գործարկված են մի շարք ատոմային էլեկտրակայաններ, որոնց թվում հայաստանյանը։ Դարի կառույց է ԲԱՄ-ը, ուր արդեն տեղադրվել է ավելի քան 1.500 կիլոմետր երկաթուղագիծ։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքը չորս տարում աճել է ավելի քան 40 միլիարդ ռուբլով։

Մեծ աշխատանք է կատարվել կուսակցության նախանշած տնտեսական ու սոցիալական քաղաքականության իրականացման գործում։ Դրա վկայությունը բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտներն են, որոնք այդ ժամանակամիջոցում աճել են ավելի քան 13 տոկոսով։ Կառուցվել են 423 միլիոն քառակուսի մետր մակերեսով բնակարաններ, բազմաթիվ մանկապարտեզներ, դպրոցներ, հիվանդանոցներ, կուլտուրայի հիմնարկություններ։ «Հաջողությունները առկա են՝ և փոքր հաջողություններ չեն։ Դրանցում մենք լավ հիմք ենք տեսնում 1980 թվականին ժողովրդատնտեսական խնդիրների լուծման համար, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման ուղիով վստահորեն առաջ ընթանալու համար»,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թվականի նոյեմբերյան պլենումում։

Հնգամյակի եզրափակիչ տարում նշվելու է Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը, միաժամանակ կուսակցությունը նախապատրաստվում է իր հերթական XXVI համագումարին։ Հիրավի, 1980 թվականը հարվածային աշխատանքի, լենինաբար աշխատելու տարի է։ Այդ նպատակով կուսակցությունը մոբիլիզացնում է աշխատավորների ջանքերը հնգամյակի վերջին տարվա առաջադրանքների անթերի կատարման համար։ Նախատեսված պլանային առաջադրանքների կատարումը պահանջում է ուժերի գերագույն լարում։ Դրա համար անհրաժեշտ է ժողովրդական տնտեսության բոլոր տեղամասերում, յուրաքանչյուր արտադրական կոլեկտիվում ստեղծել բարձր պահանջկոտություն, կազմակերպվածություն, գործի նկատմամբ ստեղծագործական վերաբերմունքի իրադրություն։

ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ, ԲՈԼՈՐ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԻԿ գոհունակությամբ ընդունեցին «Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ



Կենտկոմի որոշումը, որն իրոք մեծ առաջնորդի գաղափարներին և պատվիրաններին կուսակցության անսասան հավատարմության մի նոր վկայություն է։

Ստեղծագործաբար յուրացնելով ու զարգացնելով մարդկային հանճարի մեծագույն նվաճումները, խորապես և ճշգրիտ արտահայտելով բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, սոցիալական առաջընթացի պահանջմունքները՝ լենինիզմը հանդիսանում է արդիականության ամենապրոգրեսիվ և ազդեցիկ գաղափարախոսությունը։ «Լենինը մեզ համար թանկ է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— ոչ միայն նրա համար, որ նա մեր հեղափոխության դրոշն է, մեր կուսակցության հիմնադիրը, աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառուցողը։ Նա մեզ համար թանկ ու մոտիկ է նաև նրա համար, և գուցե, հատկապես նրա համար, որ նրա ստեղծագործական սուր միտքն ու անպարտելի տրամաբանությունը, վերլուծության խորությունն ու հետևությունների և գործողությունների համաչափելիությունը, հեղափոխականի նրա անզուսպ կրքոտությունը և դրա հետ մեկտեղ մեծագույն մարդկայնությունը, պարզությունն ու զգայուն վերաբերմունքը՝ այս ամենը մեզ համար եղել է և կլինի կյանքում կողմնորոշիչ, այսօրվա գործերում անգնահատելի հենարան և օգնություն»։

Լենինը, Մարքսի և Էնգելսի հավատարիմ ու աննկուն հետևորդը, պատմական նոր պայմաններում համակողմանիորեն զարգացրեց նրանց հեղափոխական ուսմունքը։ Աշխատավոր զանգվածների հանճարեղ առաջնորդը, օժտված լինելով գիտական կանխատեսման, տեղի ունեցող իրադարձությունների ու երևույթների բուն էության մեջ թափանցելու չգերազանցված ձիրքով, դիալեկտիկամատերիալիստական մեթոդը կիրառելով հասարակական նոր երևույթների վերլուծության նկատմամբ, սկզբունքային կարևոր դրույթներով հարստացրեց մարքսիզմի բաղկացուցիչ մասերը, նոր փուլ բացեց նրա զարգացման մեջ։ Անշուշտ, չի կարող լինել մարքսիզմ առանց այն նորի, որը ներդրել է Լենինը։ Լենինիզմն արդի դարաշրջանի մարքսիզմն է, միջազգային բանվոր դասակարգի միասնական, ամբողջական, անընդհատ զարգացող հեղափոխիչ ուսմունքը։

Լենինիզմը բոլոր երկրների հասարակական առաջընթացի մարտիկների գաղափարատեսական փորձված ու հուսալի զենքն է։ Լենինը խոր հիմնավորվածությամբ տվել է արդի աշխարհի սոցիալ-քաղաքական ու տնտեսական երևույթների բնութագիրը։ Իմպերիալիզմի, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի, կուսակցության մասին, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարում պրոլետարիատի դասակարգային դաշնակիցների, սոցիալական և ազգային ազատագրության անխզելի կապի մասին, ինչպես նաև տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների մասին լենինյան ուսմունքն իրավամբ հանդիսանում է ստեղծագործական մարքսիզմի վառ արտահայտությունը։

Հողագնդի միլիոնավոր շահագործվողների ու ընչազուրկների համար լենինիզմը բովանդակ աշխարհի սոցիալական նորացման խորհրդանիշն է, մեր դարաշրջանի հեղափոխական դրոշը։ Ուսումնասիրելով առաջնորդի գաղափարական բազմահարուստ ժառանգությունը, նրանք տոգորվում են լենինյան ուսմունքի հեղափոխական-քննադատական ոգով, հաստատակամորեն գիտակցում պաշտպանելու մարքսիզմի արմատական սկզբունքները ամեն երանգի օպորտունիստական խեղաթյուրումներից։ Այո՛, Լենինի կերպարը, նրա բովանդակ կյանքը հեղափոխական մտքի ու հեղափոխական գործողության կենարար աղբյուր են արդի միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժման համար։

Արմատապես մերժելով հայեցողական մտածելակերպն ու գործելակերպը, անշեղորեն հետևելով մարքսյան դրույթին՝ ոչ միայն բացատրել աշխարհը, այլև վերափոխել այն, Լենինը պատմության շրջադարձային պահին գտավ այն հիմնական օղակը, որը որոշեց XX դարի բոլոր հաջորդ իրադարձությունների ընթացքը։ Այդ կռվանը դարձավ նոր տիպի պրոլետարական կուսակցությունը, որի հիմնադրմանն ու կոփմանը նա նվիրաբերեց իր պայծառ կյանքը։ Սահմանելով կոմունիստական կուսակցության էությունը և պատմական դերը, Լենինը այն բնութագրեց որպես արդի դարաշրջանի միտքը, պատիվը, խիղճը։ Այդ փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական ու բարոյական խորիմաստ բանաձև-

վումը Կոմունիստական կուսակցության մանիֆեստի՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոչի հետ միասին դրոշմվել են սովետական կոմունիստների կուսակցական տոմսի վրա։

Մենք, սովետական մարդիկս, հպարտ ենք, որ աշխատում ենք լենինյան կուսակցության փորձված ղեկավարությամբ։ Այն գլխավորը, ինչը բնութագրում է ՍՄԿԿ-ին, անսահման նվիրվածությունն է բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների գործին։ Կուսակցությունը մեծագույն հեղինակություն է նվաճել ժողովրդի մեջ։ Որպես ժողովրդի քաղաքական առաջնորդ ու կազմակերպիչ՝ ՍՄԿԿ-ն ժամանակին լուծում է հասարակական զարգացման հասունացած պրոբլեմները, խթանում մասսաների ստեղծագործական ակտիվությունը։ Սովետական ժողովուրդը, արտահայտելով իր անսահման վստահությունը հարազատ կուսակցության նկատմամբ, մշտապես համալրում է նրա շարքերը թարմ ուժերով։ Միայն XXV համագումարից հետո անցած տարիներին ՍՄԿԿ-ի մեջ ընդունվել են աշխատավորների 2 միլիոն 377 հազար լավագույն ներկայացուցիչներ։ Այսօր մեր կուսակցության շարքերում կա 17 միլիոն կոմունիստ։

Կուսակցության և ժողովրդի միասնությունը մեր հաղթանակների գլխավոր աղբյուրն է։ Լենինը մեզ սովորեցրել է, որ միայն նա կհաղթի, ով հավատում է ժողովրդին, ով սուզվում է կենդանի ժողովրդական ստեղծագործության ակունքի մեջ։ ՍՄԿԿ-ն սրբությամբ է կատարում լենինյան պատգամը։

Կուսակցությունը լենինաբար, քննադատաբար է գնահատում ձեռք բերվածը, համարձակորեն բացահայտում թերությունները, կոմունիստներին, աշխատավորներին մոբիլիզացնում հասուն սոցիալիզմի բոլոր հնարավորությունների առավելագույն արդյունավետ օգտագործման համար, ժողովրդի աշխատանքով ստեղծված ամեն ինչի նկատմամբ իսկական հոգատար վերաբերմունքի համար։

Լենինյան հոբելյանը և ՍՄԿԿ առաջիկա XXVI համագումարը սովետական մարդիկ դիմավորում են քաղաքական և աշխատանքային բարձր խանդավառության պայմաններում, նրանք իրենց բոլոր ուժերը, գիտելիքները և եռանդը նվիրաբերում են տասներորդ հնգամյակի առաջադրանքները, ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. նոյեմբերյան պլենումի որոշումները հաջող կատարելու համար մղվող պայքարին։

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՉՈՐՐՈՐԴ ՏԱՐԻՆ արգասաբեր էր նաև մեր հանրապետության համար։ Հանրապետության քաղաքի ու գյուղի աշխատավորները զգալի հաջողությունների են հասել պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման գործում։ Ժողովրդական տնտեսությունը հնգամյակի չորս տարում ստացել է ավելի քան 350 միլիոն ռուբլու արտապլանային արդյունաբերական արտադրանք։ Նույն ժամանակաշրջանում արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալի բացարձակ աճը կազմում է 1.400 միլիոն ռուբլի։ Գործարկվել են վաթսունից ավելի ձեռնարկություններ, խոշոր արտադրամասեր և այլ օբյեկտներ։ Նշված ժամանակահատվածում շահագործման է հանձնված 3,5 միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն, ինչպես նաև 109 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, 22,4 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկություններ, 3.270 մահճակալով հիվանդանոցներ, մեծ թվով կոմունալ և այլ շինություններ։

Հաճախ, երբ վկայակոչում են մեր հասույթները հավաստող թվերը, թվում է, թե դա այդպես էլ պիտի լինի, մոռանալով այն վիթխարի ջանքերն ու եռանդը, որ գործադրում են կուսակցությունն ու պետությունը հանուն մարդու, ժողովրդի բարօրության։

Հանրապետությունում բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները վերջին չորս տարում աճել են 15,8 տոկոսով։ Բանվորների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձն ավելացել է 12,6, կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 19 տոկոսով։ Ակնբախ են հաջողությունները գիտության և կուլտուրայի ասպարեզում։

Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած հաջողությունների համար մեր հանրապետությունը տասներորդ հնգամյակի առաջին երեք տարում հաղթող է ճանաչվել և 3 անգամ անընդմեջ արժանացել ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտ-



կոմի փոխանցիկ կարմիր դրոշին։ Անցյալ տարվա մեր ցուցանիշները համոզիչ վկայում են, որ մենք չենք վիջի մեր նվաճած բարձունքները և նոր հաջողությունների կհասնենք հնգամյակի եզրափակիչ տարում։

Հատկապես պետք է շեշտել մեր ընդհանուր վերելքի համայնապատկերում գյուղի աշխատավորների արժանի ներդրումը։ Մենք հպարտությամբ ենք նշում, որ ընթացիկ հնգամյակում ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այս էլ երկրորդ անգամ, ողջույն է հղում մեր գյուղատնտեսության աշխատավորներին, որոնք կատարելով ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումները, անցյալ տարի աճեցրին հացահատիկի, խաղողի, բանջարեղենի, կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի և եթերայուղատու կուլտուրաների լավ բերք, կազմակերպված անցկացրին բերքահավաքը և գերակատարեցին պետությանը դրանց վաճառքի սոցիալիստական պարտավորությունները։ Հանրապետությունը հացահատիկի ու շաքարի ճակնդեղի վաճառքի հնգամյա պլանը կատարել է ժամկետից շուտ՝ չորս տարում։

Անցյալ տարի ստացվել է ռեկորդային քանակությամբ հացահատիկ՝ ավելի քան 308 հազար տոննա և հայրենիքի շտեմարաններն է լցվել 70 հազար տոննա։ Այդ հաջողությունները հիմնականում ձեռք են բերվել բերքատվության բարձրացման հաշվին, որը հանրապետությունում միջին հաշվով կազմեց հեկտարից 21,6 ցենտներ։ Ճակնդեղագործների անձնվեր աշխատանքի շնորհիվ չորս տարում պետությանը վաճառվել է 635 հազար տոննա շաքարահումք, որը պլանից 160 հազար տոննայով ավելի է։ Հողագործների ընդհանուր հաղթանակի մեջ իրենց ավանդն են մուծել խաղողագործները։ Պետությանը վաճառվել է 224 հազար տոննա խաղող, որը 4 հազար տոննայով ավելի է սահմանված պլանից։

Սակայն, ինչպես նշեց ընկեր Կ. Ս. Դեմիրճյանը ՀԿԿ Կենտկոմի 1979 թվականի դեկտեմբերյան պլենումում, էապես ետ ենք մնացել խաղողի արտադրության ու վաճառքի հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքներից։

Հանրապետության երկրագործների և անասնապահների հաջողությունները, որոնք արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի բարձր գնահատականին, վկայում են, որ Հայաստանի գյուղատնտեսությունը զարգանում է հարաճուն տեմպերով։ Ինքնաքննադատաբար գնահատելով գործերի վիճակը, պետք է ասել, որ դեռևս շատ բան է հարկավոր հանրապետության գյուղատնտեսության ռեզերվներն առավել լիովին օգտագործելու, առկա թերություններն ու վրիպումները վերացնելու համար։

Մեզ համար հնգամյակի եզրափակիչ տարին կրկնակի հոբելյանական է։ Լենինյան հոբելյանական տարում մենք նշելու ենք նաև Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-ամյակը։ Հոբելյանների նախապատրաստությունն ու տոնակատարությունը կանցկացվեն կոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը հայ ժողովրդի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների կուռ համախմբվածության, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր եղբայրական ժողովուրդների հետ անխախտ բարեկամության հետագա ամրապնդման նշանաբանով։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ մշտապես զարգանում ու կատարելագործվում է։ Այդ դինամիկ պրոցեսը բնական է, քանզի բխում է սոցիալիստական աշխարհի օրինաչափություններից, ուր բացառված են անտագոնիստական ներհակությունները, սոցիալական կատակլիզմները։ Զարգացած սոցիալիզմը հասարակական առաջընթացի առ այսօր ձեռք բերված ամենաբարձր աստիճանն է։

Սոցիալիզմի առավելությունները ավելի ակներև են արդի կապիտալիզմի ճգնաժամի ուժեղացման ֆոնի վրա։ Կապիտալիստական աշխարհի վերջին տարիների խոր տեղաշարժերը կրկին հաստատեցին, որ այն թևակոխել է հակասությունների սրման տևական շրջան, երբ սերտորեն միահյուսվում են առևտրաարդյունաբերական, վալյուտաֆինանսական, էներգետիկ, էկոլոգիական ճգնաժամերը։ Շարունակում են մոլեգնել ինֆլյացիան ու գործազրկությունը։ Կապիտալիզմի տնտեսական ճգնաժամը, բնականաբար, տարածվում է նաև քաղաքական կյանքի, գաղափարախոսության ոլորտը։ Կապիտալիզմի ջատագովներն ի վիճակի չեն որևէ հուսադրող դեղատոմս առաջարկել ժողովուրդներին։

Նույնիսկ տնտեսական ճգնաժամի վերաբերյալ իրենց կանխագուշակումներում նրանք ելք չեն գտնում, անկարող են նշել ինֆլյացիայի կասեցման մեթոդները։ Նրանք մռայլ գույներով են պատկերում ապագան։

Գաղափարադաստիարակչական աշխատանքի հանգուցային խնդիրն է խելամտորեն նպաստել սովետական էկոնոմիկայի նոր վերելքին, տնտեսական մեխանիզմի կատարելագործմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացմանը, զարգացած սոցիալիզմի հնարավորությունների լիակատար իրացմանը։

Կոմունիզմի կառուցման ներկա ժամանակահատվածում գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման ուղիները նշել է ՍՄԿԿ XXV համագումարը, որը մշակեց մեր երկրի հետագա առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան։ Արգասաբեր է կուսակցության Կենտկոմի գործունեությունը միջազգային լարվածության թուլացման ասպարեզում։ Միջուկային պատերազմի սպառնալիքի վերացման և սպառազինությունների մրցավազքի դադարեցման համար կարևոր ավանդ է ՍՍՍ—2 պայմանագրի ստորագրումը, Եվրոպայում լարվածության թուլացման պրոցեսն ամրապնդելու նպատակով Սովետական Միության նոր, խաղաղ նախաձեռնությունը։

Կոմունիստական շինարարության մասշտաբների մեծացումը և խնդիրների բարդացումը բարձրացնում են սուբյեկտիվ գործոնի, անհատի դերը, կենսական անհրաժեշտություն դարձնում սովետական մարդկանց սոցիալական ակտիվության ու կուլտուրայի վերելքը, ընդլայնում պահանջմունքների շրջանակը։

Ինչպես հայտնի է, անցած տարվա հոկտեմբերին Մոսկվայում կայացավ գաղափարական աշխատողների համամիութենական խորհրդակցություն, որտեղ գործարար մթնոլորտում և բարձր մակարդակով քննարկվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովի «Ամբողջ կուսակցության գործը» զեկուցումը, «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» կուսակցության Կենտրոնական կոմիտեի որոշման կատարման ընթացքը։ Հիրավի, այդ որոշումը սկզբունքային նշանակություն ունեցավ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի որակի և արդյունավետության հետագա բարձրացման, քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովման համար։ Սովետական մարդիկ այդ փաստաթուղթն ընդունեցին որպես անմիջականորեն իրենց ուղղված լենինյան կուսակցության խոսքը, որպես նոր, քաղաքականապես հասուն, կոմունիզմի գործին խորապես նվիրված մարդու դաստիարակման ու ձևավորման միջոց։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի որոշումը գաղափարադաստիարակչական աշխատանքի բնագավառում տևական ժամանակաշրջանի ծավալուն ծրագիր է։

Սոցիալիզմի կառուցման բոլոր փուլերում կուսակցությունն ընդունել է գաղափարաքաղաքական աշխատանքը կատարելագործելու որոշումներ, իմաստավորել է փոփոխվող օբյեկտիվ նախադրյալները, սահմանել մասսաների կոմունիստական դաստիարակության պրոցեսի նոր բնագծերը՝ հետևողականորեն ամրապնդելով ձեռք բերվածը որպես առաջընթացի հիմք։ Այժմ ավելի է կոնկրետանում կոմունիզմ կառուցողի մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորումը, ակներև է դառնում աշխատավորների տնտեսագիտական, իրավագիտական կրթության անհրաժեշտությունը, հրամայական պահանջ է սովետական մարդկանց քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը։ Այս խնդիրները կուսակցության ծրագրային նպատակի մարմնավորումն են, կոմունիստական հասարակության հաստատման կարևոր պայմանը։

Խորհրդակցությունում առանձնահատուկ շեշտվեց, որ այսօր մենք հասել ենք էկոնոմիկայի և սոցիալական հարաբերությունների զարգացման այնպիսի մակարդակի, սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնության այնպիսի աստիճանի, երբ ամուր հիմք է ստեղծված երկրի նյութական ու հոգևոր ուժերի նոր հզոր վերելքի համար։ Այդ հիմքի վրա կուսակցությունը լուծում է բարդ, խոշոր մասշտաբի խնդիրներ, առաջին հերթին՝ էկոնոմիկայի



և դաստիարակության բնագավառում։ Հասարակության կենսագործունեության այդ կարևորագույն ոլորտներում ձեռք բերված հաջողությունները օրգանապես փոխպայմանավորված են։ Դրա վկայությունն են կուսակցության Կենտկոմի անցած տարվա ապրիլին ու հուլիսին հաջորդաբար ընդունած «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին», «Տնտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին» որոշումները, ինչպես նաև ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը՝ պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին։ Սոցիալիստական հասարակարգում աշխատանքի արտադրողականության աճը ձեռք է բերվում գլխավորապես արտադրության տեխնիկական վերազինման միջոցով, որն իրականացվում է՝ հաշվի առնելով մարդկային գործոնը՝ մարդկանց առողջությունը, զբաղվածությունը, պրոֆեսիոնալ պատրաստության և որակավորման բարձրացման պայմանները։ Նման մոտեցումը համապատասխանում է սոցիալիզմի հումանիստական էությանը, որի ժամանակ գիտատեխնիկական հեղափոխության արդյունքներն ի սպաս են դրվում ժողովրդի բարօրությանը, անհատի զարգացման շահերին։

Մեր առաջընթացի ներկա փուլի հրատապ պրոբլեմների լուծումը կօգնի լրիվ մոբիլիզացնելու բոլոր առկա ռեսուրսները, հասնելու էկոնոմիկայի բոլոր ճյուղերի, երկրի բոլոր շրջանների ներդաշնակ, կոմպլեքսային զարգացմանը, առաջընթացի որակական գործոնների ապահովմանը։ Հույժ անհրաժեշտ է սկզբունքային և պահանջկոտ վերաբերմունք ցուցաբերել արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման, սպառողական հատկությունների բարելավման նկատմամբ։ Ակնհայտ է, որ լավ պատրաստված իրը նշանակում է նաև խելացիորեն օգտագործված հումք, նյութեր, էլեկտրաէներգիա, օգտավետությամբ ծախսված աշխատանք։ Միայն բարձր որակով պատրաստված արտադրանքն է հարկավոր հասարակությանը, մարդուն։ Չէ՞ որ ցածրորակ արտադրանքի, իրերի և ապրանքների թողարկումը ո՛չ միայն տնտեսական, այլև բարոյական վնաս է։

Ինչպես հայտնի է, անցյալ տարի հանրապետությունում թողարկվող արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ պետական որականիշով արտադրանքի տեսակարար կշիռը կազմել է շուրջ 16 տոկոս՝ 1975 թվականի 6,5 տոկոսի փոխարեն, իսկ որականիշով արտադրատեսակների քանակը հասցված է 2.260-ի՝ 511-ի փոխարեն։ Փաստ է, սակայն, որ շատ արտադրատեսակների որակը դեռևս ցածր է։ Հանրապետությունում քիչ չեն այնպիսի ձեռնարկությունները, որոնք թողարկում են վատորակ արտադրանք, խախտում են պետական ստանդարտների պահանջներն ու տեխնիկական նորմաները։ Միայն 1978 թվականին արգելվել է ավելի քան 7 միլիոն ռուբլու արտադրանքի մատակարարումը, իսկ 64 ձեռնարկություններ մոտ 2 միլիոն ռուբլի գումարով տուժարկվել են։

Կուսակցությունը մեզ կոչում է դրսևորել բարձր կազմակերպվածություն, կարգ ու կանոն, ամրապնդել աշխատանքային, տեխնոլոգիական, պլանային և ֆինանսական կարգապահությունը, բարձրացնել հանձնարարված գործի համար պատասխանատվությունը։ Ըստ էության, այս ամենը թե՛ սոցիալիստական տնտեսավարման, թե՛ կոմունիստական դաստիարակության միասնական խնդիր է, որը հարկավոր է լուծել կուսակցական սկզբունքայնությամբ ու հաստատակամությամբ։

Հասուն սոցիալիզմը, գործնականում լուծելով նոր մարդու ձևավորման խնդիրը, միաժամանակ մշակում է նաև արտադրության մեջ ու կենցաղում աշխատանքային և ազատ ժամերին հասարակության յուրաքանչյուր անդամի վարքի դրսևորման առավել բարձր չափանիշներ։ Այնպիսի նորմեր, ինչպիսիք են անհատի բարոյական հուսալիությունը, բանվորական խիղճը, բարձր տրամադրությունը, տիրոջ զգացումը, անմիջականորեն ներազդում են աշխատանքի արդյունավետության ու որակի, հասարակության բոլոր գործերի վրա։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը նպատակամղում է բարձրացնել ղեկավար կադրերի պատասխանատվությունը տնտեսական գործունեության դաստիարակչական հետևանքների համար, առաջավոր փորձի, սոցիալիստական մրցության, աշխա-

տանքի կազմակերպման առաջավոր ձևերի դաստիարակչական հնարավորությունների լրիվ օգտագործման համար։

Աշխատանքային կոլեկտիվում ամեն մարդ հնարավորություն ունի զարգացնելու ու կատարելագործելու իր ունակությունները, ձիրքը։ Այստեղ մարդը մկրտվում է աշխատանքում, թրծվում է նրա բարոյաքաղաքական ու գաղափարական խառնվածքը։ Արտադրական խնդիրների ու հասարակական առաջադրանքների կենսագործման պրոցեսում առավել հստակ են դրսևորվում անհատի ո՛չ միայն դրական հատկանիշները, այլև թերությունները։ Միաձույլ, բարոյապես ամուր աշխատանքային կոլեկտիվը կարող է ժամանակին կանխել իր անդամներից որևէ մեկի սխալները, շտկել արատները, ձեռք մեկնել նրան, ով գտնվում է բարոյահոգեբանական աննպաստ կացության մեջ։ Նման կոլեկտիվում մարդը կսովորի ոչ միայն լավ ու խղճով աշխատել, այլև, որ շատ կարևոր է, խորապես կգիտակցի հանուն հասարակության բարօրության ստեղծագործական աշխատանքի խթաններն ու շարժառիթները։ Օգնելով մարդկանց՝ հաղթահարելու թերությունները, ճիշտ կողմնորոշվելու բարդ իրավիճակում, կոլեկտիվը, որպես հեղինակավոր ու ազդեցիկ հասարակական ուժ, միաժամանակ ինքն է դաստիարակվում։ ՍՍՀՄ նոր սահմանադրությունն աշխատանքային կոլեկտիվներին օրենսդրորեն օժտել է այնպիսի ֆունկցիաներով ու իրավունքներով, ինչպիսիք են արտադրության ու սոցիալական զարգացման պլանավորումը, կադրերի պատրաստումը և տեղաբաշխումը, ձեռնարկությունների ու հիմնարկությունների կառավարման հարցերի լուծումը, աշխատողների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավումը, նրանց որակավորման բարձրացումը և կոմունիստական դաստիարակությունը։ Կառավարման հարցերին նվիրված որոշումներում նույնպես նախատեսված է աշխատանքային կոլեկտիվների ակտիվ մասնակցությունը հնգամյա և տարեկան պլանների մշակման ու կատարման հսկմանը, արտադրության զարգացման համար նախատեսվող միջոցների օգտագործման խնդիրների ձեռնարկմանն ու լուծմանը, ինչպես նաև սոցիալ-կուլտուրական միջոցառումներ, բնակարանային շինարարություն ու նյութական խրախուսում։

ՍՄԿԿ Կենտկոմը, քննելով գաղափարախոսական աշխատանքի ընթացքում ծառացող պրոբլեմների ողջ կոմպլեքսը, ուշադրությունը սրում է անցյալի վերապրուկների դեմ պայքարն ուժեղացնելու անհրաժեշտության վրա։ Որքան էլ կենսահաստատ է կոմունիստական գաղափարախոսությունը, որքան էլ խորն են սովետական ապրելակերպի արմատները, այսուհանդերձ մեզանում դեռևս առկա են անցյալի վերապրուկները, որոնք լուրջ վնաս են հասցնում կոմունիստական դաստիարակությանը, սոցիալական ու տնտեսական պրակտիկային, համակեցության սկզբունքներին։ Այստեղ առավել կենսունակը մանրբուրժուական, մասնավոր սեփականատիրական հոգեբանությունն է, հին ապրելակերպի սովորույթներն ու բարքերը, սոցիալական իներցիայի բարդ մեխանիզմը։ Մեր կուսակցությունը մերժում է ինչպես աղքատության ու ասկետության քարոզը, այնպես և սպառման պաշտամունքը, քաղքենու հոգեբանությունը։ Նյութական բարիքները մեզ համար ինքնանպատակ չեն, այլ անհատի համակողմանի զարգացման նախադրյալներ են։

Չպետք է մոռանալ, որ քաղքենիության, անհատապաշտության մանրէները մարդկանց որոշ մասին վարակում են մանրսեփականատիրական, սպառողական հոգեբանությամբ, կուտակելու մոլուցքով, «իրային հիվանդությամբ»։ Նման պայմաններում մարդը հոգևոր սնանկություն է ապրում, դառնում իրերի գերի, կորցնում անշահախնդրության գեղեցիկ զգացումը։ Հետևաբար, գլխավորն ամենուրեք այնպիսի մթնոլորտի ստեղծումն է, որպեսզի նման տարրերը զգան, որ իրենց վարքագիծը մերժելի է։ Այսպիսի հարցադրումը բացատրվում է ոչ թե անցյալի վերապրուկների լայն տարածմամբ, այլ առաջին հերթին նրանով, որ դրանք հակոտնյա են սոցիալիզմին և մեր հասարակության մեջ չունեն խոր սոցիալական արմատներ։ Այդ երևույթներն ավելի օտարածին են երևում մեր հաջողությունների ֆոնի վրա։ Չէ՞ որ դրանք դանդաղեցնում են մեր հուժկու ընթացքը, մեր առանձին գիտակից մարդկանց մոտ թուլացնում սոցիալական ակտիվությունը, իսկ գաղափարապես անկայունների



շրջանում հարուցում ժխտողական վերաբերմունք սոցիալիստական ապրելակերպի արժույթների նկատմամբ։

Հին աշխարհի վերապրուկները մեր օրերում խաթարում են մարդկանց գիտակցությունը, անտարբերություն են ծնում հասարակական պրոբլեմների նկատմամբ, թուլացնում հավատը օրենքի ուժի և արդարության նկատմամբ։ Հիրավի, պաշտոնական դիրքի չարաշահումը, հատկապես շահադիտական ակնկալությամբ, մեծ վնաս է պատճառում ինչպես տնտեսական շինարարությանը, այնպես և դաստիարակության գործին։ Պաշտոնական դիրքի չարաշահման ամենաայլանդակ ձևը կաշառակերությունն է՝ իր բազում դրսևորումներով։ Մեր կյանքի հիմունքներին անհարիր է պրոտեկցիոնիզմը։ Անտեսելով կազմակերպման ու կառավարման սկզբունքները, կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղադրումը, պրոտեկցիոնիզմը ծնում է տնավարություն, խնամիականություն, հայրենակցություն։ Նման անառողջ իրավիճակի ստեղծման դեպքում անխուսափելի են հարմարվողականությունը, կարիերիզմը, ստորաքարշությունը, իրենց տարբերակներով՝ զրպարտությունը, ինտրիգները, ասեկոսները և այլն։

Հասարակական կարծիք պետք է ստեղծել, առաջին հայացքից, ոչ միշտ նկատելի, անբարոյականության այնպիսի դրսևորումների դեմ, ինչպիսիք են երեսպաշտությունը, ցինիզմը, անհամեստությունը, անհարգալից վերաբերմունքը մարդու նկատմամբ։ Էգոիզմի, մորթապաշտության դրսևորում է անտարբերությունը, որն անհամատեղելի է կոմունիստական բարոյականության սկզբունքներին։

Պրակտիկան վկայում է, որ մեր գլխավոր նպատակի իրականացումը սերտորեն ներդաշնակվում է ընթացիկ խնդիրների լուծման հետ։ Նոր մարդու ձևավորումը օրգանապես միակցվում է տնտեսական, սոցիալական ու քաղաքական պրոբլեմների ողջ կոմպլեքսի հետ։

Կուսակցությունն անհրաժեշտ է համարում ապահովել պրոպագանդայի ու ագիտացիայի գիտական մակարդակը, ապահովել դրա գործնականությունն ու կոնկրետությունը, կապը կյանքի, տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման հետ, զարգացնել դրա հարձակողական բնույթը։ Այսօր, ինչպես երբեք,— ասված է ընկեր Սուսլովի զեկուցման մեջ,— հրատապ խնդիր է, որ կուսակցական կադրերը, բոլոր կոմունիստները, ինչպես նաև աշխատավորության առավել լայն շրջանները ուսումնասիրեն Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները, որոնցում մշակված են մեր հեղափոխական գիտության հիմքերը։ Խոսքը վերաբերում է դրանց խոր, ամբողջական ուսումնասիրմանը և պրոպագանդմանը։ Անհրաժեշտ է խորապես ուսումնասիրել ՍՄԿԿ-ի պատմությունը, կուսակցական համագումարների փաստաթղթերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, որն անձնական մեծ ավանդ է ներդնում կոմունիստական շինարարության պրոբլեմների գիտական մշակման գործում։

Պրոպագանդայի ու ագիտացիայի գիտական մակարդակը առաջին հերթին պայմանավորվում է մարդկանց մարքս-լենինյան աշխարհայացքի ոգով դաստիարակելու կարողությամբ։ Այն, որպես գիտելիքների ամբողջական սիստեմ, իր մեջ է ներառնում պատմական փորձի, բնագիտական ու տեխնիկական գիտությունների արդի հասումները, հնարավորություն ընձեռելով ճիշտ կողմնորոշվելու մեր բարդ ու դինամիկ դարաշրջանի երևույթներում ու պրոցեսներում։

Մարքսիզմ-լենինիզմը մշտապես զարգացող տեսություն է, որը խարսխված է ժամանակակից հասարակական զարգացման բարդ պրոցեսների գիտական ուսումնասիրման, նոր երևույթների վերլուծության վրա։ Կուսակցությունն իր տեսական գործունեության մեջ հենվում է սովետական հասարակագետ գիտնականների հետազոտությունների վրա։ Գաղափարախոսական աշխատանքում հասարակագիտության դերի մեծացումը անխզելիորեն առնչվում է գիտական հետազոտությունների, առանձնապես հիմնարար հետազոտությունների որակի և կոմպլեքսայնության բարձրացման հետ։ Այժմ, առանց հասարակական գիտությունների բոլոր բնագավառներում հիմնարար հետազոտություններ անցկացնելու, գաղափարախոսական, պրոպագանդիստական ու դաստիարակչական աշխատանքը չի կարողանա լրիվ լուծել իր խնդիրները։

Հեղափոխական տեսության և պրակտիկայի հորիզոններն ընդլայնող տեսական մտքի ակնառու նվաճում եղավ զարգացած սոցիալիզմի՝ որպես կոմունիստական ֆորմացիայի կազմավորման, դրա բարձրագույն փուլին անցնելու տևական, պատմականորեն անհրաժեշտ էտապի մասին ուսմունքը։ Կուսակցական պաշտոնական նյութերում բազմակողմանի հիմնավորում գտած այդ ուսմունքի հետ անմիջականորեն առնչվում են ՍՄԿԿ-ի տեսական ու պրակտիկ գործունեության շատ ուղղություններ։

Հասուն սոցիալիզմի փուլում մեր կարգերի ստեղծարար հնարավորությունները, հումանիստական էությունը բացահայտվում են հարաճուն չափով։ Այս իրողությունն արտացոլվեց ՍՍՀՄ նոր սահմանադրության մեջ։ Հիմնական օրենքի որոշարկումը ո՛չ միայն զարգացած սոցիալիզմի հասումների վավերագրման պատմական ակտ է, կոմունիստական շինարարության պրակտիկայի ստեղծագործական ընդհանրացում, այլև հզոր խթան հասարակական-քաղաքական հարաբերությունների ողջ սիստեմի հետագա կատարելագործման համար։

Պրոպագանդայի ու ագիտացիայի գիտական բարձր մակարդակի հատկանիշներից է պատմականության սկզբունքը։ Ամեն մի երևույթ, որքան էլ այն նշանակալից լինի, չի կարող իր ողջ էությամբ հասկանալի դառնալ, եթե արծարծվում է վերացականորեն, երևույթների շղթայից անջատ։ Պատմական մոտեցումն է հնարավորություն ընձեռում բացահայտելու կոմունիստական կուսակցության վիթխարի գործունեությունը, որը երբեմնի հետամնաց երկիրը բարձրացրեց արդի սոցիալական պրոգրեսի գագաթները։

Դասակարգային, կուսակցական մոտեցումը գաղափարախոսության մեջ որպես գիտական ու քաղաքական սկզբունք չի կարող դադարել անհրաժեշտություն լինելուց, քանի որ կան իրենց շահախնդրություններով հակադիր դասակարգեր ու հասարակական սիստեմներ։

Այսօր հատկապես անհանդուրժելի են հրատապ պրոբլեմների ստեղծագործական իմաստավորման փոխարեն տարրական ճշմարտությունների մեխանիկական կրկնությունը, մեր պրոպագանդայում դեռևս հանդիպող ձևականությունը և ճոռոմաբանության հակումը, նյութերի գորշ, «տափակ» ոճը։ Այս և նման մյուս թերություններն էապես նվազեցնում են, ինչպես նշված է որոշման մեջ, մարդկանց գիտակցության և զգացմունքների վրա դաստիարակչական աշխատանքի ներգործության արդյունավետությունը։

Վերջին շրջանում իրավամբ շատ է խոսվում ամեն գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման անհրաժեշտության մասին։ Սակայն կուսակցության Կենտկոմի որոշումը մեզ հիշեցնում է, որ երևույթների համակողմանի վերլուծության հետ մեկտեղ, վերհանելով ու բնորոշելով դրանց ներքին կապը և տեղը ամբողջական սոցիալական օրգանիզմում, չի կարելի չառանձնացնել քաղաքական մոտեցումը։ Վերջինս այն տրամաբանական թելն է, որը հնարավորություն է ընձեռում՝ հասկանալու կատարվող անցքերի էությունը, կազմելու դրանց ամբողջական շղթան։ Պատկերավոր ասած, քաղաքականությունն ամեն մի սոցիալական երևույթի, պրակտիկ աշխատանքի իմաստն է, էությունը։

Գաղափարաքաղաքական դաստիարակության կարևոր խնդիրն է բոլոր սովետական մարդկանց մեջ մեր սոցիալիստական հայրենիքի համար հպարտության զգացում ներարկելը, ժողովուրդների բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետագա ամրապնդելը։ Խորհրդակցությունում հատկապես շեշտվեց այն միտքը, որ պրոպագանդայում հարկավոր է բացահայտել սոցիալիստական ազգերի զարգացման օրինաչափությունները, ցույց տալ կոմունիզմի կառուցման ընթացքում ազգերի աստիճանական մերձեցման կոնկրետ, տեսանելի նշանները, սովետական հզոր էկոնոմիկան՝ միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսը ստեղծած բոլոր ժողովուրդների եղբայրական համագործակցությունը։ Հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության փոխադարձ կապն ու միասնությունը դրսևորվում են ինչպես մարդկանց ազգային արժանապատվության, ազգային կուլտուրաների հարգմամբ, այնպես և ազգայնականության ու շովինիզմի ռեցիդիվների նկատմամբ անհաշտ վերաբերմունքով։



Գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլը նոր, ավելի բարձր ու բարդ խնդիրներ է հարուցում ո՛չ միայն մեքենաներին ու սարքերին, այլև դրանց կառավարողներին՝ մարդկանց։ Ավելին, սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկայիս մակարդակը պահանջում է մարդու հոգեբանության վերափոխում, որը, ինչպես հայտնի է, այնպես արագ չի կատարվում, ինչպես նրա կյանքի նյութական հիմքերինը։ Ահա այստեղ է, որ հոգեպես հարուստ, բարձր ինտելեկտ ու խոր հուզաշխարհ ունեցող անհատի ձևավորման համար շատ կարևոր են դառնում արվեստն ու գրականությունը, որոնք արթնացնում են մարդկանց ստեղծարար ուժերը, գեղեցկի զգացումը։

Կուսակցությունը պահանջում է, որ մեր գաղափարախոսական ճակատը առավել զգաստորեն արձագանքի աշխարհում տեղի ունեցող փոփոխություններին, ժամանակին հակահարվածի թշնամու գաղափարախոսական մեքենայություններին ու զրպարտություններին, մերկացնի նրա պրոպագանդայի կեղծիքը։

Գաղափարախոսական ճակատի աշխատողները պարտավոր են սովետական մարդկանց հետևողականորեն դաստիարակել քաղաքական աչալրջության, դասակարգային սուր զգացողության, գաղափարական համախմբվածության ու համոզվածության ոգով, մեր կարգի և մեր գաղափարների գերազանցության գիտակցության, սոցիալիզմի հեղափոխական հասումները պաշտպանելու պատրաստակամության ոգով։ Գաղափարական ներազդման բոլոր միջոցներով պետք է հմտորեն, վարպետորեն բացահայտել կապիտալիզմի՝ որպես շահագործման, ճնշման ու բռնության սիստեմի, արատները, կենդանի օրինակներով, մարդկային կոնկրետ ճակատագրերով ցույց տալ, թե ինչ բան է մասսայական գործազրկությունը, անելանելի աղքատությունը, թե իմպերիալիստական բուրժուազիան ինչ արյունոտ գործելակերպ է դրսևորում, երբ ռեալ սպառնալիք է ստեղծվում նրա գերիշխանության համար։

Հիրավի, չկա ավելի վսեմ խնդիր, քան կուսակցության խոսքը մասսաների շրջանում տարածելը, ժողովրդական զանգվածներին մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին հավատարմության, կոմունիզմի գաղափարներին նվիրվածության ոգով դաստիարակելը։

---

# ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊԻ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿԸ

**Մ. Հ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործկոմի նախագահ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՊՈՒՏԱՏՆԵՐԻ տեղական սովետների գործունեության կարևոր բնագավառներից մեկը քաղաքացիների ընդունելության պատշաճ կազմակերպումն է, նրանց առաջարկություններին, դիմումներին և գանգատներին ընթացք տալու նպատակով տարվող աշխատանքը։ ՍՄԿԿ XXV համագումարը մասսաների հետ կուսակցության կապի ձևերից մեկը համարեց աշխատավորների նամակները, որոնք արտացոլում են սովետական մարդկանց աճող հասարակական ակտիվությունը և որոնցում «պաշտպանվում է կուսակցության քաղաքականությունը, կարծիքներ հայտնվում կուսակցության և պետության կյանքի բազմաթիվ արմատական հարցերի վերաբերյալ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 99)։ Անտարակույս, աշխատավորների նամակները նաև նրանց ու սովետների կապի ամրապնդման կարևորագույն միջոց են։ Ժողովրդական դեպուտատների Երևանի քաղաքային սովետի գործադիր կոմիտեն մշտապես հաշվի է առնում այս հանգամանքը և ամեն կերպ ձգտում է ամրապնդել կապը աշխատավորական լայն մասսաների հետ, ունկնդրել նրանց ձայնին, բավարարել նրանց պահանջները։

Աշխատավորների հետ կուսակցական, սովետական, պետական մարմինների լայն ու բազմակողմանի կապերի ամրապնդման, քաղաքացիների առաջադրած հարցերի լուծման ու պահանջների բավարարման սկզբունքային դրույթները մշակել է մեր կուսակցության ու պետության հիմնադիր Վ. Ի. Լենինը սովետական իշխանության առաջին տարիներին։ Մեծ առաջնորդը պահանջում էր աշխատավորների նկատմամբ լինել զգայուն, ուշադիր ու հոգատար, նրանց առաջարկություններին, դիմումներին ու գանգատներին տալ լիարժեք պատասխաններ։ Վ. Ի. Լենինը վճռականորեն դատապարտում էր բյուրոկրատիզմի և քաշքշուկի երևույթները՝ ինչ ձևով էլ որ դրանք դրսևորվեին։

Լենինյան այդ սկզբունքները դրված են «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո քաղաքացիների նամակների հետ տարվող աշխատանքի հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի ապրիլի 28-ի որոշման հիմքում։ Այդ որոշմամբ կուսակցական ու սովետական մարմինների առջև խնդիր է դրվում՝ արմատապես բարելավել գործի դրվածքը բոլոր օղակներում, հետևողականորեն կիրառել քաղաքացիներին ունկնդրելու և նրանց առաջարկություններին ընթացք տալու լենինյան սկզբունքները, ժամանակին ու հիմնավոր կերպով քննարկել նրանց գրավոր ու բանավոր դիմումները։ Միաժամանակ պահանջվում է պատասխանատվության ենթարկել այն պաշտոնատար անձանց, ովքեր խախտում են աշխատավորների նամակներին ընթացք տալու սահմանված կարգը, ձևական, բյուրոկրատական մոտեցում են ցուցաբերում դրանց քննարկմանը, ընդունում չհիմնավորված որոշումներ։

Աշխատավորների նամակների քննարկումը և քաղաքացիների ընդունելության կազմակերպումը բարելավելու գործում մեծ նշանակություն ունեցան նաև ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության 1978 թ. օգոստոսի 29-ի՝ «Կրասնոդար քաղաքի ժողովրդական դեպուտատների քաղաքային, շրջանային, ավանային սովետներում քաղաքացիների առաջարկությունների, դիմումների և գանգատների քննարկման աշխատանքների մասին» և ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. մարտի՝ «Կուսակցական, սովետական և այլ կազմակերպություններում քաղաքացիների ընդունելության հետագա բարելավման մասին» որոշումները։

Կուսակցության Երևանի քաղաքային կոմիտեն ու ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի գործադիր կոմիտեն մշակել և իրականացնում են միջոցառումների լայն պլաններ, որոնք բխում են այդ որոշումների պահանջներից։ Արդեն երկու տարի է, ինչ հանրապետության կառավարության որոշմամբ գործկոմում ստեղծվել է քաղաքացիների ընդունելության կազմակերպման և աշխատավորության նամակների քննարկման վերահսկողության տեսչություն։

Սովետական իշխանության մարմինների գործունեության նպատակը բնակչության պահանջմունքների ըստ ամենայնի բավարարումն է, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառների հետագա զարգացումը։ Այնտեղ, ուր տեղական իշխանությունները սերտ կապի մեջ են աշխատավորության հետ և ուշի-ուշով ունկնդրում են նրա ձայնին, անկասկած, լավ են լուծվում այդ խնդիրները։ Վերջին տարիներին մայրաքաղաքի հետագա զարգացման վերաբերյալ մի շարք կարևոր որոշումներ են ընդունվել։ Անշուշտ, դրանցից ամենակարևորը «Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» 1978 թ. ապրիլին ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի ընդունած որոշումն է։ Դա ծրագրային մի փաստաթուղթ է, որը մայրաքաղաքի առջև կոմպլեքսային զարգացման լայն հեռանկարներ է բացել։

Ընթացիկ հնգամյակում բարեկարգվել է 542 և կանաչապատվել 317 հեկտար տարածություն, զբոսայգիներ են հիմնվել 26 կոմիսարների անվան և Սովետական շրջաններում, ստեղծվել են նոր պուրակներ ու կանաչ գոտիներ։ Այդ աշխատանքները կատարվել են հիմնականում շաբաթօրյակների միջոցով, տասնյակ հազարավոր երևանցիներ ակտիվորեն մասնակցում են քաղաքի բարեկարգմանն ու կանաչապատմանը։

Քաղաքացիների առաջարկությունների, դիմում-գանգատների առնչությամբ տարվող աշխատանքի հարցերը պարբերաբար քննարկվում են ինչպես քաղաքային և շրջանային սովետների նստաշրջաններում, այնպես էլ գործադիր կոմիտեների նիստերում։ Միայն անցած տարում այս հարցը քննարկվել է Լենինյան, Օրջոնիկիձեի, Սպանդարյանի, 26 կոմիսարների անվան և Մյասնիկյանի շրջանային սովետների նստաշրջաններում։

Քաղաքային սովետի գործկոմը վերջին երկու տարում բազմիցս անդրադարձել է այդ ասպարեզում տարվող աշխատանքի վիճակին։

Քաղաքացիների ընդունելության կազմակերպման և աշխատավորների նամակների քննարկման վերահսկողության տեսչության ստուգումների հիման վրա քաղսովետի գործկոմում քննարկվել են Շահումյանի, 26 կոմիսարների անվան շրջսովետների գործկոմների, քաղսովետի գործկոմի բնակարանային ֆոնդի հաշվառման, բաշխման և բնակարանների փոխանակման վարչության, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական, ավտոդողերի գործարանների, «Մասիս» և «Հայէլեկտրալույս» արտադրական միավորումների ղեկավարության հաշվետվությունները։ Գործադիր կոմիտեն քանիցս անդրադարձել է նաև շրջանային սովետների գործկոմներում, հիմնարկ-ձեռնարկություններում քաշքշուկի առարկա դարձած դիմում-գանգատներին և համապատասխան տույժի ենթարկել մեղավորներին։

Այս տարի քաղաքի մի շարք հիմնարկ-ձեռնարկություններում աշխատավորների նամակների քննարկման վիճակի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ արդյունաբերական շատ ձեռնարկությունների, շինարարական, տրանսպորտային, գիտահետազոտական, նախագծային հիմնարկությունների ղեկավարներ, արհմիութենական կազմակերպություններ վերջին տարիներին որոշակի բեկում են մտցրել ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության որոշումների պահանջներին համապատասխան քաղաքացիների ընդու-

նելության կարգավորման, նրանց դիմում-գանգատների առնչությամբ տարվող աշխատանքում։ «Հայէլեկտրալույս» միավորման էլեկտրալամպերի, Երևանի ալյումինի, ավտոդողերի, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարաններում, մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտում և այլ հիմնարկ-ձեռնարկություններում ու կազմակերպություններում նկատելիորեն բարելավվել է բանվոր-ծառայողների առաջարկությունների, դիմում-գանգատների հաշվառման և աշխատավորների ընդունելության գործը։ Այս կազմակերպություններում մեծ հոգատարությամբ են վերաբերվում բանվոր-ծառայողների նամակներին, ձգտում են ընթացք տալ արժեքավոր առաջարկություններին, բավարարել մարդկանց իրավացի պահանջները։ Նրանք ուշադրության կենտրոնում են պահում բանվորների ու ծառայողների բնակարանային-կենցաղային պայմանների բարելավման հարցերը, ձեռնարկության օգուտների հաշվին կառուցում են բնակելի շենքեր, իրականացնում կուլտուր-կենցաղային այլ միջոցառումներ։

Աշխատավորների հետ ժողովրդական դեպուտատների սովետների կապի փորձված մեթոդ է նրանց ընդունելության կազմակերպումը։ Քաղաքային ու շրջանային սովետների գործադիր կոմիտեներն զգալիորեն բարելավել են այդ գործը ինչպես իրենց ապարատներում, այնպես էլ ենթակա կազմակերպություններում։ Քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեների նախագահները, նրանց տեղակալները, վարչությունների և բաժինների ղեկավարները ընդունելություններ են կազմակերպում նաև անմիջականորեն հիմնարկ-ձեռնարկություններում, բնակարանային շահագործման գրասենյակներում։ Նման պրակտիկան դրական արդյունք է տալիս ո՛չ միայն աշխատավորության հետ սովետների, նրանց գործադիր կոմիտեների կապն ամրապնդելու իմաստով, այլև քաղաքացիների պահանջները տեղերում ուսումնասիրելու, դրանք օպերատիվ կերպով լուծելու առումով։

Բարելավվել է նաև ընդունելությունների ժամանակ քաղաքացիներից ստացված դիմումների, գանգատների և առաջարկությունների քննարկման, դրանց ընթացք տալու գործը։ Վերջին երկու տարում քաղաքային սովետին ուղղված դիմում-գանգատներում առաջադրված հարցերի մոտ 42 տոկոսը լուծվել է դրականորեն։ Դա նկատելիորեն բարձր է, քան նախորդ տարիներին։

Քաղաքային սովետի գործկոմը բնակիչներից ստացվող առաջարկությունների ու դիտողությունների վերլուծման հիման վրա համապատասխան ուղղումներ է կատարում քաղաքի զարգացման պլաններում, մշակում և իրականացնում լրացուցիչ միջոցառումներ։

Քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեներում մուտք եղած դիմում-գանգատների զգալի մասը վերաբերում է բնակարանների հաշվառման և բաշխման, վթարային ու բարաքատիպ տների քանդման հարցերին։ Նկատի ունենալով աշխատավորների առաջարկությունները, քաղսովետի գործադիր կոմիտեն միջնորդեց ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի առջև՝ թույլատրել Օղակաձև զբոսայգու վեցերորդ հատվածի տների իրացումը։ Կառավարությունն ընդառաջեց մեր խնդրանքին և ընդունեց համապատասխան որոշում։ Եվ ահա արդյունքը. 1976—1978 թթ. այդ նպատակին հատկացվեց 30 հազար fմ, իսկ անցած տարում՝ 10 հազար fմ ընդհանուր տարածությամբ բնակելի մակերես կամ 660 ընտանիք տեղափոխվեց նոր, բարեկարգ բնակարաններ։ Այս հատվածի մնացած տները կիրացվեն մոտ ժամանակներում։ «Եռանկյունի» թաղամասի առաջին և երկրորդ հատվածներում վերջին երեք տարիներին 221 ընտանիք դուրս բերվեց խարխուլ և բարաքային տիպի տներից։ Կալինինի փողոցի վրա բնակվող շատ ընտանիքներ տարիներ շարունակ գանգատվում էին իրենց բնակարանային վատ պայմաններից, պահանջում բարելավել վիճակը։ Եվ ահա անցյալ տարի լուծվեց նրանց նոր բնակարաններ տրամադրելու խնդիրը։

ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1978 թ. «Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշման մեջ նախատեսված է 1978—1985 թվականներին, բնակարանային շինարարության պլաններին համապատասխան, ավելի մեծ ծավալով իրագործել քաղաքի վթարային և խարխուլ տների իրացումը։ Ելնելով այս որոշման պահանջներից, ինչպես նաև քաղաքաշինության խնդիրներից, քաղսովետի



գործկոմը նախատեսել է ըստ տարիների իրացման ենթակա տեղամասերի հերթականությունը։

Աշխատավորներն իրենց նամակներում, նշելով քաղաքում բնակարանային շինարարության խոշոր մասշտաբները, միաժամանակ գրում են, որ բնակելի շենքերը մեծ մասամբ շահագործման են հանձնվում լուրջ թերություններով, անբավարար է ջերմամատակարարումը, շենքերի շրջապատը չի բարեկարգվում։ Նման փաստերը, իրոք, քիչ չեն, իսկ շրջանային սովետների առանձին գործկոմներ շենքերը շահագործման հանձնելիս հաճախ սկզբունքայնություն հանդես չեն բերում, պատշաճ պահանջկոտություն չեն դրսևորում շինարարների նկատմամբ։

Երբեմն աշխատավորների մասսայական դիմում-գանգատների պատճառ են դառնում առանձին մինիստրությունների, գերատեսչությունների և շրջանային սովետների գործկոմների կողմից տարբեր հարցերի լուծման ժամանակ կատարած պետական կարգապահության կոպիտ խախտումները։ Այսպես, 1979 թ. մարտին արդյունաբերական շինարարության մինիստրության համաշինարարական № 1 տրեստը (նախկին կառավարիչ՝ Մ. Իսախանյան) Հարավարևմտյան թաղամասում շահագործման էր հանձնել շինարարական մեծ թերություններով բազմահարկ երեք բնակելի շենք, չէին լուծվել գազի և ջեռուցման մատակարարման հարցերը, չէին կոմպլեկտավորվել վերելակները։

Բնակիչները երկու ամսից ավելի դիմում էին կուսակցական, սովետական վերադաս մարմիններին՝ պահանջելով ձեռնարկել համապատասխան միջոցներ, վերացնել նշված թերությունները։ Դրությունը շտկվեց միայն մայիս-հունիս ամիսներին։

Մեզ մոտ շատ շենքեր դեռևս շահագործման են հանձնվում ժամկետների խախտմամբ։ Դա տարեվերջին հանգեցնում է գրոհայնության, իսկ այնուհետև հարկ է լինում կատարել վերափոխումներ ու լրացուցիչ ծախսեր, հանգամանք, որը նույնպես բազմաթիվ բողոքների տեղիք է տալիս։ Այսպես, Նոր Նորքի 4-րդ միկրոշրջանի № 26 շենքի բնակիչ Ն. Բրուտյանը դիմել էր քաղաքային սովետի գործկոմին, որ իրենց շենքը բնակեցվել է առանց բարեկարգման աշխատանքներն ավարտելու։ Անցել է մի քանի տարի, իսկ շրջապատը մնացել է անբարեկարգ, առանց արտաքին լուսավորության։ Չնայած բնակիչների ահազանգերին, Սովետականի շրջսովետի գործկոմն անհրաժեշտ միջոցներ չի ձեռնարկում խնդրի լուծման համար։ Ցավոք, նման փաստերը դեռևս շատ են։

Աշխատավորներն իրենց նամակներում հատկապես ցավով են նշում այն փաստերը, երբ առանձին հիմնարկություններում կամ ձեռնարկություններում խախտվում են բնակարանային հաշվառման կարգը, բնակարանների հատկացման հերթականությունը, մեկ շնչի հաշվով բնակելի տարածություն տրամադրելու նորմաները, իսկ շրջանային սովետների գործադիր կոմիտեներն անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում նման խախտումները վերացնելու համար։ Ահա մի բնորոշ օրինակ։ Հայկական ՍՍՀ կոմունալ տնտեսության մինիստրության «Հայկոմուննախագիծ» ինստիտուտի ղեկավարությունը (դիրեկտոր՝ Մ. Արզումանյան), 1978 թ. Կնունյանց փողոցի № 5ա շենքից 48 բնակարան ինստիտուտի աշխատակիցներին հատկացնելու ընթացքում, խախտելով Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի կանոնադրության պահանջները, որոշ աշխատողների հանել էր բնակարանային հաշվառման ցուցակից կամ նրանց տեղափոխել ավելի ուշ ժամկետների։ Դա տեղիք էր տվել մի խումբ մարդկանց բողոքների։ Այդ մասին միութենական և հանրապետական կուսակցական-սովետական վերադաս մարմիններին 1978—1979 թվականներին հասցեագրվել են ավելի քան 60 դիմում-գանգատներ, որոնց ստուգումների համար հիմնական գործից կտրվել են բազմաթիվ աշխատողներ։ Բնակարանների հատկացման գործում ինստիտուտում կատարված խախտումների հարցը երկու անգամ քննարկվել է Սպանդարյանի շրջսովետի գործկոմում, բայց լուծվել է միայն քաղսովետի գործկոմի միջամտությունից հետո։ Մինչդեռ այդ բողոքները կարող էին չլինել, եթե «Հայկոմուննախագիծ» ինստիտուտի ղեկավարությունը չխախտեր բնակարանների հատկացման սահմանված կարգը և հանդես բերեր օբյեկտիվ մոտեցում։

Բնակարանների հաշվառման և հատկացման գործում նման խախտումներ գրանցվել են նաև ձեթ-օճառի կոմբինատում, «Արդկապ» գործարանում, «Արա-

գած» գործվածքային ֆաբրիկայում, որոնց մասին քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեներում ստացվել են բազմաթիվ դիմում-գանգատներ:

Կուսակցական, սովետական վերադաս մարմիններին հասցեագրված դիմում-գանգատների պատճառներից է նաև այն, որ առանձին հիմնարկ-ձեռնարկություններում, ինչպես օրինակ, մսի կոմբինատում (դիրեկտոր՝ Ս. Խանոյան), գեղարվեստական ժամացույցների գործարանում (դիրեկտոր՝ Հ. Հարությունյան), սպորտային իրերի արտադրական կոմբինատում (դիրեկտոր՝ Գ. Սաղոյան) բնակարանային հաշվառման դիմումները, հակառակ կանոնադրության, քննարկվում են մեծ ուշացումներով, արդյունքների մասին դիմողներին տեղյակ չեն պահում, բնակարանային հաշվառման ցուցակները կազմում են անփույթ:

Խմելու ջրի պրոբլեմը քաղաքային սովետի գործկոմին հուզող կարևորագույն հարցերից մեկն է, որի լուծման համար ձեռնարկվում են հնարավոր բոլոր միջոցները: Դեռևս 1975 թ. նոյեմբերին կուսակցության Երևանի քաղկոմի բյուրոն և քաղսովետի գործադիր կոմիտեն որոշում ընդունեցին մայրաքաղաքի ջրամատակարարման վիճակի բարելավման մասին: Այդ ծավալուն որոշմամբ նախատեսված խոշոր միջոցառումների մեծ մասը իրականացվել է, սակայն ջրամատակարարման պրոբլեմի լրիվ լուծումն անհնարին կլինի, եթե մենք մեկընդմիշտ վերջ չտանք ջրի անտեղի կորուստներին ու շռայլումներին: Ստուգումներից պարզվել է, որ արդյունաբերական և տրանսպորտային ձեռնարկություններում, բնակելի շենքերում, ջեռուցման և տաք ջրամատակարարման ցանցերում, վարչական, կոմունալ, առողջապահական, ուսումնական, կուլտուր-կենցաղային և առևտրական օբյեկտներում, մասնավոր տնատիրություններում ջրի կորուստներն ու շռայլումները, ինչպես նաև ջրմուղի արտաքին ցանցում կատարվող արտահոսքերը մեծ չափերի են հասնում, իսկ դրանց դեմ տարվող պայքարը դեռևս թույլ է: Միայն 1976—1978 թթ. գրանցվել է խմելու ջրի ցանցին ապօրինի միանալու 5.900 փաստ: Խմելու ջրով են ոռոգվում բնակիչների ավելի քան 1000 ջերմոցներ, բազմաթիվ տնամերձ այգիներ ու բանջարանոցներ, որի պատճառով լրջորեն խախտվում է բնակչության նորմալ ջրամատակարարումը: Բնականաբար, քաղաքային սովետի գործկոմին հասցեագրված դիմում-գանգատների մեջ հաճախ են արծարծվում խմելու ջրի պակասի վերաբերյալ հարցերը:

Իշխանության տեղական մարմինների գործունեության կարևոր բնագավառներից է ըստ բնակության վայրի աշխատավորության, սովորող երիտասարդության և մանուկների ակտիվ հանգստի կազմակերպումը: Քաղաքային սովետի գործադիր կոմիտեն ամեն տարի այդ նպատակով զգալի միջոցներ է ներդնում: Միայն անցած տարի շրջանային համապատասխան ծառայությունները բարեկարգել, ծառապատել ու ասֆալտապատել են ավելի քան 50 շենքի բակ, ստեղծված խաղահրապարակներն ապահովել մարզական գույքով, մանկական խաղամիջոցներով, հանգստի պարագաներով:

Սակայն այս ասպարեզում դեռևս ամեն ինչ չի արվում, որպեսզի երեխաները, բնակիչները կարողանան իրենց իսկ բակերում ակտիվ հանգիստ անցկացնել: Ահա թե ինչ են գրում Կոմիտասի փողոցի № 63 շենքի պատանի բնակիչները. «Մեր բակում խաղադաշտի, լողավազանի, նստարանների և տաղավարների փոխարեն ավտոտնակներ են տեղադրված: Շատ ենք խնդրում՝ օգնեք մեզ խաղալու տեղ գտնելու հարցում»: Կիլիկիայի 6-րդ շենքի բնակիչներն իրենց նամակում հայտնում են. «Առաջ մեր բակում ազատ տարածություն կար, որտեղ խաղում էին երեխաները: Ներկայումս առաջին և երկրորդ հարկերի բնակիչներից ոմանք այնտեղ բանջարանոցներ են ստեղծել, ցանկապատել և կողպեքներով փակել»: Իսկ Արարատյան թաղամասի առաջին միկրոշրջանի № 17 շենքից 7-րդ դասարանի աշակերտուհի Լուիզա Մուրադյանն իրենց բակի անբարեկարգ վիճակի մասին գրել է «Պիոներսկայա պրավդա» թերթին, որն այդ նամակը ուղարկել է քաղաքային սովետի գործադիր կոմիտե: Աշակերտուհու բարձրացրած հարցը լուծելու հանձնարարություն էր տրվել Շահումյանի շրջանային սովետի գործկոմին: Սակայն, ինչպես ցույց տվեցին ստուգումները, նամակում նշված թերությունները այնպես էլ չէին վերացվել: Միայն



այն բանից հետո, երբ շրջսովետի գործկոմի նախագահ Ա. Կարապետյանն զգուշացվեց, դպրոցականի խնդրանքը կատարվեց:

Կարևոր խնդիրների լուծման գործում դրսևորված անտարբեր վերաբերմունքը, բնականաբար, ստիպում է, որպեսզի քաղաքացիները վերադաս մարմիններին հղեն նոր դիմումներ ու գանգատներ: Ճիշտ է, քաղաքային և շրջանային սովետների գործկոմներում աստիճանաբար նվազում է կրկնակի դիմումների քանակը, սակայն պետք է խոստովանել, որ դրանց թիվը դեռևս զգալի տոկոս է կազմում: Հարկ է նշել նաև, որ առանձին քաղաքացիներ, հաճախ արդեն իսկ գործող օրենքների սահմաններում, պատասխան ստացած հարցի կապակցությամբ նորից ու նորից դիմում են միութենական, հանրապետական և տեղական տարբեր մարմինների, դրանով իսկ խլելով բազմաթիվ աշխատողների ու կազմակերպությունների ժամանակը: Ինչ խոսք, դիմում գրելը քաղաքացու իրավունքն է, սակայն պետք է խոստովանել, որ անհիմն դիմում-գանգատների թիվը նվազեցնելու համար շրջսովետների գործկոմները բացատրական անհրաժեշտ աշխատանք չեն տանում:

Ըստ բնակության վայրի քաղաքացիներին սպասարկելու գործում շատ անելիքներ ունեն բնակարանային շահագործման գրասենյակները: Նրանք կոչված են անմիջական կապ պահպանելու բնակչության հետ, զբաղվելու նրանց հուզող ամենաբազմապիսի հարցերով (շենքերի, բնակարանների նորոգման, բակերում և շքամուտքերում սանիտարական նորմալ վիճակի պահպանման, ջեռուցման, ջրամատակարարման, բնակարանի վարձի գանձման և այլն): Եվ պատահական չէ, որ վերոհիշյալ հարցերով քաղաքացիների դիմում-գանգատները շրջանային սովետների գործկոմներում ստացվող նամակների զգալի մասն են կազմում: Միայն 1978 թ. մուտք է եղել այդպիսի 5.883 դիմում: Ավելի շատ են քաղաքացիների ամենօրյա բանավոր խնդրանքներն ու ահազանգերը:

Քաղաքային և շրջանային սովետների գործկոմները մեծ ուշադրություն են նվիրում ԲՇԳ-ների, նրանց ընթացիկ նորոգման գրասենյակների գործունեության բարելավմանը: Բնակշահագործման գրասենյակների, բնակելի ֆոնդի սպասարկման ոլորտի շատ աշխատողներ բարեխղճորեն են կատարում իրենց պարտականությունները, ժամանակին արձագանքում դիմողների խնդրանքներին ու պահանջներին: Սակայն բազմաթիվ են փաստերը, երբ ԲՇԳ-ի աշխատողների մեղքով մոռացության են տրվում բնակիչներից ստացված ահազանգերը. օրերով չեն մաքրվում շենքերի բակերն ու շքամուտքերը, ժամանակին չեն վերացվում տարբեր անսարքություններն ու վթարները: Այսպես, Նոր Նորքի 6-րդ միկրոշրջանի № 37 շենքի բնակիչ Վ. Հայրապետյանը դեռևս 1979 թ. գարնանից դիմել էր Սովետական շրջանի № 9 բնակշահագործման գրասենյակին (պետ՝ Խ. Քոչարյան)՝ խնդրելով նորոգել շենքի տանիքը և կանխել անձրևաջրերի կաթոցը: ԲՇԳ-ի աշխատակիցները քաղաքացու օրինական պահանջի բավարարման համար ոչ մի միջոց չեն ձեռնարկել: Եվ միայն վերադաս մարմինների միջնորդությունից հետո է շենքի տանիքը նորոգվել:

Քննարկելով Լալայանց փողոցի № 37 շենքի բնակիչների գանգատը՝ քաղսովետի գործկոմը նշված շենքի տանիքի նորոգումը երկար ժամանակ ձգձգելու, քաղաքացիների նամակների նկատմամբ անտարբերություն ու քաշքշուկ դրսևորելու համար Սպանդարյանի շրջանի № 6 բնակշահագործման գրասենյակի պետ Վ. Կարապետյանին ազատեց աշխատանքից:

Մեծ թվով նամակներ են ստացվում քաղաքային հասարակական տրանսպորտի աշխատանքի վերաբերյալ: Քաղաքային սովետի գործադիր կոմիտեն, տրանսպորտի վիճակը բարելավելու հարցերը քննարկելիս, հաշվի է առնում նաև աշխատավորական կոլեկտիվների և քաղաքացիների առաջարկությունները: Գաղտնիք չէ, որ քաղաքային տրանսպորտի աշխատանքի մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում բնակչության աճող պահանջմունքներին: Իրենց նամակներում քաղաքացիները շեշտում են, որ հասարակական տրանսպորտն անբավարար է գործում հատկապես առավոտյան և երեկոյան լարված ժամերին, ինչպես նաև երկրորդ հերթափոխի ավարտման ժամին: Բազմաթիվ են տրանսպորտի երթևեկության չվացուցակների խախտումները, հաճախակի են էլեկտրական տրանսպորտի պարապուրդները: Լուրջ թերություններ կան ուղևորների կուլտուրական սպասարկման գործում: Քաղսովետի գործկոմը շարունակում է նամակներ ստանալ այն մասին, որ առանձին վա-

բողներ անհարգալից են ուղևորների նկատմամբ, երբեմն նույնիսկ հարկ չեն համարում կանգնել կանգառներում։

Քաղաքային սովետի գործկոմի տրանսպորտի վարչությունը, տրանսպորտի ու կապի մշտական հանձնաժողովները, տրանսպորտային կազմակերպությունների ղեկավարները պետք է հետևողականորեն ու անշեղորեն կենսագործեն այն միջոցառումները, որոնց նպատակն է լուծել քաղաքային կյանքի առավել լուրջ պրոբլեմներից մեկը՝ բարելավել բնակչության տրանսպորտային սպասարկումը, ժամանակին ընթացք տալ քաղաքացիների դիմումներում առաջ քաշված հարցերին։

Տարեցտարի մեծանում է ապրանքաշրջանառության ծավալը, ընդլայնվում է պարենային ու արդյունաբերական խանութների ցանցը, կառուցվում են ժամանակակից ընդարձակ առևտրական օբյեկտներ, աշխատավորների առաջարկությունների հիման վրա մի շարք ձեռնարկություններում ու կազմակերպություններում բացվել են կենցաղսպասարկման տաղավարներ, կիսաֆաբրիկատների և այլ ապրանքների խանութներ։ Սակայն առևտրի, հասարակական սննդի, կենցաղային ծառայությունների աշխատանքի վերաբերյալ դիմում-գանգատները դեռևս զգալի թիվ են կազմում, իսկ դա նշանակում է, որ այդ բնագավառներում գործերի վիճակը դեռևս բարվոք չէ։

Քաղաքային և շրջանային սովետների գործկոմները, դրանց բաժինները, վարչությունները և ենթակա կազմակերպությունները կիրառում են դիմում-գանգատներին ընթացք տալու զանազան ձևեր ու մեթոդներ, ձգտում ժամանակին լուծել այնտեղ առաջադրված հարցերը։ Տեղական իշխանության մարմինները ուշադրություն են նվիրում նաև քաղաքացիների բանավոր առաջարկություններին, դիմումներին ու գանգատներին։ Դրանք նույնպես հաշվառվում են և ընթացք ստանում։ Հաճախ բանավոր դիմողի ցանկությամբ նրան տրվում է գրավոր պատասխան։

Սակայն, երբ արածը դիտում ենք կուսակցության այսօրվա պահանջների մեկնակետից, ապա նկատելի են դառնում աշխատավորների նամակների, դիմում-գանգատների առնչությամբ տարվող աշխատանքի ստվերոտ կողմերը։ Կազմակերպություններում ու հիմնարկություններում քաղաքացիների ընդունելության կազմակերպման, աշխատավորների դիմում-գանգատների քննարկման դրվածքը դեռևս լիովին չի համապատասխանում ժամանակի խնդիրներին։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ քաղսովետի գործկոմի առանձին բաժինների ու վարչությունների, շրջանային սովետների գործկոմների ու դրանց ենթակա կազմակերպությունների առանձին ղեկավարներ այս կարևոր գործում դեռևս դրսևորում են անհետևողականություն, բյուրոկրատական վերաբերմունք ու քաշքշուկ։ Դրա հետևանքով շատ քաղաքացիներ ստիպված են լինում «թակել» վերադաս կազմակերպությունների դռները։

Ժամացույցների, էլեկտրաշարժիչների, ավտոնորոգման, պոմպերի և այլ գործարաններում ու հիմնարկություններում չեն կատարվում աշխատավորների առաջարկությունների, դիմում-գանգատների հաշվառում, անտեսվում են ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի 1974 թ. «Գործավարության մասին» հրահանգի պահանջները, ստացված դիմումները երբեմն առանց գրանցման ու ստորագրության հանձնվում են կատարողներին։

Շատ կազմակերպություններում թեև ձևականորեն կան հաշվառման մատյաններ, բայց նամակների գրանցումը խիստ թերի է և հնարավոր չի լինում պարզել, թե դիմումը երբ է մուտք եղել, ինչ ընթացք է ստացել, երբ են պատասխանել դիմողին։ Եվ դա այն պատճառով, որ նամակները հսկողության տակ չեն վերցվում։ Հայգրքի առևտրի վարչությունում, օրինակ, հաշվառման չէր վերցվել 9 դիմում։ Այստեղ բարձիթողի վիճակում էր բնակարանի կարիք ունեցող աշխատակիցների հաշվառումը։ Դիմումների մեծ մասը ընդունվել էր առանց մուտքագրման և սահմանված կարգի խախտումներով։ 26 կոմիսարների անվան շրջանի տրիկոտաժի կոմբինատում աշխատում է շուրջ 1.500 մարդ։ Այստեղ բանվոր-ծառայողների առաջարկությունների, դիմում-գանգատների հաշվառում չի կատարվել, դրանք չեն քննարկվել կոլեկտիվի ժողովներում, արհմիութենական տեղկոմի նիստերում։ Երևանի գեղարվեստական ժամացույցների գործարանի բանվորուհի Սեդա Թարխանյանը 1978 թ. նոյեմբերի 3-ին դիմել է գործարանի ղեկավարությանը՝ իրեն բնակարանային հաշվառման



վերցնելու խնդրանքով, բայց գործարհկոմի նիստում նրան հաշվառման վերցնելու հարցը քննարկվել է միայն 1979 թ. հուլիսի 4-ին, այսինքն՝ ութ ամիս ուշացումով։

Այսպիսով, դժվար չէ եզրակացնել, որ շրջանային սովետների գործկոմները սիստեմատիկ հսկողություն չեն սահմանում իրենց տարածքներում գտնվող հիմնարկ-ձեռնարկություններում աշխատողների դիմում-գանգատների քննարկման նկատմամբ, իսկ հիմնարկությունների ղեկավարները, հասարակական կազմակերպությունները աչքաթող են անում քաղաքական ու սոցիալական մեծ նշանակություն ունեցող այդ աշխատանքը։

Քաղաքային սովետի գործկոմը մեծ թվով առաջարկություններ, դիմումներ, գանգատներ է ստանում, որոնցում արծարծվում են միլիոնանոց քաղաքի տնտեսության գրեթե բոլոր բնագավառներին վերաբերող, ինչպես նաև այլ բնույթի բազմապիսի հարցեր։ Այդ նամակների հաշվառման, ըստ բնագավառների ու բովանդակության առանձնացնելու ու վերլուծելու գործն արդյունավետ կազմակերպելու համար եղած միջոցները բավարար չէին։ Ուստի որոշվեց աշխատավորության առաջարկությունների, դիմում-գանգատների առնչությամբ տարվող աշխատանքում ներգրավել կառավարման ավտոմատացված համակարգերի գիտահետազոտական և նախագծային ինստիտուտը։ Եվ ինստիտուտը 1979 թ. հունվարի 1-ից գրանցում է հսկողության տակ վերցված նամակները, վերլուծում բովանդակությունը, հսկում դրանց կատարման ընթացքը, կատարողներին տեղյակ պահում ժամկետների խախտման մասին և ամեն շաբաթ գործկոմի ղեկավարությանը ինֆորմացիա ներկայացնում գործերի ընթացքի վերաբերյալ։ Շաբաթական երկու անգամ գործկոմի ղեկավարությունը քննարկում է ստացված ինֆորմացիան և համապատասխան հանձնարարականներ տալիս։

Արդարությունը պահանջում է ասել, որ բնակչության կողմից իշխանության տեղական մարմիններին հասցեագրված նամակների քանակը նկատելիորեն կնվազի, եթե քաղաքացիները լավատեղյակ լինեն գործող իրավական նորմերին, ինչպես պաշտոնատար անձանց, այնպես էլ իրենց իրավունքներին ու պարտականություններին։ Այս առումով քաղաքային և շրջանային սովետների գործկոմներում և մի շարք ծառայություններում որոշակի դրական աշխատանք է տարվել։ Բոլոր շրջսովետների գործկոմներին և առանձին բաժիններին ու վարչություններին տրվել են իրավախորհրդատուների հաստիքներ։ Քաղսովետի գործկոմում 1978 թվականից հասարակական կարգով գործում է իրավաբանական կոնսուլտացիա, որի ծառայության մեջ ընդգրկված են ինչպես իրավաբանական բաժնի, այնպես էլ գործկոմի մյուս բաժինների ու վարչությունների իրավախորհրդատուները։

Իրավաբանական կոնսուլտացիայում պատասխաններ են տրվում քաղաքային սովետի և նրա գործադիր կոմիտեի քննարկած բոլոր հարցերի կապակցությամբ։ Իրենց հետաքրքրող հարցերի մասին սպառիչ պատասխան ստացած քաղաքացիները, որպես կանոն, անհիմն դիմումներ չեն գրում և գործադիր կոմիտեի ղեկավարների մոտ ընդունելության ցանկություն չեն հայտնում։

Գործի շահերը պահանջում են, որպեսզի քաղաքային, շրջանային սովետների գործկոմները մշտապես բարձրացնեն ղեկավար կադրերի պատասխանատվությունը, նպաստեն նրանց իրավական գիտելիքների խորացմանը, ավելի մոտիկից զբաղվեն նամակների, դիմում-գանգատների առնչությամբ տարվող աշխատանքի վիճակի, քաղաքացիների ընդունելության կազմակերպման բարելավմամբ։ Պետք է հասնել այն բանին, որ գործադիր կոմիտեներին կամ դրանց ենթակա կազմակերպություններին դիմած յուրաքանչյուր քաղաքացի գոհ մնա տրված պատասխանից, եթե անգամ նրա խնդրանքը կամ պահանջը տվյալ ժամանակամիջոցում ինչ-ինչ պատճառներով հնարավոր չէ լուծել։

Մշտապես հենվել մասսաների վրա, սովորել ժողովրդից և նրան դաստիարակել մեր ողջ աշխատանքի համար կոլեկտիվ պատասխանատվության ոգով. պետական ապարատի ամեն մի ներկայացուցիչ պետք է առաջնորդվի լենինյան այս սկզբունքով։ Մեր աշխատանքը պետք է ուղղված լինի այն նպատակին, որպեսզի Երևանի յուրաքանչյուր բնակիչ մշտապես իրեն զգա իր քաղաքի տերը, ակտիվորեն մասնակցի տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության հարցերի քննարկմանն ու լուծմանը։

---

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ ԵՎ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. Մ. ԿԱԻՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

Մեր բազմազգ սովետական հայրենիքը, սոցիալիզմի երկրները, ամբողջ պրոգրեսիվ մարդկությունը այս տարի մեծ հանդիսավորությամբ նշում են Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձը:

Լենինյան գաղափարները խորապես ներգործում են համաշխարհային զարգացման ողջ ընթացքի վրա: Կոմունիստական շինարարության վիթխարի պլանների կատարումը, հասուն սոցիալիզմի նյութական ու հոգևոր կուլտուրայի ծաղկումը լենինիզմի գաղափարների կենսականության, դրա ինտերնացիոնալ և միջազգային բնույթի լավագույն վկայությունն են:

Մեր ժամանակի բազմապիսի տեսական պրոբլեմների թվում, որոնք վերջին տարիներին ակտիվորեն, ստեղծագործաբար մշակում են ՍՄԿԿ-ն, նրա գաղափարախոսական կադրերը, առաջնակարգ նշանակություն ունեն զարգացած սոցիալիստական հասարակության, սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց նոր պատմական, սոցիալական ու ինտերնացիոնալ հանրության, կուլտուրայի պրոբլեմները: Կուլտուրական հեղափոխության լենինյան ծրագրի հիմնական բովանդակությունն այն է, որ, նախ՝ կուլտուրայի բոլոր հասույթներն ի սպաս դրվեն աշխատավորների շահերին, որ գիտության, տեխնիկայի, արվեստի բոլոր ձեռքբերումները դառնան համաժողովրդական սեփականություն. բարձրացվի ժողովրդական լուսավորության մակարդակը, ստեղծվեն բոլոր պայմանները աշխատավորների ամենալայն զանգվածներին զինելու գիտելիքներով, հաղորդակից դարձնելու քաղաքակրթությանը, բարոյական ու գեղագիտական արժեքներին. տարածվի միակ գիտական՝ կոմունիստական գաղափարախոսությունը ու դրա անսասան սկզբունքների վրա կազմակերպվի ժողովրդի ողջ հոգևոր կյանքը. հաղթահարվեն մանրբուրժուական, մասնավոր սեփականատիրական, ինդիվիդուալիստական, հետադիմական հայացքներն ու բարքերը:

Կոմունիստական շինարարության արդի փուլը ՍՍՀՄ-ում և խոր վերափոխումները սոցիալիստական համագործակցության երկրներում առավել մեծ չափով հաստատում են այն դրույթը, թե առանց հոգևոր կուլտուրայի, մարդկանց գիտակցականության, ներքին հասունության բարձր մակարդակի անհնարին է կոմունիզմը, ինչպես այն անհնարին է նաև առանց արտադրության համապատասխան եղանակի, առանց նյութական կուլտուրայի: Ահա ինչու էական, օրգանապես փոխկապակցված խնդրի կոմպլեքսային լուծումը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, հասարակական հարաբերությունների կատարելագործումը և համակողմանիորեն կրթված ու կուլտուրական անհատի ձևավորումը, որը ներդաշնակորեն զուգակցում է հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունն ու ֆիզիկական կատարելագործումը, անմիջական նշանակություն են ստացել և՛ տեսության, և՛ պրակտիկայի համար:



ՍՄԿԿ-ի հետևողական ու նպատակասլաց տեսական գործունեությունը ամենասերտ կերպով կապված է նոր հասարակարգի կառուցման և, մասնավորապես, նրա կուլտուրայի պրակտիկ խնդիրների լուծման հետ: Մեր լենինյան կուսակցությունը խոր, համակողմանիորեն վերլուծում է սովետական ժողովրդի նյութական և հոգևոր կյանքի պրոցեսները, նորովի ընդհանրացնում սոցիալիստական կուլտուրայի ստեղծման բազմակողմանի պատմական ու պրակտիկ փորձը, բացահայտում դրա ընդհանուր օրինաչափություններն ու առանձնահատկությունները հասուն սոցիալիզմի պայմաններում, ցույց տալիս ապագա զարգացման հստակ հեռանկարները:

Զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը, մարդկանց սոցիալական և ինտերնացիոնալ հանրության որակապես նոր տիպի՝ սովետական ժողովրդի, առաջացումը պայմանավորեցին զարգացման նոր օրինաչափությունների երևան գալը մեր կյանքի բոլոր, այդ թվում և կուլտուրայի բնագավառում: Դրանցից կարևորագույններն են ավելի քան հարյուր սոցիալիստական ազգերի ու ազգությունների կուլտուրաների ծաղկումը, մերձեցումը և փոխհարստացումը: Այժմ բոլոր այդ ազգերը, դրանց թվում և սոցիալիստական հայ ազգը, իրավամբ հպարտանում են իրենց հասույթներով:

Ժողովրդի ծոցից դուրս եկած տաղանդները մեր հայրենիքը ողջ աշխարհով մեկ փառաբանել են գիտության, տեխնիկայի, գեղարվեստական գրականության, կերպարվեստի, երաժշտության, ճարտարապետության, թատրոնի, կինոյի, ժողովրդական ստեղծագործության աչքի ընկնող նվաճումներով: Նյութական և հոգևոր կուլտուրաների պատմական հանդիպումը, նյութական և հոգևոր աշխատանքի հանդիպումը, որի մասին գրել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, կայացավ:

Սոցիալիստական հոգևոր կուլտուրան որակապես նոր երևույթ է համաշխարհային քաղաքակրթության և հասարակական առաջընթացի պատմության մեջ: Այդ կուլտուրան տոգորված է մարքսիզմ-լենինիզմի կուռ գիտական աշխարհայացքով, որն արտահայտում է տարբեր ազգերի, ազգությունների բանվոր դասակարգի ու աշխատավորական մասսաների սոցիալիստական շահերն ու կոմունիստական իդեալները: Այդ կուլտուրան ներթափանցված է սոցիալիստական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, իսկական կոլեկտիվիզմի և ընկերասիրության, հեղափոխական հումանիզմի և պատմական լավատեսության, աշխատավորների՝ բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամության ու եղբայրության վեհ սկզբունքներով, նրանց գաղափարական ու բարոյաքաղաքական միասնությամբ, սովետական, համազգային հպարտությամբ, լենինյան կուսակցականությամբ ու դասակարգայնությամբ, ժողովրդի շահերի նկատմամբ ունեցած հավատարմությամբ և կոմունիստական շինարարության պաթոսով:

ՍՄԿԿ ծրագրում, ՍՍՀՄ սահմանադրության մեջ, կուսակցության համագումարների և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներում ու նյութերում, Լ. Ի. Բրեժնևի և կոմունիստական կուսակցության ու սովետական պետության մյուս գործիչների ելույթներում ցույց են տրված նյութական և հոգևոր կուլտուրայի հասույթներն աշխարհում առաջին սոցիալիստական պետության գոյության տարիներին: Դրանցում առկա է կոմունիստական կուսակցության, նրա գաղափարական կադրերի հետագա տեսական ու պրակտիկ գործունեությամբ հարստացած Լենինի անմահ ուսմունքի կենդանի մարմնացումը:

Վստահորեն դեպի կոմունիզմ ընթացող մեր սոցիալիստական երկրի զարգացման անչափ հարուստ փորձը չափազանց հստակորեն ցույց է տվել, թե հոգևոր կուլտուրայի ոլորտում որքան ակնառու է մեծ Հոկտեմբերի կենարար էությունը:

Անչափ դժվարին ու մեծ մասշտաբի խնդիրներ ծառացան մեր երկրի աշխատավորների առջև՝ անցյալի ծանր ժառանգությունը, զանգվածային անգրագիտությունը վերացնելու, բոլոր ազգերի, ազգությունների ու էթնիկական խմբերի կուլտուրական մակարդակն ամենուրեք բարձրացնելու ժամանակ:

Սովետական իշխանության տարիներին մեր բազմազգ սոցիալիստական հայրենիքի ժողովուրդները, լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, փոխելով երկրի դեմքը, անցել են դարերի հավասար մեծ ուղի:

Այսօր սովետական երկիրը համատարած գրագիտության հասարակու-

թյուն է, որտեղ ժողովրդական տնտեսության մեջ զբաղված աշխատողների երեք քառորդից ավելին ունեն լրիվ կամ թերի բարձրագույն ու միջնակարգ կրթություն: Ուսուցման տարբեր տեսակներում այժմ ընդգրկված է 93 միլիոնից ավելի մարդ: Հիմնականում ավարտվել է անցումը ընդհանուր միջնակարգ կրթության: Մեր բնակչությունը աշխարհում ամենից շատ ընթերցողն է, իսկ աշխարհում հրատարակվող գրքերից յուրաքանչյուր վեցերորդը սովետական է:

Սոցիալիզմը, ինչպես կանխատեսել էր Վ. Ի. Լենինը, անսահման հնարավորություններ է ստեղծել գիտության զարգացման համար, այն ի սպաս է դրված ժողովրդին: ՍՍՀՄ-ում աշխատում են մոտ 1,3 միլիոն գիտական աշխատողներ: Սովետական գիտությունն ամենաառաջավոր բնագծերի է հասել հասարակական զարգացման պրոցեսների ուսումնասիրման, բնագիտության և տեխնիկայի բնագավառներում: Մեր երկիրը լինելով տիեզերագնացության պիոները, այսօր խոշորագույն հաջողություններ ունի այդ ասպարեզում: ՍՍՀՄ սահմանադրությամբ, որտեղ ի մի են բերված սովետական ժողովրդի պատմական հաղթանակները սովետական իշխանության տարիներին, նախատեսվում է կրթության, նյութական ու հոգևոր կուլտուրայի հասույթներից օգտվելու հավասար իրավունքների ապահովում բոլոր քաղաքացիների համար՝ անկախ նրանց ծագումից, ռասայական, ազգային պատկանելությունից, բնակության վայրից և այլն, երաշխավորում են ազատություն և անհրաժեշտ պայմաններ՝ կուլտուրական ստեղծագործության բոլոր ոլորտներում նրանց մասնակցության համար: 27-րդ հոդվածում նշվում է, որ պետությունը հոգում է հոգևոր արժեքները պահպանելու և բազմապատկելու, դրանք սովետական մարդկանց բարոյական ու գեղագիտական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման համար լայնորեն օգտագործելու մասին:

Հասկանալու համար զարգացած սոցիալիզմի կուլտուրայի էությունը, այնտեղ տեղի ունեցող խորքային պրոցեսները, կուլտուրայի ընդհանուր հատկանիշներն ու հիմնական օրենքները, կառուցվածքն ու սոցիալական ֆունկցիան, բովանդակությունն ու ձևերը, առաջացման, զարգացման և կոմունիստական հասարակության համամարդկային կուլտուրայի վերածնման օրինաչափությունները, հարկավոր է հենվել կուլտուրայի՝ որպես սոցիալական ֆենոմենի ընդհանուր պատմամատերիալիստական, մարքս-լենինյան տեսության վրա:

Կուլտուրայի կենտրոնական պրոբլեմը մարդն է՝ նրա ֆիզիկական ու մտավոր աշխատանքի, մարդկային ընդունակությունների ու ձիրքերի, նրա էական ուժերի, նրա գիտակցության (որը, Լենինի պատկերավոր արտահայտությամբ ո՛չ միայն արտացոլում է օբյեկտիվ աշխարհը, այլև կերտում է այն), նրա բարոյական սկզբունքների, գեղագիտական ճաշակի, զգացմունքների, հակումների և այլնի ողջ հարստությամբ ու բազմակողմանիությամբ: Կուլտուրան ավելի ընդգրկուն է, քան բուն հոգևոր կամ գեղարվեստական պահանջմունքները:

Մարքսը և Էնգելսը նկատի առնելով «նյութական» և «հոգևոր» արտադրության, «նյութական և հոգևոր աշխատանքի» օրգանական միասնությունը, նշել են, որ «գաղափարների, պատկերացումների, գիտակցության արտադրությունը նախապես անմիջականորեն ներհյուսված է մարդկանց նյութական գործունեության և նյութական հաղորդակցման, ռեալ կյանքի լեզվի մեջ» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т, 3. стр. 24): Այնուհետև դրան անդրադարձել են Կոմունիստական կուսակցության մանիֆեստում և Կապիտալում: Կ. Մարքսը վերստին վկայակոչում է տվյալ հարցի վերաբերյալ իր և Էնգելսի մատերիալիստական դրույթը և հանգում հետևյալ եզրակացության. «Ինչպես բնության մեջ գլուխն ու ձեռքը միևնույն օրգանիզմին են պատկանում, այնպես էլ աշխատանքի պրոցեսում միանում են մտավոր ու ֆիզիկական աշխատանքը» (Կ. Մարքս, Կապիտալ, հ. 1, Հայպետհրատ, 1954, էջ 531):

Վ. Ի. Լենինը կուլտուրան չէր պատկերացնում հասարակական կեցության և հասարակական գիտակցության փոխադարձ սերտ կապից, միասնությունից դուրս: Այսպես, դեռ 1894 թվականին, քննադատելով կուլտուրայի իդեալիստական մեկնաբանումը, նա նշել է, որ հարկավոր չէ այն բխեցնել կամքից, գիտակցությունից, ոգուց և սուբյեկտիվ մտադրություններից. դրա ելակետը ոչ թե գաղափարն է, այլ մարդկանց կյանքի օբյեկտիվ, նյութական, բնապատմական պայմանները: Մարդու կյանքում օրգանապես զուգակցվում են նյութա-



կան և հոգևոր կողմերը, ըստ որում՝ հոգևորը ածանցված է նյութականից և, վերջին հաշվով, որոշվում է դրանով: Այսպիսով, խախտվեց այն քարացած ավանդույթը, ըստ որի կուլտուրային էր վերապահվում միայն մարդկանց հոգևոր գործունեության բնագավառը:

Ստեղծագործաբար զարգացնելով կուլտուրայի մարքսիստական տեսությունը և նշելով կուլտուրական հեղափոխության կոնկրետ խնդիրները ՍՍՀՄ-ում, Լենինն արտահայտել է մի ամբողջ շարք նորարարական գաղափարներ տնտեսական և քաղաքական կուլտուրայի, արտադրության գիտական կազմակերպման ու կառավարման կուլտուրայի և այլնի վերաբերյալ:

Վ. Ի. Լենինի մասին իր հիշողություններում Կլարա Ցետկինը գրել է. «Լենինը, որ մասսային ըմբռնում էր Մարքսի ոգով, ինքնըստինքյան հասկանալի է, մեծ նշանակություն էր տալիս այդ մասսայի բազմակողմանի կուլտուրական զարգացմանը: Նա այդ բանը համարում էր հեղափոխության մեծագույն նվաճումը և կոմունիզմի իրագործման հուսալի գրավականը: Կարմիր Հոկտեմբերը,— ասաց նա ինձ մի անգամ,— լայն ուղի բացեց մեծագույն մասշտաբի կուլտուրական հեղափոխության համար, որը կենսագործվում է սկսվող տնտեսական հեղափոխության հիմքի վրա, նրա հետ ունեցած մշտական փոխազդեցությամբ» (Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին, Հայպետհրատ, 1958, հ. 2, էջ 619):

Մեր հասարակագետների համար կուլտուրայի և սովետական պետության կուլտուրական քաղաքականության հանգուցային հարցերի բացահայտման ու գիտական վերլուծության օրինակ են լենինյան հայացքները սոցիալիզմի հոգևոր կյանքի մասին:

Վ. Ի. Լենինը կոնկրետ գործնական և գիտական շրջանառության մեջ էր դնում այնպիսի հասկացություններ, ինչպիսիք են «քաղաքական կուլտուրա», «քաղաքական ինքնակրթություն», «քաղաքական արվեստ», «կուլտուր-լուսավորական աշխատանք»: Նա խոսում էր շրջակա միջավայրի պահպանության, ընտանիքի և դաստիարակության դերի մասին, կենցաղի, վարքագծի, սպասարկման, բանավոր ու գրավոր խոսքի, մտածողության, հուզականության և ինտուիցիայի, բարոյական և գեղարվեստագիտական կուլտուրայի, ազգերի ու ազգությունների կուլտուրայի մասին և այլն:

Լենինը կուլտուրայի զարգացման խնդրում առաջադրեց հաջորդայնության, անցյալի կուլտուրական ժառանգության նկատմամբ դիալեկտիկական, այլ ոչ թե մետաֆիզիկական մոտեցման պրոբլեմը: Նա սովորեցնում էր քննադատաբար վերամշակել գիտության ու տեխնիկայի բնագավառի հասույթները, գրականության և արվեստի, ողջ հոգևոր կուլտուրայի մնայուն արժեքները, որ ստեղծել է մարդկությունը հազարամյակների իր պատմության ընթացքում, և այնուհետև զարգացնել դրանք՝ նոր սոցիալիստական ինտերնացիոնալ հիմունքներով: Լենինն այդ փայլուն կերպով ցույց է տվել մարքսիզմի նկատմամբ իր ստեղծագործական վերաբերմունքով:

Խոսելով քաղաքականության՝ որպես հոգևոր կուլտուրայի կարևորագույն միջոցներից մեկի, դերի մասին, Լենինը շեշտում էր, որ քաղաքականությունն առանձնապես վառ կերպով դրսևորվում է արտադրության երկու եղանակների, երկու ֆորմացիաների, երկու՝ կապիտալիստական և սոցիալիստական տնտեսությունների պայքարի ֆոնի վրա (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 574): Նա խոսում էր պրոլետարիատի դիկտատուրայի դարաշրջանի տնտեսական և քաղաքական կուլտուրայի մասին: Լենինյան բնորոշմամբ, սոցիալիստական պետության քաղաքականությունը նյութական կուլտուրայի հետ, պետության տնտեսական, կազմակերպական խնդիրների հետ սերտորեն կապված գիտություն է: Այն անմիջականորեն կապված է նոր հասարակարգի վճռական ուժի՝ սովետական ժողովրդի ակտիվ մասնակցության հետ: Ինչպես Լենինն էր նշում, «պետության շինարարության գործը վարելու» նրա ունակության հետ (Երկեր, հ. 31, էջ 461):

Իրոք, սոցիալիստական և կոմունիստական շինարարության պայմաններում նյութական արտադրության ոլորտի ցանկացած խնդրի, տնտեսական յուրաքանչյուր հարցի լուծումը (նէպը, նոր տնտեսական ռեֆորմը, հացահատիկի արտադրության հետագա ավելացումը երկրում և խամ ու խոպան հողերի յուրացումը, նոր «Կոլտնտեսության օրինակելի կանոնադրությունը»,

«ԲԱՄ»-ի, ԿԱՄԱԶ-ի, Արփա—Սևան ստորգետնյա ջրատարի շինարարությունը, Ռուսաստանյան Ֆեդերացիայի ոչ սևահողային գոտու զարգացման ծրագիրը, «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների հիմնական ուղղությունները», ՏՓԽ-ի երկրների սոցիալիստական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագիրը և մյուս խոշոր, երկարաժամկետ ու հեռանկարային ժողովրդատնտեսական խնդիրները) անխուսափելիորեն քաղաքական, սոցիալ-կուլտուրական նշանակություն է ստանում: Հետևողականորեն վարելով հասուն սոցիալիզմի զարգացման մայրուղին, մեր լենինյան կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը երկրի ամբողջ նյութական և հոգևոր կյանքի կառավարման պրոբլեմները դիտում են որպես քաղաքական պրոբլեմներ:

Նյութական և հոգևոր կուլտուրայի միասնության մարքս-լենինյան վերլուծության և հիմնավորման փայլուն օրինակ են ՍՄԿԿ ծրագիրը, ՍՍՀՄ սահմանադրությունը, կուսակցական ու պետական փաստաթղթերը: Այսպես, սահմանադրության 15-րդ հոդվածում նշված է. «Սոցիալիզմի օրոք հանրային արտադրության բարձրագույն նպատակը մարդկանց նյութական և հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումն է»: Կուսակցության XXV համագումարում շեշտվեց. «Էական կարևորություն ունի այն հարցերի խոր ուսումնասիրությունը, որոնք վերաբերում են մեր հասարակության, նրա արտադրաուժերի զարգացման տենդենցներին: Այդ հարցերից են... մեր բազմազան կուլտուրայի զարգացումը՝ այս պրոբլեմների քննարկումը պահանջում է տարբեր գիտությունների ներկայացուցիչների ջանքերի միավորում» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 108—109):

Կոմունիստական կուսակցության մարքս-լենինյան գաղափարներն անգնահատելի փիլիսոփայական-մեթոդոլոգիական նշանակություն ունեն կուլտուրայի զարգացման հարցերը կոմպլեքս ուսումնասիրելիս: Սովետական գիտնականները, հենվելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների տեսական ժառանգության վրա, խորագնին ուսումնասիրել են կուլտուրայի սոցիալական էությունը, ճշգրտել դրա տեղն ու դերը հասարակական կյանքում: Ինչպես ճշմարտացիորեն նշում է ակադեմիկոս Ա. Գ. Եգորովը, «կուլտուրա» հասկացության մեջ հարկավոր է տեսնել «երկու կողմ՝ նյութականը (արտադրության կուլտուրա, աշխատանքի կուլտուրա, տեխնիկական զարգացման մակարդակ և այլն) ու հոգևորը (գիտելիքների, գիտության և արվեստի զարգացումը, նրանց տարածման աստիճանը հասարակության մեջ և այլն), և որ այդ միասնության մեջ որոշիչ դեր ունի նյութական կողմը» (А. Егоров. Искусство и общественная жизнь, М., «Советский писатель», 1959, стр. 14):

Վ. Ի. Լենինը կուլտուրան անպայմանորեն դիտում էր հասարակական կյանքի մյուս ոլորտների հետ սերտ կապի մեջ, շեշտելով կուլտուրայի դասակարգային ուղղվածությունը, ինչպես նաև հաջորդայնությունը: Անշուշտ, կուլտուրական արժեքներում կան նաև անցյալի ռեակցիոն վերապրուկներ, որոնք դրսևորվում են այնպիսի հասկացություններում, ինչպիսիք են «կուլտուրական հետադիմություն», «իմպերիալիստական կուլտուրա», «կոսմոպոլիտական կուլտուրա», «կղերական կուլտուրա», «անբովանդակ կուլտուրա», «մասսայական կուլտուրա» (որպես ժողովրդի կուլտուրայի հակոտնյա) և այլն:

Բացասական կուլտուրայի առանձին տարրերի վերապրուկները, դժբախտաբար, սոցիալիզմի ժամանակ ևս իրենց զգալ են տալիս զանազան ձևերով. հանրային սեփականության հափշտակություն և կաշառակերություն, ընչաքաղցություն և սպեկուլյացիա, մասնավոր սեփականատիրական բարքեր ու ավանդույթներ և այլն: Այդ ամենի դեմ կոմունիստական կուսակցությունը և սովետական ժողովուրդը անհաշտ պայքար են մղում: ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ հատկապես շեշտվում է նոր մարդու համար, սովետական ապրելակերպի համար մղվող պայքարի նշանակությունը: Կուսակցությունն ուսուցանում է, որ հասուն սոցիալիստական հասարակության զարգացմանը զուգընթաց առավել անհանդուրժելի են դառնում դեռևս հանդիպող շեղումները կուլտուրայի ու բարոյականության սոցիալիստական նորմերից:

Կասկած չկա, որ կուլտուրայի տեսության օբյեկտ են ինչպես հոգևոր, այնպես էլ նյութական արտադրության ոլորտները: Աշխատանքը և գիտելիքը, իրերը և գաղափարները, նյութական և հոգևոր արտադրությունը դիալեկտիկական միասնության, փոխադարձ կապի ու փոխպայմանավորվածության մեջ են, բայց, ցավոք, ինչպես հայտնի է, նման տեսակետը ոչ բոլորն են բաժանում: Մի շարք հեղինակներ, նյութական արտադրությունը կուլտուրայի ոլորտում դիտարկելով հանդերձ, կուլտուրայի յուրահատուկ օբյեկտ են համարում միայն հոգևոր արտադրությունը: Նյութական կուլտուրայի, դրա տնտեսական խնդիրների, կենցաղային կուլտուրայի և այլնի մասին շարունակ մոռանում են և զարգացած սոցիալիզմի կուլտուրայի պրոբլեմները քննարկում գլխավորապես հոգևոր, ավելի շատ՝ գեղարվեստական կուլտուրայի նյութով:

Կուլտուրայի հարցերին նվիրված շատ հետազոտություններում գրեթե բացակայում են այնպիսի պրոբլեմային ուղղությունները, ինչպիսիք են սովետական ժողովրդի՝ որպես մարդկանց սոցիալական և ինտերնացիոնալ նոր պատմական հանրության, նյութական կուլտուրայի ձևավորման ու զարգացման օրինաչափությունները, գիտատեխնիկական հեղափոխությունը և բանվոր դասակարգի դերը տեխնիկական ստեղծագործության զարգացման մեջ, բանվորների գործունեության կուլտուրան արտադրական կոլեկտիվներում, կոլտնտեսային գյուղացիության կուլտուրայի աճը գյուղատնտեսական արտադրության մեջ և այլն:

Հասուն սոցիալիզմի հետագա առաջընթացը պայմանավորված է այնպիսի գործոններով, ինչպիսիք են, մի կողմից, էկոնոմիկայի զարգացումը, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն ու սոցիալիստական բազիսի հետագա կատարելագործումը և, մյուս կողմից, նոր մարդու ձևավորումը: Ընդսմին, հասուն սոցիալիզմի արտադրաեղանակի, դրա նյութական կուլտուրայի զարգացումը դիտվում է ոչ թե որպես սոսկ քանակական աճի պրոցես, այլ՝ արտադրատեխնիկական կուլտուրայի անընդմեջ բարձրացման բազմակողմանի, որակական ու բարդ պրոցես, որն ընդգրկում է մեծ քանակությամբ բաղադրամասեր: Դրանցից գլխավորներն են. աշխատավորների և, հատկապես, ինժեներատեխնիկական կազմի գիտատեխնիկական և գաղափարաքաղաքական պատրաստականության բարձր և անընդհատ աճող մակարդակը, գիտատեխնիկական առաջընթացը, արտադրության տեխնոլոգիայի անընդմեջ կատարելագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացումը՝ խարսխված պլանավորումը կատարելագործելու և էկոնոմիկայի կառավարումը բարելավելու վրա, առավել արդիական տնտեսական կապերի, տնտեսական գործունեության ձևերի ու մեթոդների, երկրի և ամբողջ սոցիալիստական համագործակցության արտադրաուժերի խելացի տեղաբաշխման մշտական որոնումները, աշխատանքի պայմանների բարելավումը, շրջակա միջավայրի, ինչպես նաև պատմական հուշարձանների և նյութական-կուլտուրական այլ արժեքների պահպանությունը և այլն:

Այսպիսով, խոսքը վերաբերում է արտադրատեխնիկական կուլտուրայի բարձրացման լայն ծրագրին, որտեղ ամենասերտ կերպով միահյուսվում են այդ ֆենոմենի նյութական և հոգևոր (այդ թվում և գեղարվեստական) կողմերը:

Հասուն սոցիալիզմի կուլտուրան շատ բարդ, տարողունակ և բազմաֆունկցիոնալ սոցիալական կազմություն է, որի ըմբռնումը պահանջում է գիտական կոմպլեքս մոտեցում. այն դեռևս չի դարձել իրողություն: Մինչդեռ նման ուսումնասիրությունը ժամանակի հրամայական պահանջն է: Կուլտուրայի կոմպլեքսային ուսումնասիրությունը սերտորեն առնչվում է գիտատեխնիկական հեղափոխության մշակութաբանական պրոբլեմատիկայի հետ: Այդ հարաբերակցության շուրջ ներկայումս ծավալվել է գաղափարական սուր պայքար: Հետևաբար, նյութական ու հոգևոր կուլտուրայի փոխգործողության համակողմանի վերլուծությունը հնարավորություն կընձեռի նաև գիտական պատշաճ հիմնավորվածությամբ քննադատելու բուրժուական մշակութաբանների հայացքները:

---

պատմական միտումները, որոնք կապված են պատմության մեջ մասսաների դերի բարձրացման օրենքի հետ։

Ուստի մասսաների գիտակցությունը և դրա կառուցվածքը պետք է դիտել երեք առումով՝ առօրեական գիտակցություն, հասարակական հոգեբանություն և գաղափարախոսական տարրեր։ Դրան կարելի է ավելացնել, որ արդի պայմաններում մասսաների գիտակցության կառուցվածքում առավել մեծ տեղ են գրավում նաև բնական ու տեխնիկական գիտելիքները։

Հաճախ առօրեական գիտակցությունը բնորոշում են որպես ամենօրյա, սովորական, անմիջական, էմպիրիկ, տարերային, անսիստեմ, մակերեսային մի բան և այլն։ Չնայած այդ բնորոշումներից յուրաքանչյուրն ունի իր ուրույն իմաստը, սակայն, նման բնորոշումներն ի վիճակի չեն բացահայտել այնպիսի բարդ և հակասական հոգևոր գոյացության էությունը, որպիսին առօրեական գիտակցությունն է։ Վերցնենք, օրինակ, առօրեական գիտակցության «սովորական» կամ «մակերեսային» բնորոշումները։ Նման բնորոշումներն ինքնին բավական չեն տարբերելու համար առօրեական գիտակցությունը գիտականից, քանի որ վերջինս հետզհետե ավելի լայնորեն է ներթափանցում մարդկանց կյանքն ու կենցաղը, դառնում սովորական։ Առօրեական գիտակցությունը մեկուսացված չէ, հետզհետե դրա մտավոր պոտենցիալը զարգանում է, ուստի և ոչ միշտ է հաջողվում որոշել սովորական և ոչ սովորական գիտակցության տարբերությունը։ Հարկավոր է նաև ճշտել առօրեական գիտակցության մակերեսայնության վերաբերյալ եղած կարծիքը։ Հայտնի է, որ ժողովրդական ստեղծագործության ակունքները սնում են գրականությունն ու արվեստը, սոցիալական գիտությունը հաշվի է առնում մասսաների կենսափորձը։

Նման բնորոշումների մյուս էական թերությունն այն է, որ բացակայում է տրամաբանորեն հիմնավորված փոխադարձ կապը։ Հիրավի, առօրեական գիտակցության սովորական լինելը որոշո՞ւմ է, արդյոք, դրա մակերեսայնությունը, անսիստեմությունը պայմանավորվա՞ծ է, արդյոք, էմպիրիկությամբ կամ մակերեսայնությամբ։ Ամենայն իրավացիությամբ սրանց է վերաբերում ձևական-տրամաբանական բնորոշումների լենինյան քննադատությունը։ Այդ կարգի բնորոշումները վերցնում են միայն այն, ինչ ամենից շուտ է աչքի զարնում, և սահմանափակվում են դրանով։ «Եթե ընդամին վերցվում են երկու կամ ավելի թվով տարբեր սահմանումներ և իրար հետ միացվում են բոլորովին պատահաբար... այն ժամանակ մենք ստանում ենք էկլեկտիկական սահմանում, որը մատնանշում է առարկայի տարբեր կողմերը և այդքան միայն» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 102)։

Մի շարք հեղինակներ առօրեական գիտակցությունը հետազոտում են հետևյալ սխեմայով. Նրանք որպես օրինակ վերցնում են առօրեական գիտակցության որևէ որոշակի, պատմականորեն գոյացած տիպ և նրա նկարագրությունը տարածում առօրեական գիտակցության վրա՝ ամբողջությամբ վերցրած։ Որպես կանոն, նման դեպքերում առօրեական գիտակցություն հասկացության ներքո ենթադրվում են արորով գյուղացու, տնայնագործ արհեստավորի, մանր բուրժուայի, ցածր որակավորում ունեցող բանվորի և այլոց գիտակցությունը։ Թվում է, թե այստեղ է, որ առօրեական գիտակցությունը հանդես է գալիս առավել «զուտ» կերպով։ Իսկ իրականում առօրեական գիտակցությունն այստեղ դրսևորվում է իր առանձնահատուկ, այլ ոչ թե ընդհանուր կերպով. այստեղ մենք հաճախ սահմանափակվում ենք առօրեական գիտակցության լոկ գոյությունը վկայակոչելով, այն դեպքում, երբ խնդիրը դրա էության բացահայտումն է։ Ընդ որում, հետազոտման վեկտորը պետք է ուղղվի ոչ թե ետ, դեպի առօրեական գիտակցության տակավին առկա, բայց իրենց դարն ապրած ձևերը, այլ առաջ, դեպի նրա առավել զարգացած ձևերը, գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանը և գիտական գաղափարախոսության տիրապետումը, միաժամանակ պատմականորեն հետամուտ լինելով դրա կերպարանափոխությանը։ Միայն այս դեպքում հնարավոր է հասկանալ առօրեական գիտակցությունը զարգացման, շարժման ու փոփոխման ընթացքում։

Դիալեկտիկական տեսանկյունով առօրեական գիտակցության ուսումնասիրումը պահանջում է քննել դրա փոխազդեցությունը գիտության՝ որպես ճանաչողության բարձրագույն ձևի հետ։ Ընդ որում, գիտական և առօրեական գիտակցությունները պետք է վերցնել ո՛չ միայն իրենց հակադրության, այլև



նույնության, ո՛չ միայն տարբերության, այլև միասնության մեջ։

Որոշ հեղինակներ առօրեական գիտակցությունը տարբերում են գիտականից, քանի որ վերջինս, ըստ նրանց տեսակետի, սիստեմավորված է։ Մինչ, իրականում առօրեական գիտակցությունը նույնպես ոչ թե պատահական գոյացությունների անձև համակցություն է, այլ ունի որոշակի համակարգ։

Նախ, «ողջախոհության կամ առօրյա գործնական գիտելիք դարձած համակարգի սկզբունքն այն է, որ մարդը դառնա գիտելիքների կիզակետը, «ամեն ինչ մարդու համար» սկզբունքով կամ, այլ կերպ ասած, դրանք դասավորվեն այնպես, որ նպաստեն ամենօրյա կենցաղային, արտադրական ու կուլտուրական խնդիրների լուծմանը» (А. И. Ракитов. Философские проблемы науки. М., 1977, стр. 90)։

Քանի որ գիտության հիմնական ու բարձրագույն նպատակն օբյեկտիվ ճշմարտության իմացումն է, ապա գիտական գիտակցության համակարգում գիտելիքների դասակարգման սկզբունքը գիտելիքների կենտրոնացումն է համապատասխան առարկաների շուրջը։ Այլ կերպ ասած,— գրում է Ա. Ի. Ռակիտովը,— նման համակարգերը կառուցվում են «ամեն ինչ օբյեկտի մասին» սկզբունքով (նույն տեղը, էջ 91)։

Երկրորդ, այդ համակարգերը միմյանցից տարբերվում են իրենց գիտելիքների կարգավորման աստիճանով։ Գիտական գիտելիքները, որպես կանոն, միավորված են տրամաբանական ամուր կապով հանգուցված համակարգերում։ Իսկ առօրեական գիտելիքների համակարգերն ավելի քիչ են կարգավորված, որը և հարուցեց այն կարծիքը, թե դրանք անսիստեմ են։ Այստեղ շատ տարրեր դրսևորվում են միաձուլված, դրանց միջև եղած կապը հաճախ կայուն չէ։

Երրորդ, առօրեական գիտելիքները մշակվում են գործնական խնդիրների լուծման ընթացքում, դրանք նախատեսված են աշխատանքային, սոցիալ-քաղաքական և կենցաղային ոլորտներում անմիջական կիրառման համար։ Իսկ գիտական գիտելիքները, գործնական խնդիրներից բացի, ունեն նաև իրենց բուն նպատակը՝ նոր, ստույգ գիտելիքների, դրանց գնահատման և առաջացման մեթոդների ստեղծումը։

Չորրորդ, առօրեական գիտելիքը, որպես կանոն, գոյանում է տարերայնորեն, աննկատելիորեն, այլ խնդիրների լուծման ընթացքում։ «Գաղափարների, պատկերացումների, գիտակցության արտադրությունը նախապես անմիջականորեն ներհյուսված է մարդկանց նյութական գործունեության և նյութական հարաբերակցության, իրական կյանքի լեզվի հետ։ Պատկերացումների, մտածողության գոյացումը, մարդկանց հոգևոր հաղորդակցումը այստեղ դեռևս նրանց նյութական հարաբերության անմիջական ծնունդն են» (К, Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 24)։

Առօրեական գիտակցությունը, ասես, պատրաստի գիտելիքների մի համակարգ է, որի համար այնքան էլ կարևոր չէ, թե որտեղից և ինչպես է յուրացվում այդ գիտելիքը, ինչպես է այն զարգանում։ Այստեղից էլ՝ առօրեական գիտակցության երկակի բնույթը. որպես գիտելիքների այնպիսի համակարգ, որը կողմնորոշվում է դեպի գործնականը, ձգտում է լինել ստույգ, բայց լինելով գիտելիքների նկատմամբ իսկական քննադատական վերաբերմունքից զուրկ մի համակարգ, հակված է դեպի նախապաշարմունքը և պատրանքները, սնոտիապաշտությունը և սնեկոսները։ Իսկ գիտության համար իմացաբանական և մեթոդաբանական տեսակետները բացառիկ կարևոր դեր ունեն։

Գիտական գիտելիքը գիտական գործունեության արգասիք է։ Պրոլետարական գաղափարախոսությունը գիտական գաղափարախոսություն է, բայց բանվոր դասակարգը չի կարող սոցիալիստական գիտակցություն մշակել ամենօրյա էմպիրիկ փորձի հիման վրա։ Բանվոր դասակարգին սոցիալիստական գիտակցությամբ համակելու, նրա հեղափոխական համոզմունքը ձևավորելու խնդիրը լուծում է մարքս-լենինյան կուսակցությունը։ Եթե առօրեական գիտակցությունն ինքնին, առանց գիտական գիտակցության սատարման, ի վիճակի է գլխավորապես արտացոլել դասակարգերի և սոցիալական խմբերի մերձավոր խնդիրները, ապա գիտական գաղափարախոսությունը բացահայտում և ձևակերպում է դրանց արմատական շահերը, արտացոլում զարգացման հեռանկարը։

տնտեսական և մշակութային կապերի մասին: Տնտեսական պրակտիկայի, հասարակական-քաղաքական կյանքի, աշխատանքային կոլեկտիվների բարոյական մթնոլորտի վրա խոր ներգործություն է ունենում ինչպես ողջ երկրի, այնպես էլ երկու եղբայրական հանրապետությունների քաղաքների, շրջանների, արտադրական ձեռնարկությունների սոցիալիստական մրցումը:

«Եղբայր ժողովուրդների աշխատանքային մրցակցության մեջ,— գրում է հեղինակը,— էլ ավելի են ամրապնդվում նրանց հոգեհարազատությունը, սովետական մարդու համազգային հպարտության հայրենասիրական վեհ զգացումները»:

Այս հետևության յուրատեսակ իլյուստրացիան են հանդիսանում «Բարեկամության կամուրջներ» խորագրի տակ զետեղված նյութերը: Ուկրաինայի գիտնականների ու հայ մետալուրգների գործարար կապերին է նվիրված Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի ավագ ձուլող, սոցիալիստական աշխատանքի հերոս Ա. Տ. Ղազարյանի ելույթը: Հայաստանի մետալուրգիական արդյունաբերության առաջնեկն այժմ իր երկրորդ երիտասարդությունն է ապրում. այստեղ ինտենսիվ աշխատանք է տարվում պղնձի փոշու արտադրությունը կազմակերպելու նպատակով: Խնդրի կարևորությունը բացատրվում է նախ նրանով, որ երկիրը պղնձի փոշու մեծ պահանջարկ ունի և ապա այն բանով, որ պղնձաձուլական արտադրությունը, նույնիսկ մաքրման ամենաարդիական սարքավորումների կիրառման պայմաններում, որոշակի վնաս է հասցնում շրջակա միջավայրին, իսկ դա մեր օրերում պարզապես անթույլատրելի է:

Ձեռնարկության վերակառուցման, նոր տեխնոլոգիայի արմատավորման գործում Ալավերդու մետալուրգներին անգնահատելի օգնություն են ցույց տվել Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի նյութագիտության պրոբլեմների ինստիտուտի մասնագետները: Նրանց հարկ է եղել լուծելու տեսական ու գործնական մի շարք պրոբլեմներ, կարգաբերելու փորձնական-արդյունաբերական մեխանիզմները: Չի կարելի առանց հուզմունքի կարդալ հոդվածի այն տողերը, որտեղ խոսվում է կոմբինատում պղնձի փոշու առաջին կիլոգրամների ստացման մասին: Հեղինակը դա իրավացիորեն համարում է հայ մետալուրգների և ուկրաինացի գիտնականների ընդհանուր հաղթանակը:

Կատարված են միայն առաջին քայլերը: Ընթացիկ հնգամյակի վերջին տարին և հաջորդ հնգամյակի առաջին տարիները Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի կյանքում կնշանավորվեն լուրջ բարեփոխություններով: Անվանի ձուլողը խորին հավատով է նայում իր ձեռնարկության վաղվա օրվան: Այդ վստահությունը նրան ներշնչել է ոչ միայն հարազատ կոլեկտիվը, այլև ուկրաինացի բարեկամները, որոնք այժմ զբաղված են կոմբինատի արդյունաբերական սարքավորման աշխատանքային գծագրերի պատրաստմամբ:

Եղբայրական օգնություն... Մեզ համար սովորական դարձած այս հասկացությունը վիթխարի տարողունակություն ունի և, անշուշտ, մեր սոցիալիստական կենսաձևի ակնառու ձեռքբերումներից մեկն է: Իրագործվելով իբրև պետական քաղաքականություն, այն դարձել է վարքագծի նորմ սովետական քաղաքացու համար և, որպես սովետական ապրելակերպի անկապտելի հատկանիշ, իր դրսևորումն է գտնում մեր հոյակապ կանխագծումներում ու ամենօրյա գործերում: Փոխադարձ, հիրավի եղբայրական օգնությունը իրագործվում է ամենատարբեր մասշտաբներով. պատմական այդ ստեղծարար պրոցեսի մեջ են ներգրավվում բազմաթիվ արտադրական կոլեկտիվներ, ամենատարբեր զբաղմունքի ու մասնագիտության տեր մարդիկ: Եվ դրանց շարքում առաջատարի իրավունք է վերապահված շինարարներին ու մոնտաժողներին:

«Կավկազէներգոմոնտաժ» տրեստի Հոկտեմբերյան տեղամասի աշխղեկ, ուկրաինացի Վ. Բացենկոն իր «Բարեկամության կառույց» հոդվածն սկսում է հետևյալ տողերով.

«Ավանդույթ է դարձել՝ ժողովրդական տնտեսության կարևորագույն օբյեկտները սովետական մարդիկ կառուցում են համատեղ, իսկ այդ բարի ավանդույթի հիմքը... դրել ենք հենց մենք՝ էներգաշինարարներս: Հիշեք թեկուզ Վոլխովի էլեկտրակայանը և Դնեպրոգէսը, որոնք կառուցել է ողջ երկիրը, նայեցեք ներկայիս էներգետիկ կառույցներին, որտեղ տարբեր ազգությունների մարդկանց եղբայրական համագործակցության ու կոլեկտիվիզմի օրենքները իրենց հետագա զարգացումն են ստանում, և դուք, իհարկե, կհամաձայնեք, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմը մեր մասնագիտության օրգանական հատկանիշն է»:

Վ. Բացենկոյի, ինչպես և ուկրաինացի այն 600 շինարարների ու մոնտա-



ժողների համար, որոնք մասնակցել են Հայաստանի ատոմային էլեկտրակայանի կառուցմանը, այս խոսքերը նյութական բովանդակություն ունեն: Եղբայրական բոլոր հանրապետությունների ներկայացուցիչների հետ միասին, նրանք ամենագործուն կերպով մասնակցել են ԱԷԿ-ի գրեթե բոլոր վճռական օբյեկտների սարքավորմանը և իրենց արժանի ավանդը ներդրել այս խոշոր կառույցի գործարկման մեջ:

Հեղինակը շինարարների փառապանծ կոլեկտիվի պրակտիկայից վերցված մի շարք օրինակներով ցույց է տալիս, թե գործնականում ինչպես է դրսևորվում սոցիալիստական ինտերնացիոնալիզմը և ինչպիսի զորեղ լիցքով է այն օժտված:

Քառորդ դար է ահա, ինչ միմյանց հետ մրցում են Հայկական ՍՍՀ Արտաշատի շրջանի և Ուկրաինական ՍՍՀ Խերսոնի մարզի Վիսոկոպոլյեի շրջանի աշխատավորները: Մրցակից բարեկամները այդ ժամանակամիջոցում շատ բան են սովորել միմյանցից և, ինչպես իր հոդվածում գրում է Արտաշատի շրջանի Փարիզի կոմունայի անվան կոլտնտեսության խաղողագործ Օ. Ս. Կիրակոսյանը, սեփական փորձից գիտեն, թե ինչպես է այն նպաստում առաջադրված խնդիրների լուծմանը: Պերճախոս են հետևյալ օրինակները: Վիսոկոպոլցիները լավ արդյունքների են հասել կովերի կաթնատվությունը բարձրացնելու գործում, մինչդեռ Արտաշատում այս առումով վիճակն առանձնապես բարվոք չէր: Իմանալով այդ մասին, ուկրաինացի բարեկամները Արտաշատ ուղարկեցին 400 բարձրակաթ կովեր: Բաշխվելով տնտեսություններին, դրանք դարձան հոտի մայրական կորիզը և նշանակալի չափով բարելավեցին նրա որակական կազմը: Իրենց հերթին, արտաշատցիները ևս օգնեցին վիսոկոպոլցիներին՝ բարձրարժեք սորտերով բարելավելու խաղողի այգիների տնկիների կազմը:

Անշուշտ, սոցիալիստական մրցության ներգործությունը չափվում է ոչ միայն տնտեսական արդյունքներով: Միանգամայն իրավացի է հեղինակը, երբ գրում է, թե պակաս կարևոր չէ և այն, որ այդ համագործակցությունը վաղուց վերաճել է նյութական կապերի սահմանը ու դարձել երկու շրջանների աշխատավորների՝ իրենց ժողովուրդների ներկայացուցիչների հոգևոր եղբայրության հիմքը:

Հանրապետության գիտական մտքի նվաճումների, եղբայրական հանրապետությունների գիտությունների ակադեմիաների հետ ՀՍՍՀ ԳԱ համագործակցության, երկրի ու ժողովրդի կյանքում սովետական գիտնականի ունեցած դերի, գիտության կազմակերպման մի շարք հարցերի մասին է խոսում իր հոդվածում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը:

«Հիմնադրման առաջին իսկ օրերից,— գրում է Վ. Համբարձումյանը,— գիտական հետազոտությունների կազմակերպման և կադրերի պատրաստման ասպարեզում Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիային գործուն աջակցություն են ցույց տվել միութենական մյուս հանրապետությունների ակադեմիաները: Այդ ստեղծագործական կապերն անշեղորեն զարգացել ու ամրապնդվել են՝ հասնելով ավելի բարձր աստիճանի, ձեռք բերելով նոր որակներ: Հայաստանի գիտական հիմնարկությունները համագործակցում են Մոսկվայի և Լենինգրադի, Թբիլիսիի և Բաքվի, Ռիգայի և Տալլինի, Տաշքենդի և Ալմա-Աթայի ակադեմիական ինստիտուտների հետ: Սերտ կապեր ենք մենք հաստատել և Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հետ, որը հայտնի է գիտական գիտելիքների ամենատարբեր բնագավառներում իր նվաճումներով»:

Արդյունավետ համագործակցությամբ աչքի են ընկնում, օրինակ, Ուկրաինայի ու Հայաստանի գիտությունների ակադեմիաների մեխանիկայի ինստիտուտները: Կոորդինացնելով իրենց պլանները, նրանք փոխանակում են գիտական ինֆորմացիա, փոխադարձ կոնսուլտացիաներ են անցկացնում, համատեղ հետազոտություններ իրականացնում: Քսանհինգ տարվա սերտ կապերով են միմյանց հետ կապված Բյուրականի ու Ղրիմի աստղադիտարանները: Բյուրականում են իրենց նախադիպլոմային պրակտիկան ու ստաժավորումն անցնում Կիևի համալսարանի ուսանողները և աշխատակիցները: Հատկանշական է, որ այդ նույն համալսարանի պրոֆեսոր Ս. Կ. Վսեխսվյատսկին առաջին անգամ «Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի տեղեկագրերում» է հրապարակել Յուպիտեր մոլորակի օղակի գոյության վերաբերյալ իր նշանավոր կանխագուշակությունը, որը վերջերս փայլուն կերպով հաստատվեց:

Երկու հանրապետությունների գիտական կապերը, որոնք ամենաբազմա-

ղան բնույթ են կրում, ըստ էության ընդգրկում են գիտական կյանքի բոլոր հիմնական կողմերը և բարերար ազդեցություն են ունենում սովետական գիտության դերի հետագա բարձրացման վրա:

Երկու եղբայրական հանրապետությունների համագործակցության ողջ սիստեմի ամենաէական բաղադրամասերից մեկը նրանց մայրաքաղաքների՝ Կիևի ու Երևանի աշխատավորների սոցիալիստական մրցությունն է, որը հարուստ ավանդույթներ ունի: Պատահական չէ բնավ, որ այս թեման ամսագրի էջերում իր պատշաճ տեղն է գտել:

Պետք է ասել, որ խմբագրությունը թեմայի լուսաբանման բավական ուշագրավ ձև է գտել: Նա զրույցի է հրավիրել Կիևի ու Երևանի քաղկոմների երկրորդ քարտուղարներ Վլադիմիր Գաևոյին և Նելլի Ստեփանյանին: Յուրօրինակ այս երկխոսությունը շատ բանով է ուշագրավ. այստեղ ներկայացված է երկու մայրաքաղաքների մրցության սեղմ տարեգրությունը, համոզիչ օրինակներով ցույց է տրված այդ մրցության արդյունավետությունը թե՛ մեկի և թե մյուսի համար:

Առավել կարևորը թերևս այն գործարար նկատառումներն են, որ զրույցի մասնակիցները հայտնում են երկու քաղաքների համագործակցության հետագա կատարելագործման վերաբերյալ: Խոսքը նախ և առաջ մրցության ստեղծարար ու դաստիարակիչ դերի բարձրացման մասին է. արդյո՞ք մինչև վերջ օգտագործվում են դրա՝ իրոք անսպառ ռեզերվները, արդյո՞ք ուսանելի փորձը միշտ է ընդօրինակվում ու կիրառվում: Անհրաժեշտ է, որ մրցության պրոցեսում ինչպես հարկն է կարևորվի այն ողջ արժեքավորը, որ մրցողներից յուրաքանչյուրը ձեռք է բերում կազմակերպչական ու դաստիարակչական աշխատանքում: Խնդիր է դրվում իրագործել փորձի լայն փոխանակումը կուսակցական, սովետական ու տնտեսական աշխատանքի մենատարբեր մակարդակներում:

Զրույցի մասնակիցները համամիտ են այն հարցում, որ պետք է է՛լ ավելի ընդլայնել երկու քաղաքների կապերի ընդգրկումը, ամրապնդել նրանց բնակիչների համագործակցությունը:

Հայաստանին նվիրված բաժինն ավարտվում է ժուռնալիստ Մ. Միքայելյանի «Միշտ շարքում» հոդվածով, որը նվիրված է Սովետական Միության հերոս, պահեստի գեներալ-լեյտենանտ Սարգիս Մարտիրոսյանին: Ընթերցողներին գեներալի մարտական ուղու մասին պատմելու միտքը հուշել է խմբագրության փոստը: 340-րդ հրաձգային դիվիզիայի վաշտերից մեկի նախկին հրամանատար Վ. Դիխտյարը, դիմելով ամսագրին, խնդրել է հանգամանորեն պատմել դիվիզիայի իրենց մարտական հրամանատարի կյանքի մասին:

«Հիմա էլ ես տեսնում եմ 340-րդ հրաձգային դիվիզիայի մարտիկների պատանի դեմքերը,— գրում է Վ. Դիխտյարը,— հիմա էլ ես լսում եմ մեր խիզախ հրամանատար Սարգիս Սողոմոնի Մարտիրոսյանի երիտասարդ ձայնը: Այդ նրա հրամանատարությամբ մեր դիվիզիան 1943 թվականին անցավ Դոնը, մասնակցեց Օստրոգոժսկ-Ռոսոշանսկի փայլուն օպերացիային, թիզ առ թիզ թշնամուց ետ նվաճեց ուկրաինական հողը:

Այն օրերին, երբ Ուկրաինան տոնում էր գերմանաֆաշիստական զավթիչների լծից ազատագրվելու 35-ամյակը, ես կրկին ու կրկին մտովի դիմում էի այն մարդուն, որը մեզ՝ 340-րդ հրաձգային դիվիզիայի մարտիկներիս համար եղել է ոչ միայն հրամանատար, այլև ընկեր, եղբայր»:

Խմբագրությունը սիրով ընդառաջել է նախկին մարտիկի խնդրանքին:

Հերոսաբար մարտնչելով Ուկրաինայի ազատագրման համար, տասնյակ հազարավոր հայ զինվորներ դրանով իսկ պայքարում էին մայր Հայաստանի, հարազատ ժողովրդի ազատության և երջանկության համար: Այդպիսին է սովետական հայրենասիրության տրամաբանությունը: Ամսագիրը խոսուն թվեր ու փաստեր է հրապարակել մեծ Հայրենականի հաղթական ավարտի գործում հայ ժողովրդի անվեհեր զավակների ներդրած մարտական ավանդի մասին:

ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում հայ ժողովուրդը իրոք վերակերտել, վերստեղծել է իր հինավուրց հայրենիքը: Իր բազմահազար ընթերցողներին ծանոթացնելով այդ ամենին, «Կոմունիստ Ուկրաինի» ամսագիրը դրանով իսկ շնորհակալ գործ է կատարել երկու եղբայրական ժողովուրդների համագործակցության հետագա զարգացման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների պրոպագանդման ասպարեզում:

---



# ԱՐԴԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻ ՄԱԿԱՐԴԱԿԻՆ

**Մ. Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**
Լենինականի տեխստիլ կոմբինատի
կուսկոմիտեի քարտուղար

Մեր ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ հատուկ ուշադրություն է նվիրում աշխատավորության գաղափարաքաղաքական դաստիարակությանը՝ այն դիտելով որպես կոմունիզմի կառուցման կարևոր նախապայման: Դաստիարակության արդի խնդիրների լուծման գործում անգնահատելի դեր է խաղում «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, որը բխում է ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից և, հիրավի, կոմունիզմ կառուցող սովետական մարդու դաստիարակության գործնական ծրագիր է տևական ժամանակի համար:

Համակուսակցական նշանակություն ունեցող այս փաստաթուղթը բազմակողմանիորեն քննարկվեց նաև մեր կոմբինատի կուսկազմակերպությունում և նրա սկզբնական օղակներում, աշխատավորական բոլոր կոլեկտիվներում: Մենք մշակեցինք գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման գործնական միջոցառումներ և ձեռնամուխ ենք եղել դրանց իրականացմանը: Մեր ծավալած գործունեությանը մեծապես խթանեց ՍՄԿԿ Կենտկոմի այդ կարևորագույն որոշման կատարմանը նվիրված համամիութենական խորհրդակցությունը, որը տեղի ունեցավ 1979 թ. հոկտեմբերին, Մոսկվայում: Դրան մասնակցելու բախտ էր վիճակվել նաև ինձ:

Գիտականորեն հիմնավորված, խոր ու բովանդակալից զեկուցման մեջ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Մ. Ա. Սուսլովը ամփոփեց որոշման ընդունումից հետո Կենտկոմի, կուսակցական կազմակերպությունների ծավալած գործունեությունը, նշեց այն խնդիրները, որոնց լուծմանը պետք է ուղղվի գաղափարական ճակատի աշխատողների, բոլոր կուսկազմակերպությունների ջանքերը:

Մեր կոմբինատի կուսկոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները զգալի գործ են կատարել գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման, այդ առթիվ ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների, հետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործման ասպարեզում: Վերջին տարիներին նկատելիորեն բարելավվել է կոլեկտիվի առջև ծառացած տնտեսական խնդիրների լուծման գաղափարական ապահովումը: Արմատավորվում է կոմպլեքսային մոտեցումը քաղաքական դաստիարակությանը:

Կոմպլեքսային մոտեցումն արտացոլվում է գաղափարական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության միասնությունն ապահովելու համար մշակված ընթացիկ ու հեռանկարային պլաններում և դրանց կենսագործման մեջ: Այդ պլանները կազմելիս ելակետ ենք ունեցել տասներորդ հնգամյակում ձեռնարկության կոլեկտիվի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային

ծրագիրը: Նման մոտեցումը հնարավորություն է ընձեռում կուսկազմակերպության գործունեությունն ավելի արդյունավետ ձևով ի սպաս դնել արտադրական ու տնտեսական այն խնդիրների լուծմանը, որոնք ծառացել են կոլեկտիվի առջև:

Աշխատավորների մարքս-լենինյան աշխարհայացքի ձևավորման, նրանց կոմունիստական գաղափարների ոգով դաստիարակելու, կուսակցության ներքին և արտաքին քաղաքականությանը իրազեկ պահելու, հասարակական-քաղաքական և աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու հիմնական միջոցներից մեկը քաղաքական և տնտեսագիտական ուսուցումն է: Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո կուսկոմիտեն համակողմանիորեն ուսումնասիրեց քաղաքական լուսավորության և տնտեսագիտական ուսուցման ցանցի գործունեությունը, վերանայեց պրոպագանդիստական կադրերի կազմը, ավելացրեց տնտեսագիտական խմբակների և կոմունիստական աշխատանքի դպրոցների քանակը: Իրենց գործունեությունն զգալիորեն ակտիվացրին նաև մեթոդխորհուրդը, քաղլուսկաբինետը, պրոպագանդիստները: Կուսկոմիտեին առընթեր ստեղծվեց ագիտատորների, քաղինֆորմատորների, պրոպագանդիստների և զեկուցողների մշտական գործող դպրոց, որն ամեն ամիս կանոնավոր գումարում է իր պարապմունքները, մեթոդական և գործնական օգնություն ցույց տալիս ունկնդիրներին:

Ներկայումս կոմբինատում գործում են տարրական տիպի 9-ը, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների 10 դպրոց, տեսական մեկ սեմինար, տնտեսագիտական 57 խումբ և կոմունիստական աշխատանքի 32 դպրոց: Քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության ցանցում ընդգրկված են շուրջ 2.900 ունկնդիրներ, ուսուցումից դուրս չի մնացել և ոչ մի կոմունիստ: Ուսումնական տարվա առաջին ամիսների արդյունքների քննարկումը ցույց տվեց, որ այն լավ է նախապատրաստվել և ռեալ հիմքեր կան հետագա արդյունավետ աշխատանքի համար:

Հանրահայտ ճշմարտություն է, որ քաղաքական ուսուցման կենտրոնական դեմքը պրոպագանդիստն է: Մենք խիստ կարևորում ենք պրոպագանդիստական կադրերի ընտրությունն ու նրանց հետ տարվող աշխատանքը և նկատելիորեն բարելավել ենք նրանց որակական կազմը: Պրոպագանդիստների մեծ մասն ունի բարձրագույն, մյուսները՝ միջնակարգ-մասնագիտական կրթություն: Վաստակաշատ, երկար տարիների փորձ ու հմտություն ունեցող պրոպագանդիստների կողքին այսօր մեր կոմբինատում աճում են նորերը: Պրոպագանդիստների ընտրության ժամանակ կուսկոմիտեն ձգտել է գաղափարախոսական, քաղաքական աշխատանքի հիմնական ծանրությունը դնել արտադրության հրամանատարների և ինժեներատեխնիկական անձնակազմի վրա, որոնք ի վիճակի են ուսումնասիրվող նյութը առնչել տվյալ կոլեկտիվի խնդիրների հետ, կոնկրետ օրինակներով սպառիչ պատասխան տալ ունկնդիրներին հուզող հարցերին: Իրենց ակտիվ պրոպագանդիստական գործունեությամբ ունկնդիրների համակրանքն են վայելում Արտաշես Աղուզումցյանը, Մարտին Փուրթոյանը (մանվածքային ֆաբրիկա), Մնացական Բալոյանը, Վերա Կովալենկոն, Արա Շիրոյանը (գործվածքային ֆաբրիկա), Հենրիկ Նալբանդյանը Պետրոս Ավագյանը (ներկման-վերջնամշակման ֆաբրիկա), Մարգրետ Մհերյանը (գլխավոր մեխանիկի բաժին), Շիրակ Գրիգորյանը (կոմբինատի վարչություն) և ուրիշներ:

Բամբակագործական միավորման պլանային-արտադրական բաժնի վարիչ Շիրակ Գրիգորյանը, օրինակ, մոտ վեց տարի է, ինչ ղեկավարում է մարքսիզմ-լենինիզմի հիմունքների միջին օղակի քաղդպրոցներից մեկը: Նա խնամքով է նախապատրաստում յուրաքանչյուր պարապմունքի, մշտապես օգտվում մեթոդական գրականությունից, թերթերից ու հանդեսներից, թեման կապում է կոլեկտիվի կոնկրետ խնդիրների հետ, այն հարստացնում ու լրացնում անհրաժեշտ թվերով, փաստերով ու տեղեկություններով և մատուցում գրավիչ ու հետաքրքրական ձևով: Պարապմունքների ընթացքում Շ. Գրիգորյանը հնարավորին չափ օգտագործում է ցուցադրական նյութեր ու դիտողական պարագաներ:

Քաղդպրոցի աշխատանքում նա մեծ ուշադրություն է հատկացնում ուն-



կնդիրների ինքնուրույն մտածողության զարգացմանը. յուրաքանչյուր պարապմունքում հնարավորություն է ստեղծում, որ նրանք ինքնուրույն կերպով ընդհանրացնեն ու մեկնաբանեն անցած թեման: Շ. Գրիգորյանը պարապմունքից հետո էլ օգնում է քաղդպրոցի ունկնդիրներին՝ կազմելու անհատական ստեղծագործական պլաններ, մշակելու ռեֆերատներ ու համապատասխան տեղեկանքներ: Շատ թեմաների ուսումնասիրություն կազմակերպում է բանավեճերի, հարց ու պատասխանների միջոցով, որի համար ինքը վաղօրոք լրջությամբ նախապատրաստվում է:

Դասավանդվող թեման կապելով յուրաքանչյուրի կոնկրետ անելիքների հետ՝ Շ. Գրիգորյանը կարողանում է արդյունավետ ու գործնական դարձնել քաղդպրոցի աշխատանքը: Պարապմունքներից մեկի ժամանակ, ուսումնասիրելով պլանավորումը բարելավելու և տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը, Շ. Գրիգորյանը հանձնարարեց իր ղեկավարած դպրոցի ունկնդիրներին,— որոնք միավորման բաժինների վարիչներ ու ծառայությունների պետեր են, տնտեսական այլ ղեկավարներ,— մեկամսյա ժամկետում մշակել յուրաքանչյուրի անելիքները այդ որոշումը կենսագործելու համար: Առաջադրված ծրագրի մշակումն օգնեց ունկնդիրներին ո՛չ միայն ավելի խորությամբ և բազմակողմանիորեն ուսումնասիրելու այս կարևորագույն որոշումը, այլև նպաստեց պլանավորման նոր համակարգի անցնելու համար որոշ ռեալ նախադրյալների ստեղծմանը:

Պարապմունքներին նախապատրաստվել խնամքով, պատրաստ լինել համոզիչ պատասխան տալու առաջադրված հարցերին, անցնելիք թեման ամբողջությամբ հասցնել ունկնդիրներին, այն կապել յուրաքանչյուրի կոնկրետ անելիքների հետ և օգնել նրանց կատարելու տվյալ թեմայից բխող խնդիրները— ահա այն ուղեցույցը, որով առաջնորդվում է Շ. Գրիգորյանն իր պրոպագանդիստական գործունեության ընթացքում:

Ագիտացիոն-մասսայական աշխատանքը կուսակցության կենդանի խոսքը աշխատավորներին հասցնելու վճռական միջոց է, այն մեծ դեր է խաղում նաև տնտեսական խնդիրների լուծման գործում: Ղեկավարվելով «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման գործում քաղաքական բանավոր ագիտացիայի դերի բարձրացման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջներով, վերջին ժամանակներս կուսկոմիտեն և սկզբնական կուսկազմակերպությունները ավելի լայնորեն և արդյունավետ են օգտագործում քաղաքական ագիտացիայի հնարավորությունները:

Կոլեկտիվի գաղափարաքաղաքական մակարդակի և աշխատանքային ակտիվության բարձրացման վրա բարերար ազդեցություն է գործում դասախոսական պրոպագանդան: Մենք մշտապես ջանում ենք բարձրացնել դրա արդյունավետությունը: Կոմբինատի ստորաբաժանումների կոլեկտիվների համար պարբերաբար դասախոսություններ են կարդացվում կուսակցության և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության, արտադրության, գիտության և կուլտուրայի տարբեր հարցերի շուրջ: Այժմ մեծ տեղ ենք հատկացնում Վ. Ի. Լենինի ծննդյան 110-ամյակին և Սովետական Հայաստանի 60-ամյակին նվիրված դասախոսությունների ու զեկուցումների, լենինյան ընթերցումների կազմակերպմանը, գիտագործնական և տեսական կոնֆերանսների, հոբելյանական բնույթի միջոցառումների անցկացմանը: Վերջերս կոմբինատում անցկացված գիտագործնական կոնֆերանսը մեր գաղափարական ակտիվին զինեց դաստիարակչական աշխատանքի կազմակերպման նոր ձևերով ու մեթոդներով: Նրանց տրվեցին կուսկոմիտեի մշակած հատուկ հանձնարարականները՝ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման դրույթները կոլեկտիվի բոլոր անդամներին հասցնելու համար:

Բազմազան միջոցառումներ են անցկացվում նաև «Գիտելիք» ընկերության տեղական բաժանմունքի ուժերով: Եվ պատահական չէ, որ սկզբնական կազմակերպության փորձն արժանացավ «Գիտելիք» համամիութենական ընկերության հավանությանը ու հանձնարարվեց ներդնել այն երկրի կազմակերպություններում ևս:

Այժմ կոմբինատում քաղաքական-դաստիարակչական ակտիվ գործունեու-

թյուն է ծավալում մի ստվար ջոկատ։ Կուսակցության խոսքը ժողովրդին են հասցնում 27 քաղինֆորմատորներ, 130 ագիտատորներ և 45 դասախոսներ։

Կոմբինատում լավ են ճանաչում վերջնամշակման ֆաբրիկայի ագիտատորներ Պարգև Գողանյանին, Նյուրա Ղազելյանին, Կարլեն Հովհաննիսյանին։ Բանվորների հետ անցկացվող զրույցների համար նրանք ընտրում են այնպիսի թեմաներ, որոնք արդիական են, կոնկրետ, արձագանքում են օրվա պահանջներին։ Թեմաների մատուցման համար ձգտում են գտնել առավել համոզեցուցիչ ձևեր ու եղանակներ, խոսել պարզ ու հասկանալի լեզվով, աշխատում են խուսափել վերացական խոսքից։ Այս ամենն օգնում է մարդկանց՝ աշխատել բարեխղճորեն, նվիրվել գործին, նպաստում է խոսքի ազդեցության ուժեղացմանը։

Նկատի ունենալով կոլեկտիվին հուզող հարցերից մեկը, ֆաբրիկայի կուսբյուրոյի հանձնարարությամբ ագիտատորներն իրենց զրույցի թեմա դարձրին խնայողության ռեժիմի ուժեղացումը, մասնավորապես ուշադրություն նվիրելով արտադրական մնացուկների կրճատման վրա։ Ագիտացիոն աշխատանքները ծավալելով հենց այն տեղամասերում, որտեղ գոյանում են մնացուկները, բացահայտելով այդ կորուստները ծնող պատճառները, նրանք կարողացան մեծ օգնություն ցույց տալ բանվորներին՝ մնացուկները նվազագույնի հասցնելու գործում։ Արդյունքը եղավ այն, որ 1979 թ., նախորդ տարվա համեմատությամբ, մնացուկները կրճատվեցին 46,8 հազար մետրով։

Գաղափարաքաղաքական աշխատանքի բարելավման գործին զգալի օգնություն են ցույց տալիս «Տեքստիլագործ» բազմատպաքանակ թերթը և ձեռնարկության ստորին մամուլը։ «Տեքստիլագործ» թերթի խմբագրությունը, հաշվի առնելով օրվա հրատապ պահանջները, թերթի էջերում պարբերաբար անդրադառնում է ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, արտադրական և գաղափարախոսական աշխատանքի հարցերին, բացահայտում տեղ գտած թերացումներն ու թերությունները, օգնում վերացնելու այն ամենը, ինչը խանգարում է կոլեկտիվի առաջընթացին։ Թերթում բացվել են մի շարք նոր խորագրեր ու բաժիններ։ Լայն տեղ է տրվում թղթակցական ակտիվի հետ տարվող աշխատանքին։ 1979 թվականին մեր թերթն արժանացավ Մ. Ի. Ուլյանովայի անվան համամիութենական մրցանակի դափնեկրի կոչման։ Դա նրա ստեղծագործական կոլեկտիվի գործադրած ջանքերի արժանի գնահատականն է։

Աշխատավորության գեղագիտական դաստիարակության գործում ներդրած ավանդի համար բարձր գնահատականի է արժանացել նաև գրքասերների մեր սկզբնական կազմակերպությունը, որը պարգևատրվել է համամիութենական ընկերության դիպլոմով։ Համամիութենական մրցությունում հաղթող են ճանաչվել և դիպլոմների արժանացել կոմբինատի մսուր-մանկապարտեզները, բանվորական հանրակացարանները՝ մատաղ սերնդի և երիտասարդության կոմունիստական դաստիարակության ասպարեզում կատարած բեղմնավոր աշխատանքի համար։

Մեր կոմբինատում աշխատում են 21 ազգությունների ներկայացուցիչներ։ Այս հանգամանքը մշտապես գտնվում է կուսկազմակերպության գործունեության տեսադաշտում։ Կուսկոմիտեն և արտադրամասային կուսբյուրոները հետևողականորեն զարգացնում և կատարելագործում են աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործը։ Այն կազմակերպում ենք քաղաքական-մասսայական ամենօրյա աշխատանքի, դասախոսական պրոպագանդայի, ինտերնացիոնալ բարեկամության և մյուս ակումբների, գաղափարական ներգործության ողջ զինանոցի միջոցով։ Դրան նպաստում է նաև սոցմրցության ընթացքում բարեկամական սերտ կապերի հաստատումը երկրի այլ ձեռնարկությունների կոլեկտիվների հետ։ Ավանդույթ է դարձել մեր կոմբինատի մրցությունը Քութայիսի մետաքսի, Կիրովաբադի տեքստիլ, Պյարնուի վուշագործական կոմբինատների, Վիչուգայի մանվածքային ֆաբրիկայի և Կլիմովի մեքենաշինական գործարանի հետ։ Այստեղ կարևորն այն է, որ մենք ո՛չ միայն մրցում ենք արտադրական բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար, այլև տնտեսական և տեխնիկական օգնություն ենք ցույց տալիս միմյանց, կատարում փորձի փոխանակում, ընդօրինակում ուսանելին ու լավը։



Կոլեկտիվի անդամների կոմունիստական դաստիարակության ընդհանուր համակարգում վճռական դեր է հատկացվում աշխատանքային դաստիարակությանը։ Դա բխում է դաստիարակության նկատմամբ կոմպլեքսային մոտեցման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից։ Աշխատանքային դաստիարակության վճռական միջոց է սոցիալիստական մրցությունը։ Մրցության ընթացքում տեքստիլագործների կոլեկտիվում ծնվում են հայրենանվեր նոր նախաձեռնություններ ու առաջարկություններ, որոնց արմատավորումն ու կիրառումը խթանում են արտադրության վերելքին։ Հատկապես ուսանելի է «Աշխատանքի արտադրողականության բարձրացման և գերազանց որակի արտադրանքի ավելացման մրցություն-համագործակցություն» շարժումը, որի նպատակը պետական առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարումն է։ Այն օգնում է նաև երիտասարդության և հատկապես արտադրության նորեկների ու ետ մնացողների դաստիարակության գործի բարելավմանը։ Ներկայումս այս շարժման մեջ ընդգրկված են ավելի քան 3.100 տեքստիլագործներ, 360 վարպետ-դաստիարակներ, որոնց ուժերով միայն այս տարի լրացուցիչ թողարկվել է 116 տոննա մանվածք, կես միլիոն մետր գործվածքեղեն, 480 մասնակիցներ 8—12 տոկոսով բարձրացրել են աշխատանքի արտադրողականությունը։

Կոլեկտիվում ծնունդ առած նախաձեռնությունների շարքում հատուկ նշանակություն ունի ՍՄԿԿ անդամ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր, անվանի ջուլհակուհի Կլարա Սարգսյանի՝ «Ընդլայնել սպասարկման գոտին, ապահովել մեքենասարքավորումների բարձր արտադրողականությունը» հայրենասիրական շարժումը, որի հետևորդների թիվն անցնում է 260-ից։

Սոցմրցության ճիշտ կազմակերպման ու արդյունավետ ծավալման, տեքստիլագործների աշխատանքային դաստիարակության գործի բարելավման արդյունք է այն, որ կոլեկտիվը հաջողությամբ կատարեց անցած տարվա պետական առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները։ 1979 թվականին պլանից ավելի իրացվել է 1 միլիոն 119 հազար ռուբլու արտադրանք։ Նախորդ տարվա համեմատությամբ ավելի է թողարկվել 310 տոննա բարձրորակ մանվածք, 1 միլիոն 284 հազար մետր պատրաստի գործվածքեղեն։ Կայուն նախադրյալներ են ստեղծվել հնգամյակն ամբողջությամբ վերցրած հաջողությամբ ավարտելու համար։ Արդեն 156 բանվորներ կատարել են հնգամյա պլանը։ Այդ առաջավորների շարքերում են Միհրան և Լյովա Ստեփանյանների, Դմիտրի Կարապետյանի, Սամվել Ջիվանյանի, Ռազմիկ Աբրահամյանի, Գառնիկ Թորոսյանի ղեկավարած բրիգադները։ Իսկ մանածագործուհի Վիկտորյա Բավեյանը, հնգամյա պլանով նախատեսված 602 տոննայի փոխարեն, արդեն արտադրել է մոտ 1000 տոննա մանվածք։ Հատկանշական է, որ այդ բոլոր ընկերները ագիտատորներ ու քաղինֆորմատորներ են, որոնց հասարակական-քաղաքական գործունեությունը նպաստում է պետական առաջադրանքների կատարմանն ու գերակատարմանը։

ՍՄԿԿ XXV համագումարը թողարկվող արտադրանքի որակի բարելավումը համարեց խնայողության և արտադրության արդյունավետության բարձրացման կարևոր գործոն։ Եվ օրինաչափ է, որ մենք դաստիարակչական-բացատրական աշխատանքում լուրջ տեղ ենք հատկացնում արտադրանքի որակի բարելավման հարցերին։ Այդ խնդիրը գտնվում է ագիտատորների ու քաղինֆորմատորների, զեկուցողների ու գաղափարախոսական բնագավառի մյուս աշխատողների ուշադրության կենտրոնում։ Այդ ասպարեզում մեր գործադրած ջանքերը լավ պտուղներ են տվել. թողարկվող արտադրանքի ողջ ծավալի 46,3 տոկոսն այժմ կրում է պետական որականիշ։ Դա ինքնին մեր արդյունավետ գործունեության ռեալ գնահատականն է։

Տնտեսական հարցերի լուծման գաղափարական ապահովումը մեր կարևորագույն խնդիրն է։ Ինչպես նշել է Լ. Ի. Բրեժնևը՝ մեզ համար կարևոր են աշխատանքային մրցակցության թե՛ կոնկրետ տնտեսական արդյունքները, թե՛ դրանում թաքնված դաստիարակչական մեծ հնարավորությունները։

Գործերի վիճակի վերլուծությունը ցույց է տալիս, որ կոմբինատի կոլեկ-

տիվում քիչ բան չի արված կոմունիզմի գաղափարապես կոփված ակտիվ կառուցողներ դաստիարակելու համար: Սակայն այս գործում դեռևս կան նաև զգալի թերություններ ու թերացումներ, չլուծված խնդիրներ: Առայժմ կատարված են միայն առաջին քայլերը «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման ճանապարհին: Ձեռք բերվածը գնահատելով այդ որոշման և ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան (1979 թ.) պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի պահանջների տեսանկյունից, չենք կարող չասել, որ մենք դեռևս շատ անելիքներ ունենք մարդկանց դաստիարակության գործը բարելավելու ասպարեզում: Չի կարելի հաշտվել այն բանի հետ, որ առանձին օղակներում դեռևս ցածր է արտադրական կարգապահությունը, իսկ դա հետևանք է անհատական դաստիարակչական աշխատանքի անբավարար կազմակերպման: Նկատվում են հոսունության ու գործալքության դեպքեր, առանձին արտադրամասերում ու ձեռնարկություններում այն կազմում է 10—12 տոկոս: Հետևաբար, բանվորական կադրերի ամրապնդման գործը պետք է դառնա մեր կարևոր խնդիրներից մեկը: Մենք դեռևս բավարար աշխատանք չենք տանում նաև սովորողների մասնագիտական կողմնորոշման ասպարեզում: Թերևս դրա հետևանքն է, որ քիչ թվով շրջանավարտներ են ցանկություն հայտնում աշխատելու մեր ֆաբրիկաներում: Առայժմ մեզ չի կարող գոհացնել նաև ըստ բնակության վայրի, հատկապես մեր կոմբինատը ներառող միկրոշրջանում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի մակարդակը:

Կուսկոմիտեն և արտադրամասային կազմակերպությունների բյուրոները միջոցառումներ են մշակել նշված և մյուս թերությունները վերացնելու, գաղափարադաստիարակչական աշխատանքը բարելավելու համար: Դաստիարակչական ողջ գործի ուժեղացումով մենք կապահովենք տասներորդ հնգամյակի պետական առաջադրանքների և սոցիալիստական պարտավորությունների կատարումը տեխնիկատնտեսական բոլոր ցուցանիշներով, ռեալ պայմաններ կստեղծենք պլանավորման նոր սիստեմի լայն կիրառման, տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու համար:

Կուսկոմիտեն և կուսբյուրոները, կոմբինատի ու նրա ստորաբաժանումների ղեկավարությունը տնտեսական, կազմակերպչական ու գաղափարական աշխատանքը, քաղաքական-դաստիարակչական ներգործության միջոցների ողջ զինանոցը ուղղում են կոլեկտիվի անդամների քաղաքական ու աշխատանքային ակտիվության հետագա աճին: Մենք ջանում ենք, որպեսզի յուրաքանչյուր տեքստիլագործ կոնկրետ գործերով ու աշխատանքային նվաճումներով նշանավորի մեծ Լենինի ծննդյան 110-ամյակը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման և Հայաստանի կոմկուսի կազմավորման 60-րդ տարեդարձը: Այդ տարելիցների առթիվ գործարար մրցություն է ծավալվել արտադրության բոլոր օղակներում:

Աշխատավորության կոմունիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքը հասցնել արդի պահանջների մակարդակին — ահա մեր այսօրվա նշանաբանը տեքստիլագործների շրջանում տարվող գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բնագավառում:

---

# ԿՈՄՈՒՆԻՍՏԻՆ ՀԱՆՁՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ Է ՏՐՎԱԾ

**Հ. Հ. ՔԱՌՅԱՆ**
Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի
կուսկոմիտեի քարտուղար

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՈՒՄ կարևոր տեղ ունի կոմունիստներին տրվող հանձնարարությունը: Դրա միջոցով ապահովվում է յուրաքանչյուր կոմունիստի ակտիվ մասնակցությունը կազմակերպության ու կոլեկտիվի գործերին: Այստեղ է, որ ստուգվում են ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների գործնական հատկանիշներն ու նախասիրությունները, որոշվում նրանց պատասխանատվության աստիճանը, այս կամ այն բնագավառում դրսևորած կարողությունները: Այս իմաստով հանձնարարությունը դառնում է կոմունիստի դաստիարակության ու ճանաչման լավագույն միջոց:

Կուսկազմակերպության գործունեության հաջողությունը մեծապես պայմանավորված է այն բանով, թե որքանով են ճիշտ օգտագործվում կոմունիստների ուժերը՝ մշտական ու ժամանակավոր հանձնարարություններ տալիս, թե նրանք ինչ չափով են ընդգրկվում այդ աշխատանքում:

Հանձնարարությունների նշանակությունը մեծանում է նրանով, որ դրանք նպաստում են կոմունիստների պատասխանատվության բարձրացմանը, գաղափարաքաղաքական աճին, կուսակցական ակտիվի ընդլայնմանը, կազմակերպության ղեկավար մարմիններում ու տնտեսական ոլորտներում կադրերի ռեզերվի ստեղծմանը: Նշանակում է՝ հանձնարարությունը չպետք է լինի ինքնանպատակ, այն պետք է բխի կազմակերպության ընթացիկ ու հեռանկարային խնդիրներից, ընդգրկի կուսակցական աշխատանքի բոլոր բնագավառները, ելնի ամեն մի կոմունիստի նախասիրությունից, հնարավորություններից ու կարողությունից:

Կուսկազմակերպությունների պրակտիկ գործունեության բարելավման առումով կարևոր են նաև տրված հանձնարարությունների կատարման սիստեմատիկ ստուգումը, պահանջկոտությունն ու հետևողականությունը այդ գործում: Այլապես ամեն մի հանձնարարություն, անկախ կատարողի պատասխանատվության աստիճանից, կարող է ձևական բնույթ կրել և չծառայել իր նպատակին:

Այս ամենի հաշվառմամբ են իրենց աշխատանքը կազմակերպում Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանի կուսկոմիտեն և արտադրամասային սկզբնական կուսկազմակերպությունները: Մշտական հանձնարարությունները մեզ մոտ սովորաբար հաջորդում են հաշվետու-ընտրական ժողովներին: Կազմակերպության ղեկավար մարմինների ընտրություններից հետո կուսակցական կոմիտեի և բյուրոների անդամների միջև կատարվում է աշխատանքի բաժանում, նրանցից յուրաքանչյուրն ստանում է մշտական կոնկրետ հանձնարարություն: Հասկանալի է, որ կուսակցական ղեկավար մարմիններում ընդգրկված փոքրաթիվ կոմունիստներով հնարավոր չէ իրականացնել կազմակերպչական, քաղաքական ու գաղափարադաստիարակչական այն ծավալուն աշխատանքը, որ կազմակերպությունը տանում է կոլեկտիվի շրջանում: Ան-

հրաժեշտաբար հարկ է լինում այդ գործում որքան հնարավոր է լայնորեն ներգրավել կուսակցական ակտիվիստներին։

Այժմ գործարանի 293 կոմունիստներից ավելի քան 200-ն ունեն մշտական հանձնարարություններ։ Ղեկավար մարմիններից զատ, նրանք ընդգրկված են նաև գործարանի կուսկոմիտեի ու արտադրամասերի կուսբյուրոներին կից ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող գաղափարադաստիարակչական աշխատանքի, որակի վերահսկման հանձնաժողովներում, ժողվերահսկողության խմբերում, հասարակական կարգի պահպանության ժողովրդական դրուժինաներում, պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքի մեթոդխորհուրդների կազմում, երիտասարդ կոմունիստների ու կոմերիտականների ակտիվի ուսուցման դպրոցներում, վարպետ-դաստիարակների խորհուրդներում և այլն։ Շուրջ 40 կոմունիստներ քաղաքական ուսուցման ու տնտեսագիտական կրթության սիստեմի սեմինարավարներ ու պրոպագանդիստներ են, քաղինֆորմատորներ ու ագիտատորներ։ Այդ պարտականությունները սովորաբար մենք վստահում ենք արտադրության ղեկավարներին, ինժեներատեխնիկական անձնակազմին, նրանց, ովքեր կազմակերպչական ընդունակությունների հետ մեկտեղ ունեն նաև տեսական անհրաժեշտ պատրաստականություն ու գաղափարական ամուր կոփվածք, լավ գիտեն ձեռնարկության արտադրությունը, ծանոթ են կոլեկտիվի սոցիալական զարգացման հեռանկարներին։ Մեր կոմունիստներից 22-ը տարբեր աշխատանք են կատարում արհմիութենական, կոմերիտական և հասարակական մյուս կազմակերպություններում։ Տասնյակ հաստոցաշինարար կոմունիստներ հանձնարարություններ ունեն կուսակցության քաղաքային կոմիտեում ու ժողովրդական դեպուտատների քաղաքային սովետի մշտական հանձնաժողովներում։

Կարող է հարց առաջանալ. հանձնարարությունների մեջ կոմունիստների այսչափ լայն ընդգրկումը, արդյոք, չի՞ հանգեցնում ձևականության, չէ՞ որ կուսկոմիտեն ըստ էության հնարավորություն չի ունենա ինչպես հարկն է անդրադառնալու և ստուգելու նրանց գործունեությունը, մի հանգամանք, որ կարող է իջեցնել կոմունիստների պատասխանատվությունը։ Ասենք ուղղակի՝ երկյուղելու հարկ չկա, կոմունիստներից յուրաքանչյուրի հանձնարարության կատարման ստուգումն ու վերահսկումը անմիջականորեն իրականացնում են կուսկոմիտեի համապատասխան հանձնաժողովներն ու խորհուրդները, արտադրամասային կուսբյուրոներն ու կուսխմբերը, որոնց հաշվետվությունները պլանավորված կարգով պարբերաբար քննարկվում են կոմիտեի նիստերում։

Մեզ մոտ հանձնարարությունները միաժամանակ դարձել են կադրերի, կուսակցական ակտիվի դաստիարակության ու ռեզերվի պատրաստման միջոց։ Այստեղ ավելի որոշակիորեն են դրսևորվում կոմունիստների կազմակերպական ունակությունները, նրանց բարոյաքաղաքական հատկանիշները։ Կուսկոմիտեն «հայտնաբերում», ավելի լավ է ճանաչում նրանց, ովքեր հանձնարարված գործը կատարում են բարեխղճությամբ ու պատասխանատվությամբ, ովքեր գործով համոզում են, որ կարող են համախմբել ու ղեկավարել կոլեկտիվը։ Այդպիսի ընկերներին ավելի պատասխանատու գործ ենք վստահում, երաշխավորում կուսակցական ղեկավար մարմիններում, առաջ քաշում տնտեսական աշխատանքի։

Ահա, օրինակ, նախկին խառատ Սարգիս Սիմոնյանը։ Չորս տարի առաջ նա ընդգրկվեց ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող գործարանային հանձնաժողովի կազմում։ Կուսկոմիտեին նա շատ օգնեց ձեռնարկության ֆինանսատնտեսական գործունեության մեջ տեղ գտած թերությունների բացահայտման ու վերացման գործում, հանդես եկավ մի շարք ուշագրավ առաջարկություններով։ Հաջորդ ընտրությունների ընթացքում արտադրամասի կոմունիստները նրան ընտրեցին կուսբյուրոյի կազմում, իսկ այնուհետև վստահեցին քարտուղարի պարտականությունը։ Իսկ այժմ՝ միաժամանակ գործարանի կուսկոմիտեի քարտուղարի տեղակալն է, նորոգման տեղամասի վարպետը։ Կուսակցական հանձնարարությունների միջոցով ստուգվել և շարքային բանվորից տեղամասի վարպետի աստիճանին են բարձրացել Վրեժ Ներսիսյանը, Սաշա Գոգինյանը, Գրիշա Մալումյանը, շարքային ինժեներից գլխավոր կոնստրուկտորի տեղակալ է դարձել Վլադիմիր Մանուչարյանը։ Այսպիսի օրինակներ շատ կարելի է թվարկել։



Սովորաբար կուսակցական հանձնարարությունները բարեխղճորեն ու բարձր պատասխանատվությամբ են կատարում այն կոմունիստները, ովքեր արտադրության մեջ էլ աչքի են ընկնում իրենց կարգապահությամբ և անմիջական աշխատանքային պարտականությունների կատարման մեջ լավ են դրսևորում իրենց։ Այդպիսի օրինակ է ծառայում հավաքման արտադրամասի փականագործների բրիգադավար Միշա Խաչատրյանը։ Նրա տարիների քրտնաջան, հայրենանվեր աշխատանքի վկայությունը Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանն է։ Սոցիալիստական մրցության այս առաջավորի համար ստանձնած պարտավորությունների սիստեմատիկ գերակատարումը դարձել է վարքագծի նորմ։ Այդ չափանիշով է նա մոտենում նաև արտադրամասի արհմիութենական կոմիտեի նախագահի ու ձեռնարկության գործարհկոմի անդամի իր պարտականություններին, որոնք նա կատարում է բարեխղճորեն, տարիներ շարունակ։

Այսպիսի ակտիվ դիրքորոշմամբ են ապրում ու աշխատում կուսակցության քաղաքային կոմիտեի անդամներ Արամայիս Ասրիևյանը և Սարգիս Չիլինգարյանը, № 2 արտադրամասի վերահսկիչ, մամուլի տարածման մեր մշտական լիազոր Սուրեն Մալումյանը, ժողվերահսկողության խմբի նախագահ Վլադիմիր Մազմանյանը, № 3 արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար, փականագործ-կարգավորող Իսկիր Քառյանը և շատ ուրիշներ։ Նրանք գործարանի այն կադրային աշխատողներից են, ովքեր տոն են տալիս կոլեկտիվի արտադրական ու հասարակական կյանքին, իրենց ետևից տանում երիտասարդ բանվորներին, նպաստում նրանց աշխատանքային դաստիարակությանը և հոգևոր զարգացմանը։ Գործարան եկող երիտասարդությունը, առաջին հերթին, հետևում է նրանց օրինակին։ Տարիներ առաջ, հետևելով փականագործ ավագ եղբորը՝ Վարազդատին, № 6 արտադրամասի կոլեկտիվին անդամագրվեց Կայոս Տեպանոսյանը։ Շուտով աչքի ընկավ եղբոր նման աշխատելու ակտիվությամբ և ընտրվեց արտադրամասի ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար։ Միշտ շարժուն ու հետաքրքրասեր, սովորելու և սովորեցնելու ձգտումով, ընկերներին օգնելու պատրաստակամությամբ համակված երիտասարդը ցույց տվեց, որ արժանի է ավելի մեծ վստահության։ Մենք նրան գոհունակությամբ ընդունեցինք ՍՄԿԿ շարքերը։ Այժմ կուսկոմիտեի հանձնարարությամբ նա շարունակում է բեղմնավոր աշխատանք տանել կոմերիտականների ու երիտասարդների շրջանում՝ բարձր պահելով արտադրության առաջավորի իր կոչումը։ Նա բրիգադ է ղեկավարում և արդեն արտադրանք է թողարկում տասնմեկերորդ հնգամյակի հաշվին։ Վարազդատի մյուս եղբայրը՝ Մելսիկը, գործի ընդունվեց № 2 արտադրամասում և տարիներ շարունակ արտադրամասի ԼԿԵՄ բյուրոյի քարտուղարն էր, գործարանի ԼԿԵՄ կոմիտեի անդամ։

Կուսակցական-տնտեսական աշխատանքն ամեն օր նոր խնդիրներ է առաջադրում կոլեկտիվին, բազմաթիվ ընթացիկ հարցեր են ծառանում կուսկազմակերպության առջև, որոնք հրատապ լուծում են պահանջում։ Նման պայմաններում, բնականաբար, խիստ մեծանում է ժամանակավոր կամ ընթացիկ հանձնարարությունների անհրաժեշտությունը։ Դրանք մշտականից տարբերվում են նրանով, որ ավելի օպերատիվ են և ուղղված են այս կամ այն խնդրի շուտափույթ լուծմանը։ Այս հանձնարարությունները նույնպես կազմակերպական ու դաստիարակչական կարևոր դեր են խաղում կուսակցականի կյանքում, օգնում ստուգելու մարդկանց գործարար հատկանիշները։

Կուսակցական հանձնարարությունն ինքնանպատակ չէ։ Մենք այն ամենից առաջ դիտում ենք որպես մարդկանց, հատկապես երիտասարդ կոմունիստների ու կոմերիտականների բարոյական դաստիարակության միջոց։ Եվ ո՛չ միայն նրանց։ Հավաքման արտադրամասի փականագործ Վալերիկ Ժամհարյանը հազիվ էր բոլորել գործարանում աշխատելու մեկ տարին, բայց արդեն կարգազանցի անուն էր հանել։ Նա լավ էր հասկանում գործը և, ըստ երևույթին, կարծում էր, թե դա իրավունք է տալիս իրեն և՛ ուշանալ աշխատանքից, և՛ բարձր խոսել ընկերների հետ, և՛ վայելուչ չպահել փողոցում։

— Հոգնեցրել է Վալերիկն արդեն, չգիտենք ինչպես վարվենք,— մի օր ասացին արտադրամասի կուսբյուրոյի քարտուղար Յուրի Մխիթարյանն ու արհկոմի նախագահ Միշա Խաչատրյանը։

Խորհրդակցեցինք և որոշեցինք դիմել մեր փորձված միջոցին՝ ընդգրկել

նրան հասարակական աշխատանքում, հանձնարարություն տալ։ Վալերիկին ներգրավեցինք հասարակական կարգի պահպանության դրուժինայի կազմում։ Նախկին կարգազանցն այժմ ինքն է կարգի հրավիրում ուրիշներին։

Մեկ այլ օրինակ։ Արժանիկ Մարտիրոսյանը մեր այն կոմունիստներից էր, ովքեր ժողովների ժամանակ գերադասում են միայն լսողի դերում լինել և չեն մասնակցում հարցերի քննարկմանը։ Ամեն անգամ, երբ նրա հետ խոսք էինք բացում այս առթիվ, ձեռքն էր թափ տալիս։ Նրան թվում էր, թե իր դերը միայն լսելն է, իսկ քննարկելը, վիճելը, առաջարկելը վերապահվում է ինչ-որ առանձին կոմունիստների։ Տարիներ առաջ արտադրամասի կուսբյուրոն Ա. Մարտիրոսյանին ընդգրկեց այն հանձնաժողովի կազմում, որն ուսումնասիրելու էր աշխատանքային կարգապահության խախտման պատճառները։ Նրան միաժամանակ հանձնարարվեց ստուգման արդյունքների և կարգապահության բարելավման վերաբերյալ առաջարկներով հանդես գալ կուսակցական հերթական ժողովում։ Մարտիրոսյանը հաշվառել էր շաբաթվա բացակայություններն ու ուշացումները։ Դրանք համեմատել նախորդ շաբաթների արդյունքների հետ, լսել մարդկանց, խորացել պատճառների մեջ։ Հարցի քննարկումն անցավ աշխույժ մթնոլորտում։ Արտադրամասի կուսակցական ժողովը, գործարանի կուսկոմիտեն հաշվի առան արված դիտողություններն ու առաջարկները։ Մենք նկատեցինք, որ Արժանիկի մոտ փոփոխություն է կատարվում, ու նրան տվեցին նաև այլ հանձնարարություններ։ Այժմ կարելի է ասել, որ Արժանիկը որոշակի ակտիվություն է հանդես բերում կազմակերպության գործերի նկատմամբ, ինքն է պահանջում զբաղվել այս կամ այն հարցերով, իր մասնակցությունն է առաջարկում, և պատահական չէ, որ ընկերները նրան ընտրեցին արտադրամասի արհկոմի նախագահ։

Կարծում եմ, թվարկած օրինակները բավական են՝ համոզվելու, թե հանձնարարությունները որչափ կարևոր դեր են խաղում կոմունիստների, նաև անկուսակցականների հասարակական ակտիվության զարգացման գործում։ Հանձնարարությունները ոչ պակաս դեր են խաղում կուսշարքերի համալրման և երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործում։ Երբ երիտասարդը ցանկություն է հայտնում ընդունվել ՍՄԿԿ շարքերը, առաջին հերթին ոչ թե նրա դիմումն ենք ընդունում, այլ հանձնարարություն ենք տալիս, որոշակի ժամկետում (կամ տևական ժամանակով) կատարելու համար։ Կատարման սիստեմատիկ ստուգումը հնարավորություն է ընձեռում լավ ճանաչել երիտասարդին և ճիշտ կողմնորոշվել՝ նրան ՍՄԿԿ շարքերն ընդունելիս։

Իհարկե, միշտ չէ, որ հանձնարարությունն ընդունվում է սիրով ու հոժարակամ։ Մեկը փորձում է հրաժարվել՝ պատճառաբանելով, թե ժամանակ չունի, մյուսն իր ուժերից վեր է համարում այն և այլն։ Ու երբեմն հարկ է լինում երկար զրուցել մարդկանց հետ, համոզել նրանց։ Պրակտիկան ցույց է տալիս, որ հանձնարարությունը մինչև վերջ կատարվում է այն դեպքում, երբ դրա նկատմամբ հետևողականություն է հանդես բերվում, երբ կուսկազմակերպությունը, նրա բյուրոն, կոմիտեն վերահսկում, ստուգում են կատարման ընթացքը։

Կուսակցական հանձնարարություններ տալիս մենք ելնում ենք այն բանից, որ առանձին կոմունիստներ չափից ավելի չծանրաբեռնվեն, իսկ մյուսները, ընդհակառակը, դուրս մնան տեսադաշտից։ Մենք անում ենք հնարավոր ամեն բան, որպեսզի կազմակերպության բոլոր անդամներն ընդգրկվեն այդ գործում։ Իհարկե, ինչպես մյուս կազմակերպություններում, մեզ մոտ ևս կան այնպիսի ընկերներ, որոնք իրենց հասարակական ակտիվությամբ համակում են ողջ մթնոլորտը։ Եվ, կարծում եմ, ճիշտ չի լինի, եթե ծանրաբեռնելու մտավախությունից մղված՝ մենք լիովին չօգտագործենք նրանց ուժերը։ Այս տարի, օրինակ, գործարանի ժողվերահսկողության խմբի ղեկավար Վոլոդյա Մազմանյանին նպատակահարմար գտանք հանձնարարել նաև առևտրի նկատմամբ բանվորական վերահսկողության խմբի ղեկավարումը։ Կամ՝ մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Հենրիկ Ամիրբեկյանը միաժամանակ արհմիության կոմիտեի աշխատանքային վեճեր լուծող հանձնաժողովի նախագահն է։ Կուսակցական, հասարակական աշխատանքի նկատմամբ ակնհայտ պատրաստակամություն է ցուցաբերում Վլադիմիր Մանուչարյանը։ Հանձնարարությունը կատարելու համար նա միշտ էլ ժամանակ է գտնում ու չի տրտնջում։ Այսօր էլ հաջողությամբ է համատեղում արտադրամասային սկզբնական



կուսկազմակերպության բյուրոյի քարտուղարի ու արտադրական խորհրդակցության ղեկավարի, նոր տեխնիկայի և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման ասպարեզում ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկող հանձնաժողովի անդամի պարտականությունները։ Արտասահմանյան մի շարք երկրների տոնավաճառներում ու ցուցահանդեսներում նա հաճախակի ներկայացնում է գործարանի արտադրանքը։

Կոմունիստների կողմից կուսակցական հանձնարարությունների կատարումը մեծապես նպաստում է տնտեսական գործունեության բարելավմանը, ձեռնարկության առջև ծառացած սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը, հանրային արտադրության արդյունավետության ու արտադրանքի որակի բարձրացմանը։ Կոմունիստներն իրենց արժանի ներդրումն ունեն տնտեսական բոլոր նվաճումներում, իսկ լավ գործերը շա՜տ-շատ են։ Այժմ գործարանի արտադրանքն առաքվում է ավելի քան 30 արտասահմանյան երկիր. ՍՍՀՄ-ում մեր արտադրանքի պատվիրատուների թիվն անցնում է 2.000-ից։ Մենք թողարկում ու երկրին տալիս ենք խառատային ճշգրիտ, գերճշգրիտ, էլեկտրակայծային, ծրագրային կառավարման էլեկտրակայծային, բալանսավորող, ուլտրաձայնային, գայլիկոնող և 10-ից ավելի մակնիշի այլ բնույթի հատուկ հաստոցներ։ Արտադրանքի պատրաստումն ու ժամանակին առաքումը գործարանի դիրեկցիայից, կուսկազմակերպությունից պահանջում է ամենօրյա հետևողական աշխատանք ծավալել, կոլեկտիվի ուժերը մոբիլիզացնել, սիստեմատիկաբար ստուգել տրված հանձնարարությունները։ Տեղին է ասել, որ այդ ամենի շնորհիվ մեր կոլեկտիվը հաջողությամբ է լուծում իր առջև ծառացած խնդիրները, քայլում քաղաքի և ճյուղի ձեռնարկությունների առաջավորների շարքերում։ Արդեն 39 եռամսյակ անընդմեջ Կիրովականի հաստոցաշինարարները արժանանում են ՍՍՀՄ հաստոցագործիքաշինության մինիստրության և ճյուղային արհմիության Կենտկոմի մրցանակներին։

Տարեցտարի ընդլայնվում է գործարանի արտադրությունը, մեծանում կարողությունը, բարձրանում աշխատանքի արտադրողականությունը։ Իններորդ հնգամյակում արտադրանքի ծավալը մեզ մոտ կրկնապատկվեց, բարձր ցուցանիշներով կատարվեցին պլանային բոլոր առաջադրանքներն ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, որի համար կոլեկտիվը պարգևատրվեց ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշով և ձեռնարկության անունը գրանցվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի պատվո տախտակին։ Ընթացիկ հնգամյակում արտադրանքի ծավալն աճելու է 80 տոկոսով։ Անցած չորս տարիներին արդեն ապահովվել է դրա 60 տոկոսը։ Լավ արդյունքներ են ձեռք բերվել նաև արտադրանքի որակի բարձրացման գործում։ Այժմ գործարանում թողարկվող արտադրանքի 62 տոկոսը պատվիրատուներին է ուղարկվում պետական որականիշով (1975 թ 2,2 տոկոսի դիմաց)։

Հետևողականորեն իրականացնելով ՍՄԿԿ XXV համագումարի և նրան հաջորդած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումները, գործարանի կուսկոմիտեն և արտադրամասային կազմակերպությունների բյուրոները մեծ ուշադրություն են նվիրում գաղափարադաստիարակչական աշխատանքի կատարելագործմանը, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի մոտ բարձր գիտակցականության, կոլեկտիվում ընկերական-բարեկամական փոխհարաբերությունների ամրապնդմանը։ Դրան է ուղղված գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության նպատակով կուսկազմակերպության ծավալած գործունեությունը։ Այս խնդրի իրականացումը մեր կոմունիստները համարում են իրենց կանոնադրական պարտքը և այդ զգացումով էլ մոտենում են տրված հանձնարարությունների կատարմանը։

Կուսակցության պահանջների հետևողական կատարումը կոմունիստի վսեմ պարտքն է։ Մեր կազմակերպության անդամները համակված են այն զգացումով, որ յուրաքանչյուր կոմունիստ, որտեղ էլ աշխատելիս լինի, պետք է հանդես գա որպես լենինյան կուսակցության մարտիկ, նրա գաղափարների համոզված պրոպագանդիստ և տարածող, իր բոլոր գիտելիքները, հոգու ողջ կրակը նվիրաբերի կոմունիզմի կառուցման վեհ գործին։

---

## Գրախոսություն և քննադատություն

# ԴՅՈՒՑԱԶՆԱԿԱՆ ՍԻՄՖՈՆԻԱ

*Ինչպիսի՜ անսպառ ուժի հեղափոխական, ի՜նչ ամուր, սքանչելի մարդ է այս Ելենա Ստասովան։*

*Մ. ԳՈՐԿԻ*

**ԼԵՆԻՆՅԱՆ ԳՎԱՐԴԻԱՅԻ** այն մարտիկներից մեկն է Ելենա Դմիտրիևնան, որոնց համախմբել է գաղափարների, վսեմ խոհերի, խոստումնալի գործելակերպի, մտածված գործողությունների միասնությունը, համոզմունքն այն բանի, որ այլևս հանդուրժել չեն կարող հին կարգերի գոյությունը, պետք է ամբողջովին նվիրվեն աշխարհի սոցիալիստական վերափոխման մեծ գործին։ Քիչ էին նրանք՝ այդ առաջինները և անձամբ ճանաչում էին միմյանց— Բաուման, Բաբուշկին, Կրասին, Կրժիժանովսկի, Օրջոնիկիձե, Ֆրունզե... Հետագայում բազմամարդ դարձավ, ամրացավ և ուժգնացավ լենինյան կուսակցությունը՝ կուռ ու անսասան, տառապանքների, զրկանքների գնով, աննահանջ պայքարով ու մարտերով տապալեց հին կարգերն ու կերտեց սոցիալիստական հասարակություն, նոր կյանք։

Մի առիթով Ելենա Ստասովան ասել է. «Տարեցտարի նվազում է մեր՝ հին բոլշևիկների թիվը, պետք է «քամել» մեզնից այն ամենը, ինչ հիշում ենք, գիտենք. սերունդների համար, պատմության համար այդ շատ կարևոր է»։

Նոր մարդու ձևավորման, երիտասարդության, մատաղ սերնդի դաստիարակության, կոմունիստ-լենինյանների կյանքի ու գործունեության հավերժացման հույժ կարևոր գործին է նվիրել իր գրիչը կոմունիստ գրող Պավել Պոդլյաշուկը*։

Ընտանիքը, ուր անկարիք ապրել, դաստիարակվել էր Ելենան, աչքի էր ընկնում տաղանդավոր մարդկանցով, առաջադիմական հայացքներով, հասարակական գործունեության բուռն ձգտումով, համարձակությամբ ու խիզախությամբ։ Լենան ևս այդպիսին էր բնավորությամբ— անկախ, համարձակ, վճռական. «Տղա պիտի ծնվեր», հաճախ ասում էր մայրը։ Ընտանեկան հարուստ գրադարանում բազմաթիվ գրքերի հետ կար նաև արգելված գրականություն— Չերնիշևսկի, Գերցեն, «Պոլյարնայա զվեզդա», «Կոլոկոլ» ամսագրերը։ Հենց գրքերն էլ դարձան Լենայի առաջին ուսուցիչները. Հյուգոյի «Թշվառները» ու «Իննսուներեքը», Տոլստոյի, Տուրգենևի, Լերմոնտովի, Նեկրասովի, Սալտիկով-Շչեդրինի, Վոյնիչի, Կորոլենկոյի ստեղծագործությունները օգնում էին ճանաչելու կյանքը, կողմնորոշվելու. Նա մանկուց ուներ իր սիրած գրքերն ու հերոսուհիները, որոնց ջանում էր նմանվել։

Ամեն հինգշաբթի, Ստասովների տունը լցվում է երաժշտության հոգեպարար հնչյուններով։ Հավաքվում էին հյուրերը, ընտանիքի մերձավոր բարեկամները, Պետերբուրգի երաժշտական մտքի արքաները՝ Բալակիրևը, Բորոդինը, Մուսորգսկին, Ռուբինշտեյնը, «հզոր խմբակի» անդամները։ Նրանք կատարում էին իրենց նոր ստեղծագործությունները, ապա ժամերով քննարկում, վիճում, զրուցում... Ահա նման զրույցների ժամանակ էլ ձևավորվում է Ելենայի հեղափոխական բնավորությունը։

Քայլ առ քայլ ներկայացնելով գրքի հերոսուհու կյանքն ու գործունեությունը՝ հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես Ելենա Դմիտրիևնան շատ վաղ սկսեց պատրաստվել այդ ժամանակի համար։ Ծանոթների, մտերիմների ընդլայնվող շրջանակ— ուսուցչուհիներ Նադյա Կրուպսկայան, Զինա և Սոնյա Նևզորովաները... Շուտով Լենան իմացավ, որ պարզ, մարդամոտ ու համեստ, բնավորությամբ իրարից հույժ տարբեր այդ կանայք հեղափոխականներ են։ Իրեն տրված հանձնարարությունները բարեխղճորեն կատարելու շնորհիվ շուտով նա վայելում է նրանց լիակատար վստահությունը, դառնում շատ ձեռնարկումների ակտիվ մասնակիցը։ Ի՜նչ ոգևորությամբ է սկսում ուսումնասիրել քաղաքական գրականությունը։ Բնագրով, գերմաներեն կարդում է Մարքսին. մեծ ազդեցություն է գործում նրա վրա Կոմունիստական կուսակցության մանիֆեստը, Իլյիչի Ի՜նչ են ժողովրդի բարեկամները և ինչպես են մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ հեկտոգրաֆով տպագրված տետրերը...

1896 թ. Պետերբուրգում մոլեգնում է ըմբոստության ալիքը. ամենուր հուզումներ են, գործադուլներ, հալածանք, ձերբակալություններ, պատիժներ... Ուսուցչուհիներից մեկը Ելենային է հանձնում մայիսմեկյան թռուցիկը. «...Եվ կբարձրանա մեր մկանուտ ձեռքը ու կընկնեն անազատության ամոթալի շղթաները, Ռուսաստանում կբարձրանա աշխատավոր ժողովուրդը, և կդողան կապիտալիստների ու կառավարողների սրտերը»։ Իրեն հայտնի «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» կոչով էր ավարտվում «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» տարածած այդ թռուցիկը։

Հորեղբայրը՝ Վլադիմիր Վասիլևիչը, որ ուշի ուշով հետևում էր Լենայի ամեն քայլին, ուրախանում, տեսնելով թե ինչպիսի վեհ գործի է զինվորագրվել նա, միաժամանակ տագնապում էր, զգուշացնում. «Միայն խնդրում եմ բախտին, որ դու երբեք, ոչնչում անձնատուր չլինես, երբեք չդավաճանես լավին, արմատականին, երբեք չդադարես գործել և՛ գլխով, և՛ ձեռքերով, և՛ խղճով, և՛ սրտով...

Կբավականացնի՞ վառոդն ամբողջ կյանքիդ համար»։

1897 թվականն էր այդ։ Իսկ մեկ տարի անց հեղափոխականի մեծ տաղանդով օժտված Ելենան ընդունվեց կուսակցության շարքերը, որի անվարան զինվորը եղավ 70 երկար տարիներ, իսկ վառոդը բնավ չպակասեց։

Ստասովային հանձնարարվում է պահպանել ու տարածել կուսակցական գրականությունը, ապա վարել կուսակցության Պետերբուրգի կոմիտեի գործունեության ողջ տեխնիկական կողմը— բնակարաններ ապահովել ժողովների, հանդիպավայրերի համար, թաքստոցներ, գիշերելու տեղեր, ստանալ ու պահել թռուցիկները, ապա նաև՝ Ռուսաստանի կուսակցական կազմակերպության նամակագրությունն արտասահմանյան կենտրոնի հետ։ Եվ այդ ամենը հմուտ կոնսպիրատորը կատարում էր ընդհատակյա պայմաններում։

Երաշտ, սով էր Ռուսաստանում։ Քույր Ելենան Ուֆայում է, այնտեղից՝ Ստերլիտամակի նահանգ։ Առավոտ ծեգին ոտքի վրա է, մինչև ուշ գիշեր, ամեն ինչ անում է ժողովրդի ծանր վիճակը թեթևացնելու համար. կազմակերպում է հանգանակություններ, հասարակական ճաշարաններ, բուժօգնություն... Բայց շուտով համոզվում է, որ բարեգործությամբ ցավին դարման անել չի կարող և վերադառնում է Պետերբուրգ։ 1900 թվականն էր. լույս տեսավ լենինյան «Իսկրայի» առաջին համարը։ Հեղափոխական սոցիալ-դեմոկրատներն սկսեցին համախմբվել բոլշևիկյան լրագրի շուրջը։ Գործունեության մի նոր, լայն ասպարեզ Ելենայի համար։ Ահա ինչ է գրում Իլյիչին Պետերբուրգի «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» անդամ, «Իսկրայի» գործակալ Իվան Ռադչենկոն. «Ընդունեք ի գիտություն. ձախողման դեպքում Պիտերում իմ ժառանգորդն է, որը գիտե իմ գործը. այնպես որ իմ այստեղ չլինելու դեպքում ինձ լիովին կփոխարինի Ելենա Դմիտրիևնա Ստասովան։ Շատ եռանդուն, գործին նվիրված կոնսպիրատոր է՝ ծանոթությունների լայն շրջանակով»։ Ելենային համակրում, նրա անխոնջ գործունեությամբ հիանում և օգնում էին ժամանակի մտավորականության շատ առաջավոր ներկայացուցիչներ (Ռեպինը, Գինցբուրգը, Վլ. Կոմարովը), թեպետ բոլշևիկներ չէին նրանք։ Իսկ հորեղբոր գրադարանի ապահով աշխատասենյակում հաճախ են պահվել արգելված գրականությունը, թռուցիկներ, այդ հասցեով ստացվել են «Իսկրայի» շատ համարներ։

Ինչպես գիտենք, «Իսկրայի» բոլոր կապերը վարում էր Նադեժդա Կոնստանտինովնան։ Տարբեր լեզուներով էին Լենինին ուղղված նամակները։ Իսկ Ստասովան վարժ տիրապետում էր գերմաներենին, ֆրանսերենին, անգլերենին, հետո սովորեց նաև շվեդերեն, իտալերեն, լեհերեն, վրացերեն։

Ստասովների տանը հաճախակի կազմակերպվող «մի բաժակ թեյի» երեկոները, ուր լսում էին դասախոսություններ, ծայր էին առնում սուր բանավեճեր, իրենց վրա էին բևեռել Պետերբուրգի ոստիկանության պահնորդական բաժանմունքի ուշադրությունը։ Ելենան գրում է «Իսկրայի» խմբագրությանը. «Ինձ շատ են հետապնդում և շատ լուրջ»։ Եվ կեղծանունները հաջորդում են իրար. Աբսոլյուտ, Դելտա, Կնոլ, Գերտա, Գուշչա...

Ստացվող նամակների, տեղեկությունների հիման վրա Ստարիկը՝ Իլյիչը, արտասահմանից կարողանում էր ճիշտ կռահել Ռուսաստանում տիրող իրավիճակը, խորհուրդներ տալ... «Իսկրայի» գործակալներին ուղղված նրա «ռումբ-նամակները», որ պարունակում էին թե՛ հանդիմանություն, թե՛ կոնկրետ ա-

* Павел Подляшук. Богатырская симфония. Политиздат, 1977.

կան վարչության զեկուցագրում արձանագրվում է. «Ստասովան չի դադարեցնում իր հանցավոր գործունեությունը, հակառակը, լայն կապեր ունի հեղափոխական լուրջ գործիչների հետ... պրոպագանդա է մղում... բնակչության շրջանում»:

Օրեցօր վատանում էր նրա առողջությունը: Ծնողների համառ ջանքերով հաջողվեց ստանալ արդարադատության մինիստրի թույլտվությունը. չորս ամսով Ստասովան կարող է ապրել Պետերբուրգում: Տուն հասնելուն պես Աննա Իլյինիչնա Ելիզարովայից իմանում է Իլյիչի և Նադեժդայի հասցեն: «Ինչպե՞ս է Ձեր, թանկագին Ստարիկի առողջությունը,— ավարտում է նա Նադյային ուղղված նամակը:— Երկուսիդ էլ շատ եմ կարոտել: Ջերմ բարևներս երկուսիդ... Համբուրում եմ Ձեզ: Ձեր՝ Ելենա»:

1917 թվական. հաղթանակել է փետրվարյան հեղափոխությունը, տապալվել ցարական կառավարությունը: Ապստամբած ժողովուրդը ջարդում է լեփլեցուն բանտերի դռները, ազատում ինքնակալության կալանավորներին: Բանտում էր և Ստասովան. այդ նրա վերջին, ամենակարճ բանտարկությունն էր:

Տավրիկյան պալատի սենյակներից մեկում տեղավորված էր ՌՍԴԲԿ Կենտրոնական կոմիտեի բյուրոն: «Եվ ահա ես նորից քարտուղարություն եմ անում,— այդ օրերի մասին հիշում է Ելենա Դմիտրիևնան:— Այդ ժամանակ քարտուղար լինել, նշանակում էր ամեն ինչ անել»: Անհա նրա անելիքների չնչին մասը. ընդունել մարդկանց, պատասխանել նրանց հարցերին, ապահովել գրականությամբ, կազմել Կենտկոմի նիստերի արձանագրությունները, բազմացնել և տեղերն առաքել հրահանգները, տնօրինել ֆինանսները...

Համատեղ աշխատելուց դեռ շատ առաջ, անձամբ չճանաչելով, նամակագրական կապ են ունեցել, իմացել, հարգել են իրար Յա. Մ. Սվերդլովն ու Ելենա Դմիտրիևնան: Անհա ինչու նրանք հանդիպեցին իբրև հին բարեկամներ: Իսկ Ստասովների հետ ծանոթանալիս Սվերդլովը կատակով ասաց.

— Ա՜յ թե քաջն է ձեր աղջիկը: Հասավ Պիտեր, հեղափոխություն արեց, մեզ էլ աքսորից ազատեց:

Այդ փոթորկածուփ գարնանը Ելենային երջանկություն էր վիճակվել գործելու Իլյիչի հետ, նրա անմիջական ղեկավարությամբ:

Ընդհատակից Իլյիչը ղեկավարում է կուսակցության VI համագումարը, որը հեռակա կարգով կուսակցության ամենադույլթները պահպանողին՝ Ելենա Դմիտրիևնային (որն իր ձեռքում էր պահում կուսակցության բոլոր կապերը), ընտրեց կուսակցության Կենտկոմի անդամ: Կուսակցության Կենտրոնական կոմիտեի նեղ կազմի մեջ է Ստասովան՝ Սվերդլովի և Ձերժինսկու հետ:

1917 թվական. հոկտեմբերի 25 (նոյեմբերի 7). բանվորների ու գյուղացիների հեղափոխությունը, ո՛րի անհրաժեշտության մասին միշտ խոսում էին բոլշևիկները, կատարվեց,— հայտարարեց Լենինը բանվորների ու զինվորների Պետրոգրադյան խորհրդի նիստում: Ծավալվում է սոցիալիստական պետության կառուցումը, որին գլխովին նվիրվում է Ելենա Դմիտրիևնան:

Կուսակցության Կենտկոմի քարտուղարը (1917—20 թթ.) նաև Հյուսիսային մարզի կոմունիստների միության գործկոմի անդամ էր, «Երեքի հանձնաժողովի» և կուսակցական ու սովետական այլ օրգանների անդամ, զբաղվում էր բնակչության, զինվորների քաղաքական դաստիարակության գործով:

Հեղինակն անմիջական, կենդանի է նկարագրում Պիտերի կուսակցական ակտիվի արտասովոր նիստը, Զինովևի և Ստասովայի բախումը՝ թշնամական տարրերի նկատմամբ վարելիք տակտիկայի հարցի առիթով: Սարսափահար Զինովևն առաջարկում էր ամենուր սպանել բոլոր կասկածելիներին:— Ավելի շա՜տ արյուն,— կոչ էր անում նա: Ստասովան նրա ելույթը համարեց խուճապային և սխալ, «որովհետև,— ասաց նա,— այն առաջին հերթին կուղղվի հենց մեր դեմ»:

Բոլոր հավատարիմ լենինյաններին, բոլշևիկներին, աշխարհի ողջ առաջադեմ մարդկությանը ցնցեց Իլյիչի դեմ էսէռուհի Կապլանի գործած մահափորձը: Բոլո՛ր ուժերը հեղափոխության թշնամիների դեմ: Ելենա Դմիտրիևնան ընտրվեց Պետրոգրադի արտակարգ հանձնաժողովի նախագահության կազմում, իբրև կուսակցության պետերբուրգյան հանձնաժողովի նախագահ: Թշնամիների նկատմամբ խիստ անողոք, անզիջում բոլշևիկը ուշիուշով ուսումնասիրում էր գործերը, հետևում, որ շտապողականության, այն ժամանակվա քաղաքական ու ռազմական բարդ իրադրության պայմաններում «պրոլետարական դիկտատուրայի պատժող սուրը» չիջնի անմեղ, սխալմամբ կասկածվող մարդկանց գլխին: Արտակարգ հանձնաժողովում կատարած աշխատանքում դրսևորվեցին Ստասովայի սկզբունքայնությունը, արդարամտությունը, բծախնդրությունը, նա անողոք էր սովետական իշխանության թշնամիների, մոլթապաշտների նկատմամբ:

1919 թ. մարտին, կուսակցության VIII համագումարից մի շաբաթ առաջ, Սվերդլովը Ստասովային կանչեց Մոսկվա: Անելիքներ շատ կային, իսկ Սվերդլովը մահամերձ էր: Ծանր ապրեց կուսակցությունն իր անխոնջ, բոլորանվեր անդամի, հմուտ կազմակերպչի կորուստը: Անջինջ տպավորություն գործեց ամենքի վրա Իլյիչի հրաժեշտի խոսքը:

Համագումարում Ստասովան ընտրվեց Կենտրոնական կոմիտեի անդամ. միակ կինը կուսակցության Կենտկոմի 19 անդամներից և ութ թեկնածուներից: Նա նաև Կենտկոմի կազմբյուրոյի անդամ էր: Տարիներ շարունակ աշխատելով Լենինի հետ, նրա ղեկավարությամբ, նա խորապես յուրացրել էր աշխատանքի լենինյան ոճը: Աշխատելով որպես ՌԿ(բ)Կ ԿԿ-ի քարտուղար, նա բծախնդրությամբ կատարում էր նրա հանձնարարությունները, ջանում ազատել նրան առօրյա գործերից, ավելորդ հանդիպումներից, Կենտկոմի որոշմամբ ստիպում նրան արձակուրդ գնալ: Դիմադրում էր Իլյիչը, բայց ապարդյուն և, ապա ասում էր Ելենային.

— Երբ կհրամայեք սկսել արձակուրդը:

Իսկ երբ պետք էր լինում օգնել որևէ մեկին, Լենինը դարձյալ հանձնարարում էր Ստասովային: Այսպես. «Չիչերինը հիվանդ է,— գրում է Իլյիչը նրան,— խնամող չունի, բուժվել չի ուզում... Անհրաժեշտ է ԿԿ-ի կողմից գրել նրան սիրալիր (չվիրավորելու համար) նամակ: Կենտկոմի որոշման հետ մեկտեղ, որով Կենտկոմը պարտավորեցնում է չկողոպտել պետական ունեցվածքը...»:

Իսկ սպիտակգվարդիականների դեմ Սովետական Ռուսաստանի մղած օրհասական կռիվներում Ստասովան հանրապետության հեղափոխական ռազմական խորհրդի ղեկավարին՝ լեգենդար Կամոյին, օգնում էր մարդկանց ընտրության, ջոկատների կազմակերպման գործում:

Կոմինտերնի II կոնգրեսն է. տարբեր երկրներից ժամանած դելեգատները հիացմունքով են լսում հեղափոխության առաջնորդի ելույթը՝ փայլուն գերմաներենով, ապա՝ սքանչելի ֆրանսերենով: Դելեգատների մեջ է և Ելենա Դմիտրիևնան: Նա եկել է Մոսկվա ո՛չ միայն մասնակցելու կոնգրեսին, այլև խորհրդակցելու Իլյիչի հետ Արևելքի ժողովուրդների նախապատրաստվող համագումարի վերաբերյալ, որի կազմակերպման գործը հանձնարարված էր իրեն, Միկոյանին, Գաբիևին և Նարիմանովին:

Կուսակցության XVII համագումարում կյանքի յոթերորդ տասնամյակը ոտք դրած անխոնջ լենինյանն ընտրվում է ՀամԿ(բ)Կ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի, ապա այդ հանձնաժողովի կոլեգիայի, կուսակցության Մոսկվայի խորհրդի, ՍՍՀՄ սահմանադրության նախագիծը մշակող հանձնաժողովի անդամ:

30-ական թվականներին միջազգային «Կարմիր օգնության» նախագահ Ելենա Դմիտրիևնան դարձավ պատերազմի և ֆաշիզմի դեմ ծավալված ղեկավարներից մեկը: Գործում էր Մաքսիմ Գորկու, Հանրի Բարբյուսի, Ռոմեն Ռոլանի, Պոլ Լանժևենի հետ: Կլարա Ցետկինի խորին համոզմամբ ՄՕՊՐ-ը «միլիոնավոր անանուն և անհայտ մարդկանց պատվին միլիոնավոր անանուն և անհայտ մարդկանց ընտեղծած ներբողն էր», իսկ Ելենա Ստասովան՝ ողջ կազմակերպությանն առաջ մղող բոցավառ, անմար ոգին:

1932 թ. օգոստոսին Ամստերդամում կայացավ հակապատերազմական միջազգային կոնգրեսը: Նիդեռլանդիայի կառավարությունը հրաժարվեց վիզա տալ սովետական պատվիրակությանը, որի կազմի մեջ էին՝ Մաքսիմ Գորկին, Նիկոլայ Շվեռնիկը, Ելենա Ստասովան և այլ ընկերներ: Սովետական պատվիրակությունը չկարողացավ ներկայանալ. չնայած դրան, Գորկուն, Ստասովային, Շվեռնիկին հեռակա կարգով ընտրեցին միջազգային հակապատերազմական կոմիտեի կազմում: Կոմիտեն գտնվում էր Փարիզում և Ստասովայի համար դժվար չէր մեկնել այնտեղ: Ինչպիսի՜ ջերմ, սերտ բարեկամություն էր միացնում Ելենա Դմիտրիևնային և Հանրի Բարբյուսին: «Ես բախտ եմ ունեցել հաճախ տեսնելու նրանց միասին,— հիշում է գրող Ալեքսանդր Իսբախը:— Ինչ-որ բանով նրանք նման էին իրար: Երկուսն էլ բարձրահասակ, նիհար, եռանդուն: Միայն թե Բարբյուսի էներգիան արտահայտվում էր արտակարգ-եռանդուն շարժումների, անընդհատ ծխելու, աչքերի կրակոտ փայլի մեջ: Ստասովայի կրակոտությունը քողարկված էր հանգստության արտաքին տեսքով, նրա աչքերի երիտասարդական փայլը թաքցնում էին հնաձև պենսնեի ապակիները»:

Հայրենական պատերազմի ծանր, փորձություններով լի օրեր, տարիներ... ռմբակոծություններ, օդային տագնապ... Եվ առաջին իսկ օրերին.

— Ես վարժ տիրապետում եմ գերմաներենին, ֆրանսերենին, անգլերենին, լավ գիտեմ և լեհերեն. ես օգտակար կլինեմ այստեղ, Մոսկվայում, ես կմնամ: Ի՞նչ պառավ, ես ընդամենը 78 տարեկան եմ:

Կուսակցության Մոսկվայի կոմիտեի քարտուղարը կտրականապես մերժեց բազմամյա փորձ ունեցող անզերազանց, հաջողակ կոնսպիրատորի խնդրանքը.

— Մի՞թե Դուք կարծում եք, թե մենք իրավունք ունենք վտանգելու կուսակցության այս-

պիսի անգնահատելի հարստությունը: Երբե՛ք: Չէ՛ որ Դուք կուսակցական ավանդույթների պահպանողն եք. և այդ հատկությամբ իսկ շատ պետք եք մեր ժողովրդին: Խնդրում եմ՝ պահպանեք Ձեզ:

Եվ Գոսլիտիզդատի հետ նրան ուղարկեցին Ուրալ՝ Կրասնոուֆիմսկ: 1942 թ. նա կրկին Մոսկվայում է, «Интернациональная литература» ամսագրի պատասխանատու քարտուղարը: Աշխատում է նա մեծ, ցուրտ մի սենյակում, ձեռքերին՝ հնաձև ձեռնոցներ... ոտքերին՝ հին կոշիկներ... գալիս է ամենքից շուտ, գնում ամենքից ուշ: Ժամերով կարդում է ձեռագրերը, ուղղում, ընդունում հեղինակների, թարգմանիչների, կարդում է շարվածքը, հետևում սրբագրությանը... Ամսագրում աշխատելու ընթացքում նա մտերմացավ գրողներ Իլյա Էրենբուրգի, Վսևոլոդ Վիշնևսկու, Ալեքսանդր Իսբախի, Ալեքսանդր Ֆադեևի հետ:

Կոչե՛մ ողջերին, այսպես է վերնագրել Դյուցազնական սիմֆոնիա գրքի վերջին գլուխը Պ. Պոդլյաշուկը: Թոշակավորվելուց հետո Ելենա Դմիտրիևնան զբաղվում է գրական գործունեությամբ, զեկուցումներ կարդում Ն. Կ. Կրուպսկայայի մասին, Փարիզյան կոմունայի և այլ թեմաներով: «Հաճախ ինձ ասում են,— գրում է նա Կոլոնտային,— թե ես զուր եմ այդպիսի բեռ վերցնում վրաս: Ծիծաղելի՛ մարդիկ: Նրանք ոչ մի կերպ չեն ուզում հասկանալ, որ այդ զեկուցումները մեծ բավականություն են պատճառում, այնպիսի վերելք են առաջացնում, որ մոռացնում են բոլոր ձախորդությունները: Մարդիկ չեն ուզում հասկանալ, որ զեկուցումներն իրական կյանքն են, քանի որ հաղորդակցվում ես մասսայի հետ: Այդ կենդանի ստեղծագործական կյանքի զարկերակն է, որը և տալիս է ուժերի նոր հորդում, չնայած և շատ ուժեր է խլում»: Ապա՝ «Մենք՝ ծերերս, շատ պիտի պատմենք մեր անցած կյանքի մասին, որպեսզի երեխաները սովորեն ինքնադաստիարակել իրենց»:

Եվ ո՛չ միայն պատմում, այլև գրում էր. նա չափազանց խստապահանջ էր իր և ուրիշների գրական արտադրանքի նկատմամբ: Եթե պատրաստվում էր գրել որևէ մեկի մասին, ապա ամենայն մանրակրկիտությամբ ուսումնասիրում, պրպտում էր արխիվները, ընտրած հերոսի և այլոց հիշողությունները, կարդում հոդվածներ, գրքեր...

Լենինի հինգ շքանշանների ասպետը, իր խոսքն ուղղելով գալիք սերունդներին, ասում է. «Ես եղել և մինչև կյանքիս վերջը կմնամ լենինյան մեծ կուսակցության զինվորը: Նրան եմ պարտական իմ ողջ գոյությամբ և ամենից գերիվեր ինձ համար նրա առաջ պարտքս կատարելն է»:

Իրոք որ, նա այն երջանիկներից է, ովքեր Լենինի հետ մեկտեղ խարխլեցին ինքնակալության հիմքերը, հասան հաղթանակի և դրեցին պատմության նոր շրջափուլի սկիզբը— հիմնեցին սովետական իշխանությունը և աշխարհով մեկ տարածեցին լենինյան գաղափարները:

Ելենա Դմիտրիևնա Ստասովան վախճանվեց 1966 թվականի դեկտեմբերի 31-ին: 94 տարեկան էր:

Ներկա ու գալիք սերունդներին վեհ գաղափարայնության ոգով համակող, նրանց կոմունիստական դաստիարակությանը խթանող գրականության հիանալի նմուշներից է Պավել Պոդլյաշուկի մի շնչով կարդացվող այս գիրքը, որի հայերեն թարգմանությունը լավ նվեր կլիներ մեր երիտասարդության համար:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ՊԱՅՔԱՐԻ ԵՎ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԱՆՎԵՀԵՐ ՄԱՐՏԻԿԸ

**ՀՐԱՊԱՐԱԿԻ ՎՐԱ Է** բոլշևիկների լենինյան գվարդիայի ներկայացուցիչ Սահակ Միրզոյի Տեր-Գաբրիելյանի երկերի ժողովածուն*, որը կազմել ու տպագրության է պատրաստել ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտը— ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալը: Ժողովածուում զետեղված են նրա հոդվածները, հուշերը, զեկուցումներն ու ճառերը, հարցազրույցների լրագրական տեքստերը, նամակներն ու գրությունները, մի շարք փաստաթղթեր, ինչպես նաև Ս. Տեր-Գաբրիելյանի կյանքի ու գործունեության հիմնական տարեթվերը:

Ինչ խոսք, սույն ժողովածուն չի ամփոփում նրա գրչին պատկանող և հեղափոխական-պետական բազմաբովանդակ գործունեությանը վերաբերող բոլոր նյութերն ու փաստաթղթերը: Սակայն ներկա հրատարակությունն ունի պատմաճանաչողական կարևոր նշանակություն, քանի որ այն սերտորեն առնչվում է մեր երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթական երթի, սոցիալիզմի կառուցման տարեգրության հետ:

Ժողովածուի էջերից հառնում են նոր աշխարհի հաստատման ու կառուցման համար աշխատավորական զանգվածների հերոսական մաքառումների ու գոռ ճակատամարտերի սխրալի դրվագները, որոնց հիմնապատառի վրա հստակ ուրվագծվում է հեղափոխության անձնվեր մարտիկի, կուսակցական և սովետական ականավոր գործչի պայծառ դիմանկարը:

Բազում գրկանքներով ու հոգեկան ազնիվ պոռթկումներով լի է եղել լենինյան կոփվածքի տեր մարդու՝ Սահակ Տեր-Գաբրիելյանի կյանքի ու գործունեության ուղին, գեղեցիկ մի կյանք, որն անմնացորդ ու անվարան նվիրաբերվեց աշխատավոր մարդու ազատագրության, երջանկության գործին:

Շատ վաղ զրկվելով հորից, նա հարկադրված թողնում է ուսումնառությունը Շուշու ռեալական դպրոցում և ընտանիքով տեղափոխվում Բաքու: Պետք էր օգնել մորը՝ խնամելու, հոգալու երկու քույրերի և եղբոր ապրուստը: Եվ տասնչորսամյա Սահակն սկսում է աշխատել կահույքի արհեստանոցներից մեկում իբրև աշակերտ, շփվում հեղափոխական բանվորների հետ, ծանոթանում մարքսիստական գրականությանը: Ս. Տեր-Գաբրիելյանը 16 տարեկան էր, երբ ընդունվեց ՌՍԴԲԿ շարքերը (1902 թ.) ու նետվեց հեղափոխական շարժման հորձանուտը: Այստեղ՝ Բաքվում, հեղափոխական մեծ պայքարի բովում նա թրծվում ու կոփվում է, դառնում նավթաշխարհի պրոլետարիատի աչքի ընկնող կազմակերպիչներից ու ղեկավարներից մեկը:

Այդ առումով էլ արժեքավոր են Ս. Տեր-Գաբրիելյանի ժողովածուում զետեղված այն նյութերն ու հուշերը, որոնք վերաբերում են նավթաշխարհի քաղաքական-հեղափոխական իրադարձություններին, հատկապես Բաքվի հերոսական կոմունայի ժամանակաշրջանի անցքերին:

1927 թվականի հուլիսի 21-ին, ելույթ ունենալով ՀամԿ(բ)Կ Կենտկոմին առընթեր կուսակցության պատմության ինստիտուտին աջակցող ադրբեջանական խմբի նիստում, նա պատմում է առաջին իմպերիալիստական պատերազմի նախօրեին, ինչպես և պատերազմի տարիներին Բաքվի պրոլետարիատի հեղափոխական պայքարի առանձին դրվագների, մասնավորապես 1914 թվականի հունիսին բոլշևիկների ղեկավարությամբ կազմակերպված նավթահանքերի բանվորների հիսունհազարանոց համընդհանուր գործադուլի մասին, որի անմիջական ղեկավարներից էր ինքը՝ Ս. Տեր-Գաբրիելյանը:

Փետրվարյան հեղափոխությունից հետո նա ընտրվում է Բաքվի քաղաքային շրջանի բանվորական սովետի դեպուտատ և, որպես սովետների համառուսաստանյան առաջին խորհրդակցության պատվիրակ, մեկնում Պետրոգրադ: Ս. Տեր-Գաբրիելյանն իր ելույթում ջերմորեն է հիշում այն օրը, երբ իրեն բախտ վիճակվեց առաջին անգամ տեսնել Վ. Ի. Լենինին, լսել նրա ճառերը Ֆինլանդական կայարանում զրահապատի վրայից և Կշեսինսկայայի պալատի պատշգամբից, ինչպես նաև նրա Պրոլետարիատի խնդիրները տվյալ հեղափոխության մեջ զեկուցումը, որը հայտնի է Ապրիլյան թեզիսներ անունով: Խանդավառված մեծ առաջնորդով և թևավորված մոտալուտ

* *Սահակ Տեր-Գաբրիելյան, Հոդվածներ, ճառեր, փաստաթղթեր: «Հայաստան» հրատ. 1979 թ.:*

գալիքով, Ս. Տեր-Գաբրիելյանն այդ թեզիսների տպագիր տեքստով վերադառնում է Բաքու և այն հանձնում Ստ. Շահումյանին:

1918 թվական... Ծանր ու օրհասական օրեր էր ապրում Բաքվի կոմունան: Սովետական Բաքուն պաշարված էր օտարերկրյա ինտերվենտների և սպիտակգվարդիականների կրակե օղակով, չկար պարեն ու ռազմամթերք, բուրժուական նացիոնալիստական կուսակցությունները հրահրում էին ազգամիջյան կռիվներ: Այդ պայմաններում, հիշում է Ս. Տեր-Գաբրիելյանը, Բաքվի պրոլետարիատն իր առաջնորդների՝ Ստ. Շահումյանի, Ալ. Ջափարիձեի, Վ. Ֆիոլետովի, Մ. Ազիզբեկովի և այլոց ղեկավարությամբ հերոսաբար կռվում էր արտաքին ու ներքին հակահեղափոխական գերակշիռ ուժերի դեմ: Մարտնչողների առաջին շարքերում էր նաև հուշերի հեղինակը, որն այդ ժամանակաշրջանում հեռախոսային կայի կոմիսարն էր, ապա հակահեղափոխության դեմ պայքարող արտակարգ հանձնաժողովի նախագահը, նավթի ու նավթամթերքների բաշխման ու առաքման գծով կոմիսար, բանվորների, զինվորների և նավաստիների դեպուտատների Բաքվի սովետի գործկոմի անդամ: Այդ են հաստատում Ստ. Շահումյանի և Ալ. Ջափարիձեի ստորագրությամբ Ս. Տեր-Գաբրիելյանին տրված վկայականների ու մանդատների պատճենները, որ ներկայացված են ժողովածուում:

Կուսակցության Բաքվի կոմիտեի որոշմամբ 1918 թվականի մարտի վերջին Սահակ Տեր-Գաբրիելյանը մեկնում է Մոսկվա՝ նավթարդյունաբերության ազգայնացման և Բաքվին ռազմական ու պարենային օգնություն կազմակերպելու խնդրով: Իր հետ յոթ շոգենավով նավթ էր նա տանում Մոսկվա:

Վլադիմիր Իլյիչն ընդունում է Սահակ Տեր-Գաբրիելյանին, երեք ժամ զրուցում նրա հետ. հանգամանորեն ծանոթանալով Բաքվի իրադարձություններին, Իլյիչը խոստանում է բոլոր միջոցներով շտապ օգնություն հասցնել նավթաշխարհի մարտնչող պրոլետարիատին:

Վերադառնալով Բաքու՝ 1918 թ. հունիսի 28-ին Բաքվի կուսակցական կոնֆերանսում նա զեկուցում է Մոսկվա կատարած իր առաքելության արդյունքների մասին, որի լրագրական հաշվետվությունը տպագրված է ժողովածուում: «Պետք է ասեմ,— նշված է զեկուցման շարադրանքում,— որ ընկ. Լենինը բանիցս արտահայտեց իր հիացմունքը Բաքվի խորհրդի քաղաքականության և իր թանկագին ընկ. Շահումյանի նկատմամբ: Նա հայտնեց իր մշտական պատրաստակամությունը՝ բարոյապես և նյութապես աջակցելու Բաքվի պրոլետարիատին»:

Ս. Տեր-Գաբրիելյանի Ընկեր Շահումյանի առաջին ձերբակալությունը «Ցենտրոկասպի» կողմից ու դաշնակցականների և էսէռների նենգությունները ու խարդախությունները խոբագրով հուշերը որոշակի լույս են սփռում տվյալ ժամանակաշրջանում Բաքվի քաղաքական իրադարձությունների պատմության վրա, մերկացնում իմպերիալիստների հետ գործարքի մեջ մտած ներքին հակահեղափոխության ստոր դավերը:

1918—1919 թվականներին Սովետական Ռուսաստանը վառելիքի հարցում գտնվում էր ծանր, կրիտիկական վիճակում: Այդ դրությունից դուրս գալու գործում բացառիկ դեր է խաղացել Ս. Տեր-Գաբրիելյանը: Դժվարին պայմաններում, Բաքվի պրոլետարիատի անձնուրաց ջանքերով մի քանի ամսում Ռուսաստան է առաքվում 86 միլիոն փութ նավթ: Առաջնորդը մեծ վստահություն էր տածում Սահակ Միրզոյիչի նկատմամբ: Այդ են հաստատում Վ. Ի. Լենինի ստորագրությամբ այն մանդատները ու վկայականները, որով ՌՍՖՍՀ ժողտնտխորհի վառելիքային բաժնին կից նավթի գլխավոր կոմիտեի անդամ Ս. Տեր-Գաբրիելյանը նշանակվում է վառելիքի բոլոր տեսակների առաքման արշավախմբի կոմիսար. անձամբ լիազորված Իլյիչի կողմից՝ նա կազմակերպում և ղեկավարում էր Բաքվից նավթի ու նավթամթերքների առաքումը դեպի երկրի արդյունաբերական կենտրոններ:

Սահակ Տեր-Գաբրիելյանը Հայաստանում սովետական կարգերի հաստատման ակտիվ մասնակիցներից ու կազմակերպիչներից է: Նա եղել է Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների, այսպես կոչված, արտասահմանյան բյուրոյի կազմում, ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյի լիազորը Հայաստանում, ՀԿ(բ)Կ Կենտկոմի և Հայաստանի հեղափոխական կոմիտեի անդամ:

Հայաստանը սովետական սոցիալիստական հանրապետություն հռչակելու մասին Հայաստանի հեղափոխական կոմիտեի դեկլարացիան և Վ. Ի. Լենինին հղած ողջույնն ի թիվս այլոց ստորագրել է նաև Ս. Տեր-Գաբրիելյանը: Ցավոք, այդ մասին հիշատակված չէ ոչ ժողովածուի առաջաբանում և ծանոթագրություններում և ոչ էլ նրա կյանքի տարեգրության մեջ:

1920 թ. դեկտեմբերի 12-ին Հայհեղկոմի որոշմամբ Ս. Տեր-Գաբրիելյանը հաստատվում է ՌՍՖՍՀ-ում Սովետական Հայաստանի լիազոր-ներկայացուցիչ, իսկ մեկ օր անց Կրեմլում Վ. Ի. Լենինն ընդունում է Հայհեղկոմի անդամներ Ս. Տեր-Գաբրիելյանին և Ասք. Մռավյանին ու զրուցում նրանց հետ: Այդ հանդիպման մասին հետագայում նա տարբեր առիթներով անդրադարձել է իր ելույթներում: Անդրֆեդերացիայի կազմավորումից հետո նա նշանակվում է ՍՍՀՄ կառավարությանը կից Անդրկովկասյան ֆեդերացիայի լիազոր-ներկայացուցիչը:



1920 թվականի դեկտեմբերի 22-ին հանդես գալով ՌՍՖՍՀ սովետների VIII համագումարում, Սովետական Հայաստանի պատվիրակը ազատագրված հայոց լեռնաշխարհի աշխատավորների անունից եղբայրական ջերմ ողջույն է հղում Սովետական Ռուսաստանին: «Ընկերնե՛ր,— ասում է նա,— արևելքում միջազգային իմպերիալիզմի մի ամրոց ևս քանդվեց՝ այս անգամ Հայաստանի աղքատ աշխատավորների ճնշման տակ»: Ս. Տեր-Գաբրիելյանը վստահեցնում է բանվորագյուղացիական Ռուսաստանի ներկայացուցիչներին, որ «Հայաստանի բանվորական և գյուղացիական զանգվածները այսպիսի ծանր րոպեին անգամ պատրաստ են Արևելքի դարբասների առջև լինելու Երրորդ կոմունիստական Ինտերնացիոնալի գաղափարների հավատարիմ պահապանները ու լավագույն իրականացնողները Արևելքում»: «Բոլոր ժողովուրդները,— իր ելույթում այնուհետև ասում է նա,— այդ թվում նաև դժբախտ, հալածված և այժմ սովամահ Հայաստանը, կապրեն նոր, երջանիկ կյանքով, երբ աշխարհի տիրակալը կլինի միայն խաղաղությունը»:

Բոցաշունչ լենինյանի և ժողովուրդների եղբայրական բարեկամության մեծ ջատագովի այս խոսքերը եղել են նրա ողջ կյանքի իմաստը և պետական բազմաբեղուն գործունեության ելակետը: Այդ ոգով էր տոգորված նրա գործունեությունը Մոսկվայում՝ լիազոր-ներկայացուցչի պոստում: Ողջ եռանդն ու ուժերն ի սպաս է դրել սովետական ժողովուրդների, առաջին հերթին ռուս ժողովրդի հետ բարեկամության, տնտեսական ու կուլտուրական կապերի ամրապնդման, Հայաստանի և Անդրկովկասի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման գործին: Ժողովածուում զետեղված դիմումները, նամակները ու հարցազրույցները ևս որոշ պատկերացում են տալիս Ս. Տեր-Գաբրիելյանի տվյալ ժամանակաշրջանի արդյունավետ գործունեության, Սովետական Ռուսաստանի կողմից Հայաստանին ու երկրամասին ցույց տրված անշահախնդիր օգնության մասին: «Ռուսաստանը,— ասել է նա 1921 թվականի սեպտեմբերին Հայհեռագործի աշխատակցի հետ ունեցած զրույցում,— նույնիսկ իր տնտեսական ամենածանր օրերին, որպիսին է այժմ, չի մոռացել և չի մոռանում իր բարոյական ու տնտեսական օժանդակությունը Հայաստանին հասցնելու»:

«Իզվեստիա» թերթի 1921 թ. հունիսի 25-ի համարում տպագրված «Թուրքական գազանությունները Հայաստանում» հաղորդագրությունը պատմում է 1920 թվականի վերջին և 1921 թ. սկզբին Ալեքսանդրապոլի և Ղարաքիլիսայի գավառներում խաղաղ բնակչության նկատմամբ թուրքական օկուպանտների վայրագությունների մասին: ՌՍՖՍՀ-ում Թուրքիայի դեսպանությունը փորձեց հերքել այդ հաղորդագրությունը: Սովետական Հայաստանի լիազոր-ներկայացուցիչը թերթի խմբագրությանն ուղղած իր նամակում հիմնավոր ու կոնկրետ փաստերով մերկացնում է հայ խաղաղ բնակչության նկատմամբ թուրք ցեղասպանների այդ նողկալի ոճրագործությունները և բացահայտում դեսպանության նենգամտությունը:

Ս. Տեր-Գաբրիելյանը 1921 թվականին վճռական ձայնի իրավունքով մասնակցում է ՌԿ(բ)Կ X համագումարի նիստերին, որպես Հայաստանի կոմկուսի պատվիրակ, կոմունիստական ինտերնացիոնալի III կոնգրեսին և ՌՍՖՍՀ սովետների X համագումարում ընտրվում համառուսաստանյան կենտգործկոմի անդամ:

Սահակ Տեր-Գաբրիելյանը 1928—1935 թվականներին եղել է Սովետական Հայաստանի ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահը: Դա այն ժամանակաշրջանն էր, երբ Հայաստանի աշխատավորները սովետական ողջ ժողովրդի հետ մեկտեղ, հերոսական ջանքեր էին գործադրում՝ կենսագործելու հանրապետության ինդուստրացման, գյուղի սոցիալիստական վերակառուցման և կուլտուրական հեղափոխության ծավալման առաջին երկու հնգամյակների պլանները:

Հայաստանի կոմկուսի VI համագումարում (1929 թ. հունվար) կառավարության նախագահը հանդես է գալիս «Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման հեռանկարները» զեկուցմամբ, ուր նա հիմնական գծերով բնութագրում է, թե առաջին հնգամյակում ինչպես և ինչ ուղղություններով է զարգանալու հանրապետության էկոնոմիկան: Իսկ զարգացման հեռանկարները հիրավի հոյակապ էին: «Մեր պլանը,— ասված է զեկուցման մեջ,— ամբողջ Միության պլանի մի մասն է, այդ պլանի իրագործումը կյանքում պետք է ապահովի սոցիալիզմի նորմալ կառուցումը մեր երկրում»: Եվ վստահ հանրապետության աշխատավորների ստեղծագործական ուժերին, նա հավաստիացնում է համագումարին, որ հնգամյակի բոլոր ծրագրումները կկատարվեն հաջողությամբ:

Հետագայում, կուսակցության և սովետների համագումարներում ունեցած իր զեկուցումներում ու ելույթներում, կառավարության հաշվետվություններում և պարբերական մամուլում հրապարակված հոդվածներում Ս. Տեր-Գաբրիելյանը, սեղմ ու հակիրճ օգտագործելով խոսուն թվեր ու փաստեր, բնութագրում է հանրապետության տնտեսության ու կուլտուրայի վերընթացը, խոր և համակողմանի վերլուծում կուսակցության տնտեսական քաղաքականության իրականացման արդյունքները, երկրի առջև ծառացած խնդիրները:

Իսկ ձեռք բերվածը, իրոք, մեծ էր ու տպավորիչ: Սովետական Հայաստանը վերածվում էր ինդուստրիալ-ագրարային երկրի: Գործարկվել էր Ձորագէսը, կառուցվում էին Քանաքեռի հիդրոէլեկտրակայանը, հիդրոտեխնիկական այլ օբյեկտներ, ջուր էր ստանում պապակած հողը, զարգանում էին հանքային ու շինարարական ինդուստրիան, քիմիական, սննդի, թեթև արդյունաբերությունը, ուրվագծվում էին Սևան—Զանգու հիդրոտեխնիկական կասկադի մյուս կայանները, ոռոգման ջրանցքները, սինթետիկ կաուչուկի գործարանը, վերածնվում էր սովետական գյուղը, բուռն թափով զարգանում էին հայ արվեստն ու կուլտուրան, շենանում քաղաքներն ու գյուղերը: Կառավարության նախագահը հմտորեն ղեկավարում էր հանրապետության տնտեսական շինարարությունը: Նա այնտեղ էր, ուր ստեղծագործում ու կերտում էր աշխատավոր մարդը:

Ս. Տեր-Գաբրիելյանն անհաշտ էր աշխատանքում տեղ գտած թերությունների, սխալների նկատմամբ: Իր վերջին ելույթներից մեկում՝ սովետների Անդրկովկասյան VII համագումարում (1935 թ. հունվար) նա ասում էր. «Մենք հանդիսավոր հիմն ենք երգում մեր հաղթանակների առթիվ, սակայն մենք նաև քննադատության արճճե ծանր խոսքերով քննադատում ենք այն, ինչ մենք վատ ենք կատարել: Մենք ամենևին չենք վախենում այդ քննադատությունից և նրա կրակի տակ ծավալում ենք մեր հետագա շինարարությունը»: Նա խարազանում էր անտնտեսավարությունն ու թափթփվածությունը, սոցիալիստական օրինականության խախտման առանձին երևույթներ, այն ամենը, ինչ կասեցնում էր մեր առաջընթացը:

Ս. Տեր-Գաբրիելյանն իր գործունեության ընթացքում հատուկ ուշադրություն է նվիրել աշխարհով մեկ սփռված տարագիր հայ աշխատավորների հայրենադարձությանը, եղել է հայ գաղթօջախներում: Ներգաղթի կազմակերպմանը նա հանգամանորեն անդրադարձել է սովետների VI համագումարում կառավարության հաշվետվության մեջ, լրագրական հարցազրույցներում (Ընկ. Տեր-Գաբրիելյանի զրույցը պ-ն Նանսենի հանձնաժողովի մասին, Ընկեր Սահակ Տեր-Գաբրիելյանն արտասահմանում, Ներգաղթի կազմակերպման շուրջը և այլն):

Ժողովածուում զետեղված են Աք-Մոավյանի մահվան կապակցությամբ Ընկերոջ և զինակցի հիշատակին, Հայաստանի լենինյան կոմերիտմիության 15-ամյակին նվիրված հոդվածները, «Նյու Յորք թայմսի» թղթակից Դյուրանտիի հետ ունեցած հարցազրույցի լրագրական շարադրանքը, զրույցը ֆրանսիացի նշանավոր գրող, կոմունիստ Ժան Ռիշար Բլոկի հետ:

Ժողովածուի կազմողներն ու հրատարակիչները շնորհակալ գործ են կատարել: Ցանկալի է շարունակել պրպտումները, ի մի հավաքել մեր կուսակցության անվանահանգ մարտիկ Սահակ Տեր-Գաբրիելյանի գրական ժառանգությունը, նրա գործունեությանը վերաբերող նյութերն ու փաստաթղթերը: Լենինյան գվարդիայի զինվորների կյանքն ու արգասալի գործունեությունը, նրանց կոմունիստական տոկունությունն ու կորովն արտացոլող նյութերի հրապարակումը մեծ նշանակություն ունի երիտասարդության գաղափարախոսական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության համար:

Ցավոք, ժողովածուում զետեղված առանձին նյութերում նկատվում են թարգմանական և սրբագրական վրիպակներ: Տպագրված լուսանկարների տակ չկան տարեթվերը, նշվում են միայն ազգանունները: Որպես կանոն, փաստաթղթերը, տպագրելով ըստ բնագրերի, նշված չէ՝ ո՛ր կազմակերպությունն ու հիմնարկությունն է այն տվել, և խմբագիրները հարկադրված այդ մասին հիշատակումներ են արել տողատակի ծանոթագրություններում:

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՄԵԾ ՄԱՆԿԱՎԱՐԺԻ ԾՆՈՐՀԱԿԱԼ ՎԱՍՏԱԿԸ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՊԱՏՄԱԿԱՆ խոշոր իրադարձություններն իրենց անխուսափելի դրոշմն են դնում աճող սերնդի կյանքի ընթացքի վրա: Մանկավարժության առջև բնականորեն ծառանում են նոր խնդիրներ, ծագում նոր պրոբլեմներ, և հասարակությունն ուղիներ է փնտրում դրանց լուծման համար:

Դարակազմիկ հեղաշրջումների դժվարին մի շրջանում՝ սովետական իշխանության հաստատման առաջին տարիներին, ձևավորվեց սովետական մանկավարժության մեծ երախտավորի՝ Ա. Ս. Մակարենկոյի տաղանդը: Մակարենկոն փրկարար կամուրջ դարձավ որբ մանուկների, անապաստան ու անհեռանկար թվացող դեռահասների և կյանքի միջև: Կես դարից ավելի է, ինչ ժամանակի դժվարին քննությունը բռնած նրա մանկավարժական հայացքները ուղենիշ են սովետական մանկավարժների բազմահազար բանակի համար:

Հայրենական պատերազմը դեռ չէր ավարտվել: Ահաբեկ մանուկների ականջներում դեռ չէր լռել ֆաշիստական կործանիչ ինքնաթիռների չարագույժ հռնդյունը: Ռումբի բեկորները կրծքում, հոգում կյանքի հավատ ու երազանք, ռազմաճակատային հոսպիտալից իր գյուղական դպրոցը վերադարձավ մի ջահել ուսուցիչ: Ով կկռահեր, թե երկու-երեք տասնամյակ հետո սովետական ժողովուրդը Մակարենկոյի անվան կողքին արժանի հպարտությամբ կդներ և նրա՝ Վասիլի Ալեքսանդրովիչ Սուխոմլինսկու անունը:

Հիմա Սուխոմլինսկին ընդհանուր ճանաչում է գտել մեր երկրում, որպես ժամանակակից մանկավարժական մտքի առաջին հեղինակություն: Նրա աշխատությունները սփռվել են աշխարհով մեկ, վաստակելով նաև այլալեզու ընթերցողի հարգանքն ու հավատը: Մանկավարժները սովորում են Սուխոմլինսկուց մարդկային հոգին կրթելու բարդ արվեստը: Ծնողները զավակների դաստիարակության հետ կապված դժվարությունների պահին դիմում են նրա հարուստ փորձին ու հեղինակությանը:

Սուխոմլինսկին իր կյանքի անժամանակ ավարտին ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ էր, սոցիալիստական աշխատանքի հերոս: Նրա պատկառելի գիտական ժառանգության և ոչ մի տողը հայեցողական չէ ու չի ծնվել գիտնականի ներփակ կաբինետում, միայն այլ մտքերի հետ ունեցած հաղորդակցությունից՝ գրքերի միջոցով: Նա իր ամբողջ կյանքն ապրեց որպես գյուղական դպրոցի ուսուցիչ: Ճուրջ քսանվեց տարի՝ 1946 թվականից մինչև իր մահը, նա Ուկրաինայի Կիրովոգրադի մարզի Պավլիշի միջնակարգ դպրոցի դիրեկտորն էր: Սուխոմլինսկին ո՛չ միայն իր սաների առօրյայի հոգածու կազմակերպիչն էր, այլև անմիջական մասնակիցը, ո՛չ միայն պատկառազդու դաստիարակը, այլև բարեկամն ու մտերիմը: Նրա գրքերի էջերում լսվում է մանկական հոգիների կենդանի բաբախյունը: Այստեղից են գալիս Սուխոմլինսկու գիտական ժառանգության կենսունակության արմատները:

«Ի՞նչն է եղել ամենակարևորը իմ կյանքում: Առանց տատանվելու պատասխանում եմ՝ սերը երեխաների նկատմամբ» (Վ. Ա. Սուխոմլինսկին դաստիարակության մասին: Երևան, «Լույս», 1976, էջ 13): Այդ խորունկ սիրով էր համակված նրա ողջ գործունեությունը դպրոցում, ուր ուրվագծվել, համոզմունք են դարձել տաղանդավոր մանկավարժի հայացքները:

Երիտասարդական տարիներին ձևավորված իր համոզումները կենդանի ստեղծագործական աշխատանքում ստուգելու նպատակով, 1951 թ. սեպտեմբերին, Սուխոմլինսկին առանձնացրեց փորձարկվող երեխաների մի խումբ Պավլիշի փոքրիկ բնակիչներից: Երեսունմեկ երեխա էին՝ տասնվեց տղա, տասնհինգ աղջիկ. բոլորը վեց տարեկան: Պատերազմի արհավիրքներից ահաբեկ երեխաներ էին, ոմանք խեղված կամ որբացած: Ճատերի աչքերում անհոգ ժպտի տեղ սարսափ կար, նայում էին չար, չվստահող: Կհաջողվի՞ նրանց վերադարձնել կորցրած մանկությունը, հավատը բարուն ու արդարությանը:

Անցան առաջին դժվարին ամիսները: Համակ նվիրումի տարիներ անցան աննահանջ, սևեռուն ջանքով: Փոքրիկների շուրջն աշխարհը պայծառացավ: Գյուղական անշուք դպրոցը դարձավ բերկրանքի օջախ, ինչպես երեխաներն էին սիրով անվանում՝ «ուրախության դպրոց»: Իրենց շրջապատող սրտագին բարու-

թյունից մանկական սրտերը ջերմացան, տրոփեցին սիրով ու կարեկցությամբ: Ուսումն ու աշխատանքը հրճվանք դարձան, կյանքի մեջ մտավ գիրքը՝ մեծ հրաշքը: Ինչպե՞ս:

Պարզ ու սրտամոտ՝ այս մասին է պատմում փոքրիկների կյանքի շրջադարձի հեղինակն ու ուղեկիցը՝ Վ. Ա. Սուխոմլինսկին իր Սիրտս նվիրում եմ երեխաներին գրքում: Թերթում ես այս ճշմարտապատում գիրքը, և հայացքիդ դեմ շունչ ու մարմին են առնում հեղինակի խոր հավատ ներշնչող համոզմունքները. «Երեխային տվեք մտավոր աշխատանքի բերկրանք, ուսման հաջողության բերկրանք»: «Երգը երեխայի առջև բացում է աշխարհի գեղեցկությունը»: «Չի կարելի ապրել անգամ մեկ օր, առանց անհանգստանալու մարդու համար»: «Դպրոցը կուլտուրայի իսկական օջախ է դառնում միայն այն ժամանակ, երբ այնտեղ թագավորում են հայրենիքի պաշտամունքը, մարդու պաշտամունքը, գրքի պաշտամունքը և մայրենի լեզվի պաշտամունքը»:

Մանկական տարիներին մարդու հոգևոր կյանքի աղբյուրը հիմնականում իրերի աշխարհն է: Անցնում են տարիներ, սկսվում է կյանքի մի նոր փուլ՝ պատանեկությունը, երբ գիտակցության դեմ լայնորեն բացվում է գաղափարների աշխարհը: Այդ երկու փուլերի միջև ընկած է անհանգիստ մի հասակ՝ դեռահասությունը:

Որքա՜ն անակնկալներ է մատուցում դեռահասը, դժվար կացության մեջ դնելով անգամ փորձառու մանկավարժներին: Ծնողները շատ անգամ շփոթված գլուխ չեն հանում այս տագնապալի, եռուն հասակից: Տարակուսած ծնողների աչքի առաջ զավակներն ասես դուրս են թռչում ընտանեկան փափուկ ու տաքուկ մթնոլորտից, նեղվում ծնողների հըսկողությունից ու գորովից, շտկում են թևերը, պատրաստվելով ճախրի, պրպտուն, քննախույզ նայում են հեռուները, անփորձ, բայց համարձակ դատողություններ անում հասարակական լայն մասշտաբներ ունեցող հարցերի շուրջ, սկսում են փիլիսոփայել: Հետազոտում են իրենց արմատները, ակունքները, դառնում անհանգիստ, պոռթկուն ու ըմբոստ, ավելի ու ավելի ընդգծված է արտահայտվում անհատականությունը. ձևավորվում է քաղաքացին:

Ինչպե՞ս փոխըմբռնման հասնել դեռահասի հետ, նվաճել նրա վստահությունը, ինչպե՞ս ղեկավարել նրա հոգեկան զարգացումը: Այս հարցերին է պատասխանում Վ. Ա. Սուխոմլինսկին իր հաջորդ գրքով, որն այսօր դարձել է նաև հայ ընթերցողի սեփականությունը*:

Աշխատության գլխավոր արժանիքը մանկավարժական պրոբլեմների լայն ընդգրկումն է: Գրքով ծայրից ծայր կարմիր թելի պես անցնում է մի գաղափար՝ հեղինակի խոր հավատը դաստիարակության ուժի նկատմամբ:

Անդրադառնալով դեռահասի դաստիարակության հետ կապված խնդիրներին՝ գիրքը ներկայացնում է նրա հոգում տեղի ունեցող խոր փոփոխությունները, դրանց ֆիզիոլոգիական և սոցիալական հիմքերը:

Մանկավարժների ու ծնողների շրջանում լայնորեն տարածված մի մտահոգություն կա՝ պահպանել դեռահասին վատ ազդեցություններից: Սուխոմլինսկին ցույց է տալիս, որ դաստիարակության բուն խնդիրը դեռահասին հնարավոր վատ ազդեցություններից մեկուսացնելը չէ, այլ առաջին հերթին այն, որ նա անընկալունակ դառնա որևէ բարոյազուրկ արարքի նկատմամբ: Ովքե՞ր են իրավախախտումներ կատարող դեռահասները: Հետազոտությունները հաստատում են, որ նրանք, աննշան բացառությամբ, զավակներն են այն ընտանիքների, որտեղ իշխում է հոգևոր աղքատությունը՝ իմացական հետաքրքրությունների, բարոյական պահանջմունքների ու հարաբերությունների աղքատությունը և, այս ամենին ի լրումն, դպրոցում իշխում է անտարբերության մթնոլորտ սաների կյանքի նկատմամբ: Անհնարին է չկիսել հեղինակի այն խորին համոզմունքը, որ հեշտությամբ հանցագործ է դառնում նա, ում մանկուց ծանոթ չէ իր ուժերը մերձավորներին, այլ մարդկանց նվիրելու բերկրանքը, ում հոգում չեն անում կարեկցության, մարդկային հպարտության ու պարտքի առողջ սերմերը:

Սուխոմլինսկին ներգործության հզոր միջոց է համարում դաստիարակությունը խոսքի միջոցով, որը պահանջում է բարձր կուլտուրա: Խորամուխ մանկավարժի խելացի, անկեղծ խոսքը պատանու և աղջկա հոգում գտնում է բուռն արձագանք: Առաջանում է այն բանի խոր ապրումը, որ իր կողքին մարդն է՝ իր ուրախություններով, տխրություններով, հետաքրքրություններով, կարիքներով: Համոզիչ է հեղինակի եզրակացությունը. ոչ մի կոլեկտիվ միջոցառում չի կարող փոխարինել մարդկային հոգու այդ խորապես անհատական վերաբերմունքին: Բայց խոսք էլ կա՝ չոր, պաշտոնական, անտարբեր ու աններբանկատ, որ ունքը շինելու տեղ աչքն է հանում:

Հեղինակը ցույց է տալիս, որ դեռահասի և հանցանքի միջև անսասան պարսպի պես կանգնած է նաև գեղեցկի զգացումը: Այս ըզգացման աղբյուրն են գեղեցիկը բնության մեջ, մարդկային ստեղծագործության մեջ և առաջին հերթին՝ գեղեցիկը դեռահասին շրջապատող մարդկանց վարքագծում, մարդկային

* Վ. Ա. Սուխոմլինսկի, Քաղաքացու ծնունդը, Երևան, «Լույս», 1978, 344 էջ:



կենդանի փոխհարաբերություններում առկա գեղեցիկը:

Լինում է՝ ծնողների և ըմբոստացած դեռահասների բախումներում հայտնվում են զայրույթին հաջորդող վիրավորանքների տարափ, անգամ գործի են դրվում բռունցքն ու կաշեգոտին: Այս գիրքն ընթերցող ծնողը ներքուստ կարմրում է, եթե ունեցել է նման վարքագծի պահեր, համոզվելով, որ ֆիզիկական պատիժը ծնողի բարոյական անզորության, նաև մանկավարժական ծայրահեղ տգիտության ցուցանիշ է: «Ծեծը բիրտ է դարձնում մանկան հոգին,— սովորեցնում է Սուխոմլինսկին,— ամրապընդում գռեհիկ բնազդները, բարոյազրկում է, թմրեցնում ստախոսության ու ստորաքարշության թույնով»*: Հեղինակի եզրակացությունը դառնում է և ընթերցողի համոզմունքը. կաշեգոտով դաստիարակված երեխաները անհոգի, անսիրտ մարդիկ են դառնում, հակված իրավախախտումների:

Գիրքն անդրադառնում է մանկավարժների այն հարցին, թե ինչո՞վ, հապա, փոխարինել պատիժը: Սուխոմլինսկին ցույց է տալիս, որ դաստիարակության պրոցեսում պատիժն ինչոր անխուսափելի բան չէ: Այնտեղ, ուր իշխում է փոխադարձ վստահությունն ու ջերմությունը, ուր երեխան մանկուց սովորում է կառավարել իր ցանկությունները, պատժի անհրաժեշտություն ընդհանրապես չի առաջանա:

Ամենամեծ վնասը, որ պատճառում են երեխաներին չմտածված, բորբոքված ժամանակ կիրառվող պատիժները, Սուխոմլինսկին համարում է այն, որ պատժվածին այլևս հարկավոր չէ ներքին, հոգևոր ուժեր գործադրել, որպեսզի ավելի լավը դառնա: Պատիժն ազատում է խղճի տանջանքներից:

Հեղինակի հարուստ մանկավարժական փորձը հաստատում է, որ եթե երեխային մանկությունից շրջապատել են ազնիվ արարքներ, որոնց ներգործությամբ նա ձեռք է բերել բարոյական համոզմունքներ, եթե նա փոքրուց ընտելացել է ի՛ր իսկ վարքագծին նայել կողմնակի մարդու հայացքով, ապա նրա վարքում, զգայուն խղճի հսկողությամբ, բարոյապես դատապարտելի մղումները տեղի կտան, և նրան բերկրանք կպատճառեն իր այն արարքները, որ բարօրություն են բերում ուրիշ մարդկանց:

Դեռահասության տարիներին են համընկնում և սիրո առաջին թրթիռները: Սուխոմլինսկին գտնում է, որ հարուստ, լիարժեք հոգևոր կյանքի մթնոլորտում տղաների և աղջիկների մտերմությունն ունի իդեալական, ազնիվ մղումներ: Նրանց զգացմունքը լուսավոր է, մտերմիկ, նվիրական: Դեռահասները չեն հանդուրժում, երբ մեծերը անկոչ խուժում են իրենց զգացմունքների նվիրական աշխարհը, փորձում շոշափել իրենց սիրտը «երկաթե թաթպաններով»: Սուխոմլինսկին ընթերցողին հարգանքի է կոչում այդ նվիրական զգացմունքի նկատմամբ, անհրաժեշտ է համարում, որ դպրոցից վերանան անհամեստ ու ավելորդ խոսակցությունները սաների սիրո մասին: Աններբանկատությամբ պատանեկան սրտի խորունկ ծալքերն անպատեհ քրքրելը Սուխոմլինսկին համարում է տարրական մանկավարժական կուլտուրայի պակաս: Եթե ուզում եք, որ դեռահասն ի՛նքը վստահությամբ բացվի ձեր առաջ, ինքներդ պահպանեցեք նրա հոգու նվիրական խորշերի անձեռնմխելիությունը,— կոչում է Սուխոմլինսկին:

Հանրահայտ է Լ. Ն. Տոլստոյի այն միտքը, թե բոլոր երջանիկ ընտանիքները նման են իրար, ամեն մի դժբախտ ընտանիք դժբախտ է յուրովի: Ո՛չ միայն ընտանիքում պատահած իսկապես ողբերգական դեպքերն են ցնցում դեռահասին, այլև նրան ընկճում, նվաստացնում են ծնողների հարատև, մանրախնդիր բախումները: Մանկավարժը չի կարող նման փաստերի նկատմամբ անտարբեր մնալ: Բայց որքա՜ն զգույշ, տակտով ու նրբավարությամբ նա պետք է միջամտի ընտանեկան այդ բախումներին, որպեսզի լրացուցիչ հարված չտա սաների հոգուն, քանի որ նրանք իրենցն են համարում ծնողների թե՛ պատիվը, թե՛ արատը: Մանկավարժի կոպիտ միջամտությունն ընտանեկան հարաբերություններին խոցում է դեռահասի արժանապատվությունը, կոպտացնում հոգին և, ի վերջո, օտարության պատ կանգնեցնում նրա և աշակերտի միջև:

Սուխոմլինսկին խոսելով մարդկային բիրտ բնազդների ազնվացման եղանակների մասին, շեշտում է հատկապես երկուսը՝ մոր պաշտամունքը և ողջախոհությունը, որ ազնիվ սիրո բարոյական նախադրյալն է:

Իսկ ինչպե՞ս ողջախոհություն դաստիարակել:

Սա այն խնդիրը չէ, որ լուծվեր հատկապես կազմակերպված միջոցառումներով, ասենք՝ հատուկ բանավեճերով կամ սեռական հասունացման օրինաչափությունների մասին բժշկի զրույցով: Հարցի այսպիսի պատկերացումը հեղինակն իրավամբ համարում է չափազանց պարզունակ և ապարդյուն: Շատ անգամ նման բանավեճերը գռեհկացնում են այն ազնիվն ու վեհը, որն անխզելի է աղջկական ամոթխածությունից: Նման խոսակցությունների բաց ու կոնկրետ-գործնական բնույթը ցավոտ հետքեր է թողնում դեռահասի հոգում, թողնում է խոր վիրավորանք: «Որքան կարելի է քիչ հետաքրքրասիրություն դեպի աղջկա սեռական հա-

* Վ. Ա. Սուխոմլինսկի, Քաղաքացու ծնունդը, էջ 16:

սունացումը և որքան կարելի է ավելի շատ մարդկայնություն ու սրտագինություն դեռահասների կոլեկտիվի փոխհարաբերություններում. ահա թե որն է ճիշտ սեռական դաստիարակության ուղին»*:

Սուխոմլինսկին ընդգծում է, որ սեռական հասունացման մասին զրույցներն անառողջ հարցասիրություն չեն բորբոքում միայն այն դեպքում, երբ դպրոցը ոգեշնչված է մոր պաշտամունքով, երբ դպրոցում կնոջ նկատմամբ տիրում է վսեմ, ողջախոհ վերաբերմունքի ոգին, և մայրությունը գիտակցվում է որպես ամենավիթխարի բարոյական հարստություն: Պատանու և աղջկա, կնոջ և տղամարդու փոխհարաբերություններում ազնվաբարոյության ծառը կանաչում է այն դեպքում միայն, եթե դրա արմատները սնում են մարդկային արժանապատվությունը և անհանդուրժողականությունը մարդու նվաստացման և աղտոտման նկատմամբ: Այս զգացմունքների ձևավորումն ինքնին ապահովում է և ողջախոհությունը:

Այն, թե դեռահասը որքանով է հոգեպես պատրաստ կնոջ մեջ սիրելու ամենից առաջ մարդուն, իհարկե, մեծ չափով կախված է նաև նրա հոր և մոր հարաբերությունների ազնվությունից, մաքրությունից ու նրբությունից:

Գրքի մեկ գլուխ նվիրված է մասնավորապես պատանեկության հակասություններին:

Թերևս ոչ մի այլ հասակում մարդ այնքան զգայուն չէ այն հակասությունների նկատմամբ, որ հայտնաբերում է իր հոգում պատվաստված բարոյական համոզմունքների և իրեն շրջապատող մարդկանց իրական վարքագծի միջև, որքան պատանեկության տարիներին: Մի կողմից՝ անհաշտություն չարի, անարդարության նկատմամբ, պատրաստակամություն պայքարելու ճշմարտությունից կատարվող ամեն շեղման դեմ, մյուս կողմից՝ կյանքի բարդ երևույթներն ըմբռնելու անկարողություն: Եվ այդ հակասությունը երբեմն պոռթկում է պատանու բուռն զայրույթով: Ամեն առումով չէ, որ այդ զայրույթը վատ է: Լավ է անհաշտությունը չարի հանդեպ, ատելությունը, նողկանքը այն ամենի նկատմամբ, ինչ նսեմացնում է իր պատկերացումը բարու և ճշմարտության մասին: Ջուր լցնել դեռահասի սրբազան զայրույթի վրա, կեղծելով քողարկելու փորձ անել այն, ինչ վրդովել է դեռահասին, նշանակում է աղճատել նրա հոգին, քար նետել ճշմարտությանը շիփ-շիտակ նայող, ուղղամիտ քաղաքացու ձևավորման ճանապարհին: Դաստիարակի հորդորը՝ բոլոր հանգամանքներում լինել շրջահայաց, շրջանցել սուր անկյունները, չտեսնելու տալ դատապարտելին, առաջացնում է երկչոտություն, երկերեսանիություն, անտարբերություն:

Բարոյական ճշմարիտ դաստիարակության համար պետք է ո՛չ միայն բորբոքել ազնվության հուրը, այլև իմաստուն կարողությամբ ճիշտ հունի մեջ դնել սանի հոգեկան ակտիվությունը, ձգտումը կատարյալին:

Սովետական մանկավարժության կարևորագույն խնդիրներից է ձևավորվող քաղաքացու գաղափարական-քաղաքական դաստիարակությունը:

Մերկապարանոց խորհրդածությունները, թեկուզ ամենավեհ գաղափարների մասին, դաստիարակելու իրենց միտումով տաղտուկ են պատճառում դեռահասին: Սուխոմլինսկին ընդգծում է, որ գաղափարները կյանքի սուրբ կանոններ են դառնում այն ժամանակ միայն, երբ ապրում են մարդու սրտում: Մեծ գաղափարներն անհնար է պատկերացնել առանց բուռն զգացմունքների: Նույնիսկ ամենանվիրականը՝ հայրենիքի գաղափարը, չի կարող պատանի հոգու համար դառնալ սրբություն սրբոց, եթե մանկավարժն իր հիմնական գործը համարի այդ գաղափարի լոկ պրոպագանդումը: Սուխոմլինսկին հիշեցնում է, որ այդ մեծ զգացմունքի ակունքները գալիս են վաղ մանկությունից՝ ջերմացած հայրենի տան, հայրենի եզերքի սիրով, մայրենի լեզվի գեղեցկությամբ: Տարիների հետ հայրենիքի պատկերն ընդլայնվում է, դառնում ավելի ու ավելի ընդգրկուն, թանկ ու նվիրական են դառնում նրա անցյալը, ներկան, ժողովրդի երազանքները, գալիքը: Այս ճանապարհով է ծնվում այն համոզմունքը, որ առանց հայրենիքի՝ մարդ դադարում է անձնավորություն լինելուց, որ ինքն էլ իր ժողովրդի մի մասնիկն է, նրանից անխզելի: Այս ճանապարհով են ծնվում խորապես գիտակցված և համակ հոգով ապրված հպարտությունն ու պարտքի զգացումը հայրենիքի հանդեպ: Այս կերպ է պատանին, որպես քաղաքացի, գտնում իր ինքնահաստատման ճշմարիտ ուղին:

Որքա՜ն տարբեր դրդապատճառներ կան, գիտակցված և չգիտակցված, որ կառավարում են դեռահասի վարքը: Դաստիարակներ կան, որ ամեն առիթով դնում են շաբլոն հարցադրում. «Մեղավո՞ր է սանը, թե՞ մեղավոր չէ»: Սրան հաջորդում է անվերապահ պատասխանը: Եվ, չարաշահելով տնօրինողի իր վիճակը, դաստիարակը պատժում է դեռահասին, նույնիսկ հարկադրանքով «ներողություն» կորզում նրանից, թեև վերջինս բնավ էլ համոզված չէ, որ ինքը մեղավոր է: Սուխոմլինսկին ցույց է տալիս, որ ողջ ձեռքբերումը նման դաստիարակի, որի հավատամքը անվերապահ, կույր հնազանդությունն է, այլ բան չէ, քան սանի նվաստացումը, հակվելը կեղծիքի ու երեսպաշտության: Ավելին. անխոս հնազանդության ոգով դաստիարակված երեխաներին մըշ-

* Նույն տեղը, էջ 82:



տապես հատուկ է ճնշվածության զգացումը: Նրանց անմատչելի են լավատեսական, կենսուրախ աշխարհընկալումը, կյանքի բերկրանքը:

Դեռահասը չի հանդուրժում, որ ովևէ, թեկուզ ծնող կամ ուսուցիչ, իրեն դիտի որպես չեզոք էություն, որին կարող է տաշել, հղկել, փոխել ինչպես կամենա: Նա սիրում ու վստահում է առավելապես այն մանկավարժին, ում վարքագծում շեշտված չէ դաստիարակչական միտումնավորությունը: Ձևավորվող ինքնագիտակցությունը հնարավորություն է ընձեռում դեռահասին կողմնակի մարդու պես դիտելու և արժեքավորելու իր վարքագիծը: Դեռահասը ձգտում է ի՛նքը կողմնորոշվել, ի՛նքը գտնել իրեն հուզող հարցերի պատասխանը: Ճշմարտությունը նրա մեջ համոզմունք է դառնում միայն այն ժամանակ, երբ, ասես, կասկածելով իր արդարացիությանը, կշռադատում է և ինքնուրույնաբար եզրակացնում, որ պետք է վարվել այնպես, ինչպես խորհուրդ է տալիս դաստիարակը: Իր տարակուսանքներն ու առարկությունները չհանդուրժող մանկավարժի պարտադրանքը դեռահասին դրդում է հակադրվելու հանուն ինքնահաստատման:

Արծարծելով ինքնադաստիարակության հարցը՝ Սուխոմլինսկին այն համարում է դաստիարակության հզոր խթան, զորեղ ուժ, որը շարժման մեջ է դնում մարդկային արժանապատվության հզոր անիվը: Նա է վարպետ դաստիարակը, ով դեռահասին վարքագծի եղանակ թելադրելու փոխարեն հնարավորություն է տալիս, որ նա ի՛նքը մտածի, թե ինչպես դառնա ավելի լավը, պայքարի իր համար և վայելի ինքնահաղթահարման ուրախությունը:

Դեռահասը հետազոտող միտք ունի: Նա հատկապես քննախույզ է իր ուսուցչի և ծնողների նկատմամբ: Վերջիններիս խոսքի ներգործուն ուժը կախված է ոչ այնքան այն բանից, թե ինչ են ասում նրանք, որքան այն բանից, թե որքանով են ներդաշնակ նրանց խոսքն ու վարքը:

Սուխոմլինսկին անդրադառնում է այն վճռական դերին, որ կատարում է մանկավարժի անձնական նկարագիրը դեռահասի հոգեկանի ձևավորման հարցում: Գտնում է, որ եթե մանկավարժը չունի հոգեկան հարստություն, ուրեմն և չունի դաստիարակելու բարոյական իրավունք:

Դեռահասը նվիրական ցանկություններ ունի, ինքնահաստատման բուռն ձգտում: Սակայն շատ անգամ ուժերը, կենսափորձը չեն բավականացնում դրանք իրականացնելու: Նրան խորին ցավ է պատճառում, եթե ընկերների ինչպես նաև իր համար հեղինակավոր չափահասների շրջանում չի վաստակել հարգանք ու վստահություն: Սուխոմլինսկին մերժում է հակադրումների վրա կառուցվող դաստիարակությունը, երբ սաներից մեկին ի ցույց են դնում որպես կատարելության նմուշ, մյուսին պարսավում են: Պետք չէ նվաստացնել դեռահասին այդպիսի հակադրումներով. «Թող ամեն մեկն ունենա հպարտանալու որևէ տվյալ... Իր իսկ նկատմամբ ունեցած հարգանքը ազնիվ ու անշահախնդիր զգացում է»*: Իսկական մարդ դառնալու համար դեռահասը պետք է հարգի իրեն: Առանց դրա աներևակայելի է մարդկային կուլտուրան, աներևակայելի է անհաշտությունն այն ամենի նկատմամբ, ինչ նվաստացնում է մարդուն:

Սովետական մանկավարժության կարևոր խնդիրն է պատանի քաղաքացուն համակել բարոյական վեհ սկզբունքներով, օժտել մտքի հասունությամբ, գաղափարական նպատակասլացությամբ ու կայունությամբ:

Անդրադառնալով մտավոր զարգացման ու կրթության հարցերին՝ Սուխոմլինսկին շեշտում է կարևորությունն այն բանի, որ դեռահասի հետ շփվող բոլոր մանկավարժներն ունենան միասնական հայացքներ ու համոզմունքներ, մտավոր, բարոյական, գեղագիտական, ինչպես և հասարակական-քաղաքական ընդհանուր հետաքրքրություններ: Չէ՞ որ ուսուցիչներից յուրաքանչյուրը ո՛չ միայն գիտելիքներ է հաղորդում իր ավանդած առարկայի վերաբերյալ, այլև ձևավորում է դեռահասի աշխարհայացքը՝ վերաբերմունքը ճշմարտությունների, օրինաչափությունների, գաղափարների նկատմամբ:

Աշխարհայացքի ձևավորումն անմիջականորեն պայմանավորված է ուսուցմամբ, այն բանով, թե ի՛նչ է տեսնում, ճանաչում, իմաստավորում դեռահասը կրթության պրոցեսում: Սուխոմլինսկին նախազգուշացնում է անխոհ սերտումից, որն ամլացնում է միտքը:

Դաստիարակությունը շատ հեշտ գործ կըդառնար, եթե կախված լիներ պարզապես ճըշմարտություններ սերտելուց: Բարոյական գիտելիքները անպտուղ կմնան, եթե չդառնան համոզմունք և չհենվեն բարոյական զգացմունքների հարստության վրա, չբացահայտվեն դեռահասի բուն վարքագծում:

Սուխոմլինսկին ընդգծում է այն բացառիկ դերը, որ ունի գիրքը դեռահասի մտքի, բարոյականության, երևակայության, առհասարակ հոգեկանի զարգացման համար: «Եթե պատանիների մեջ լինեն գրքին սիրահարված շատ տարօրինակներ, մարդիկ, որոնք գիրքը գերադասում են մնացած ամեն ինչից, կվերա-

* Նույն տեղը, էջ 61—62:

նան այն պրոբլեմները, որոնց դեմ անզոր են մյուս, թվում է, հզոր միջոցները» *:

Ի՞նչն է համարում նշանավոր մանկավարժը քաղաքացու բարոյական կուլտուրայի այբուբենը. նրբանկատությունը մարդկային հարաբերություններում, երախտագիտությունը, քաղաքացիական արժանապատվությունը, հավատարմությունը ժողովրդին, սերը հայրենիքի նկատմամբ, հասարակական շահերի գիտակցությունը և հանուն դրանց անձնականը զոհաբերելու կարողությունը: Անկասկած նաև աշխատասիրությունը՝ բարոյականության արմատը: Իսկ դաստիարակության ուղին բարոյական սկզբունքների ու վարքի ներդաշնակությունն է:

Մանկավարժական այն համոզմունքները, որ ներկայացնում է Սուխոմլինսկին Քաղաքացու ծնունդը գրքում, թերևս չդառնային նաև ընթերցողի համոզմունքը, եթե ներկայացվեին առարկություն չվերցնող տոնով, որպես անբեկանելի ճշմարտություններ: Մինչդեռ հեղինակը, ասես, խորհրդածում է, սրտամոտ զրուցում ընթերցողի հետ, արտահայտում իր խոհերն ու տագնապները, քննարկում է հարցը համակողմանի, բանավիճում է, համոզում:

Սուխոմլինսկին չի առաջարկում դաստիարակության ստանդարտ դեղատոմսեր: Նրա համոզմամբ, անձնավորությունն անկրկնելի է: «Աշխարհում չկա ոչինչ՝ մարդկային անհատից ավելի բարդ ու հարուստ: Նրա համակողմանի զարգացումը, բարոյական կատարելությունը կոմունիստական դաստիարակության նպատակն է: Այդ նպատակին հասնելու ուղին նույնքան բարդ է, որքան և ինքը՝ մարդը»*: Մանկավարժությունն ստանդարտ դոգմաների պարտադրանք չէ, այլ կենդանի ըստեղծագործական աշխատանք: Յուրաքանչյուր դեռահաս կարոտ է նուրբ, խորապես անհատական վերաբերմունքի: Այլ կերպ անհնարին է հոգու կրթությունը:

Գիրքը ծայրեծայր թաթավուն է բարձր հումանիզմով, քաղաքացիական շահագրգռությամբ, պատասխանատվության մեծ զգացումով աճող սերնդի ճակատագրի համար:

Գրքի ընթերցումը հեշտ ու հաճելի է դառնում նաև գեղեցիկ, պատկերավոր լեզվի շնորհիվ, անբռնազբոս ոճի, որի մեջ նույնպես արտացոլվում է հեղինակի վճիտ, անկեղծ էությունը: Հեղինակի լեզվի և ոճի այդ առանձնահատկությունները հայերեն թարգմանության մեջ հիմնականում պահպանվել են:

Արժե, որ Քաղաքացու ծնունդը մուտք գործի ամեն մի դպրոց ու ընտանիք, դառնա յուրաքանչյուր մանկավարժի, ամեն մի ծնողի սեղանի գիրքը: Եվ ամեն տեղ արձագանք գտնի Վ. Ա. Սուխոմլինսկու՝ այդ ներհուն ու պայծառ հոգու հավատամքը. Յուրաքանչյուր երեխա մի աշխարհ է, միանգամայն բացառիկ ու եզակի:

**ՀՌԻՓՍԻՄԵ ՂԱԶՈՅԱՆ**

Հոգեբանական գիտությունների թեկնածու, դոցենտ

* *Նույն տեղը, էջ 167:*

* *Վ. Ա. Սուխոմլինսկին դաստիարակության մասին, էջ 15:*



# ՏԻԵԶԵՐՔԻ ԼՈՒՅՍԸ

*Երկար դարեր մարդկությունն ուսումնասիրել է իր մոլորակը, Արեգակնային համակարգը, մերձակա աստղերը, Գալակտիկան: Սակայն միայն մեր սերնդին հնարավորություն ընձեռվեց ձեռնամուխ լինելու Տիեզերքն ամբողջությամբ ճանաչելուն: Այդ ուսումնասիրությունների գլխավոր հետևությունը կարելի է ձևակերպել կարճ. մեզ շրջապատող աշխարհը ժամանակի ընթացքում փոփոխվում է էվոլյուցիոն կերպով:*

Տիեզերքի էվոլյուցիան նախ և առաջ դրըսևորվում է այն բանում, որ գալակտիկաների կուտակումների միջև տարածությունը ժամանակի ընթացքում մեծանում է՝ մեկ հարյուրերորդական տոկոսով երկու միլիոն տարվա մեջ: Ինչպես գիտնականներն են ասում, գալակտիկաներն ընդարձակվում են: Ուսումնասիրելով մեզ հասնող հեռավոր աշխարհների լույսը, աստղագետները սպեկտրային (տարապատկերային) գծերի տեղաշարժով որոշում են Արեգակնային համակարգի նկատմամբ դրանց շարժման արագությունը: Որքան հեռու է երկրային դիտողից Գալակտիկան, այնքան ավելի մեծ արագությամբ է այն հեռանում նրանից:

Քսաներորդ դարի տիեզերագիտության մյուս կարևոր հայտնագործությունն ամբո՛ղջ Տիեզերքը թափանցող ֆոնային տիեզերական ռադիոճառագայթումն է: Դրա ինտենսիվությունն ալիքների միլիմետրանոց և սանտիմետրանոց դիապազոններում հազարավոր անգամ գերազանցում է բոլոր հայտնի տիեզերական ռադիոաղբյուրների միագումար ճառագայթումը:

Տիեզերքը թափանցիկ է ֆոնային ռադիոճառագայթման համար: Սա Երկիր է հասնում հավասարաչափ բոլոր կողմերից, և մենք իրավունք ունենք անել հետևություն՝ ժամանակի միևնույն պահին այն ամենուրեք միատեսակ է: Դա Տիեզերքի իսկական լույսն է, որ շատ բան է հաղորդում իր կառուցվածքի մասին: Ռադիոճառագայթման և օպտիկական լույսի էությունը նույնն է՝ էլեկտրամագնիսային տատանումներ: Ռադիոալիքները, որ մենք ընդունում ենք, կազմավորվել են առաջնային պլազմայում և շիկացած նյութի լույս են եղել:

Ինչպե՞ս համատեղել Տիեզերքի ընդարձակման մասին պատկերացումն այն բանի ընդունման հետ, թե այն լեցուն է ճառագայթումով: Ընդարձակումը հանգեցնում է ճառագայթման սառեցման, ճիշտ այնպես, ինչպես այրումից հետո գազերը սառչում են ավտոմոբիլի մոտորի գլանում, շարժման մեջ դնելով մխոցը և ընդարձակվելով: Այստեղից բխում է տեսական հետևություն, թե անցյալում Տիեզերքը խիտ է եղել, նմանապես և ավելի տաք:

Համաձայն 30 տարվա վաղեմություն ունեցող Գ. Գամովի այս տեսության, էվոլյուցիայի արդի փուլը սկսվել է մոտ 15 միլիարդ տարի առաջ՝ ծայրահեղ տաք և ծայրահեղ խիտ պլազմայի ընդարձակումով: Առաջին միլիոն տարում այդ պլազման կառուցվածքազուրկ էր՝ չկային ո՛չ աստղեր, ո՛չ գալակտիկաներ, այլ միայն զանազան մասնիկներ և հակամասնիկներ, պրոտոններ, նեյտրոններ և էլեկտրոններ: Ոչ մի տեսակի բարդ միջուկներ գոյություն ունենալ չէին կարող— դրանք ճեղքվում էին տաք ճառագայթումով: Պլազմայի բաղադրությունը փոխվում էր իր ընդարձակմանը համապատասխան: Լաբորատորիաներում կատարված փորձերը հնարավորություն են ընձեռում վստահորեն հաշվարկել միջուկային ռեակցիաների ընթացքը վաղ Տիեզերքում: Անկախ նախնական բաղադրությունից, ստացվում է 75 տոկոս ջրածնի և 25 տոկոս հելիումի (ըստ քաշի) խառնուրդ: Ժամանակակից դիտումները ցույց են տալիս, որ ամենուրեք, գործնականում բոլոր աստղերում և գալակտիկաներում հելիումի քանակն անցնում է 25 տոկոսից: Սա փայլուն կերպով ապացուցում է «տաք» Տիեզերքի տեսությունը: Գոյանում է նաև քիչ քանակությամբ ծանր ջրածին (դեյտերիում), որ հատկապես կարևոր է մեզ՝ երկրաբնակներիս համար՝ կապված XXI դարի

ջերմամիջուկային կառավարվող ռեակտորներում դեյտերիում այրելու հեռանկարի հետ: Ըստ երևույթին, գործնականորեն ամբողջ դեյտերիումը Տիեզերքում առաջացել է միջուկային ռեակցիաների ընթացքում՝ դրա ընդարձակման վաղ փուլում:

Ապացուցված է, որ ամենատարածված երկրային տարրերը՝ ածխածինը, թթվածինը, երկաթը, ինչպես նաև հազվագյուտ, բայց կարևոր ուրանը, ծնվել են աստղերի ընդերքում և շրջակա տարածություն են արտանետվել դրանց պայթյունների ժամանակ: Դա տեղի է ունեցել շատ ավելի ուշ, հելիումի հիմնական քանակության սինթեզից միլիարդավոր տարիներ հետո, բայց ավելի շուտ, քան ստեղծվել են մեր Արեգակն ու Երկիրը:

Այսպիսով, Տիեզերքի պատմության հնագույն շրջանի բացահայտ հետքերը մնացել են նաև իր նյութական բաղադրությունում՝ ջրածնի, հելիումի ու դեյտերիումի ձևով և ճառագայթման սպեկտրում (տարապատկերում): Այդ հետքերի բացահայտումն ամրապնդում է այն համոզվածությունը, թե էվոլյուցիան իրոք անցել է տաք խիտ պլազմայի փուլով: Դա չի հակասում այն բանին, թե Տիեզերքը ինչ-որ ձևերով գոյություն է ունեցել նախքան իր խտացումն ու տաքացումը: Գերտաք խիտ վիճակում «այրվել են» այդ փուլի հետքերը: Այսուամենայնիվ, կարելի է վստահ հետևություններ անել Տիեզերքի զարգացման արդի փուլի ընթացքի մասին՝ անկախ դրան նախորդած վիճակներին վերաբերող հիպոթեզներից:

Տարածության մեջ Տիեզերքն անսահման է: Մինչդեռ անմիջականորեն դիտումները տվյալներ են հաղորդում միայն դրա սահմանափակ տարածքի (տիրույթի) մասին: Այստեղ դա միատարր է, միջին հաշվով դրա հատկությունները միատեսակ են մեզանից մոտ և հեռու, երկնքի հյուսիսային և հարավային կողմերում: Այստեղից շատ համարձակորեն կարելի է հետևեցնել, թե Երկրից գերհեռու չդիտվող տարածքները որակապես չեն տարբերվում մեր մերձակայքից:

Այժմ սկսվել է նոր փուլ Տիեզերքի մեծ մասշտաբի հատկությունների ճանաչման գործում: Տիեզերագետներին հետաքրքրում են միատեսակ ընդարձակվող աշխարհի իդեալական պատկերից փոքր շեղումները, և այստեղ նորից հետազոտման հզոր զենք է դարձել ֆոնային ռադիոճառագայթումը:

Պատմենք այդ ուսումնասիրությունների ուղղություններից մեկի մասին:

Որոշակի տեղում— օրինակ, այնտեղ, ուր այժմ գտնվում է Արեգակնային համակարգը— կա միմիայն մեկ կոորդինատների սիստեմ, որում տիեզերական ռադիոճառագայթումը նույն ինտենսիվությունն ունի, որ կողմն էլ որ ռադիոդիտակն ուղղելու լինենք: Իսկ մինչդեռ այն դիտողը, որը Երկրի հարաբերությամբ ռադիոդիտակի հետ միասին սլանալիս լիներ վայրկյանում 100.000 կիլոմետր արագությամբ, կտեսներ այլ պատկեր: Հանդիպակաց ռադիոճառագայթման էներգիայի խտությունը նրա համար կմեծանա, իսկ հետապնդողինը կնվազի չորս անգամ: Մեր, Երկրից դիտողներիս բախտը բանել է. մենք շարժվում ենք այնպես, որ ռադիոճառագայթումը բոլոր կողմերից գործնականում միատեսակ է:

Իսկ ի՞նչ է նշանակում «բախտը բանել»: Մենք իրավունք ունենք ասելու այն մասին, որ Երկիրը շարժվում է ռադիոճառագայթման հարաբերությամբ լույսի արագության համեմատ դանդաղ: Ֆոնային ռադիոճառագայթումը հնարավորություն է ընձեռում «շարժումը» տարբերելու «դադարից»: Երբեմն պնդում են, որ 1965 թվականին հայտնագործած ռադիոճառագայթումն իրենից ներկայացնում է «նոր եթեր», փոխարինողն այն լուսակիր եթերի, որի մասին մտածում էին XIX դարի ֆիզիկոսները: Հարկավոր է շեշտել, որ նոր հայտնագործությունները մեզ չեն վերադարձնում դեպի XIX դարի եթերը, չեն արժեզրկում հարաբերականության տեսությունը: Փակվենք լաբորատորիայում, մետաղյա վահանով պաշտպանվենք ռադիոճառագայթումից: Այդ դեպքում ցանկացած փորձը ցույց կտա, որ լաբորատորիայի դադարը կամ շարժումը ոչ մի բանի վրա չեն ազդում: Ֆիզիկայի օրենքները միատեսակ են, ինչպես ասում են գիտնականները, ինվարիանտ՝ (անփոփոխ) շարժման հարաբերությամբ: Շարժման տարբերությունը դադարից Տիեզերքի հատկանիշն է, որ լցրել է նրա ռադիոճառագայթումները, և ոչ թե ֆիզիկայի օրենքների հատկանիշը: Չէ՛ որ կամուրջներ կամ շենքեր կառուցող ինժեները Երկրի մակերեսը համարում է դադարի վիճակում գտնվող, և նա իրավացի է, թեպետև մենք քաջ գիտենք, որ մոլորակը պտտվում է իր առանցքի շուրջը և վայրկյանում 30 կիլոմետր արագությամբ մեկ տարվա ընթացքում պտույտ է գործում Արեգակի շուրջը:

Վերադառնանք ռադիոճառագայթմանը: Չափումները ճշգրտել են ամերիկյան գիտնականները և պարզել, որ ինը միլիմետր երկարության ալիքի ռադիոերկնքի պայծառությունը Առյուծի համաստեղության ուղղությամբ մեկ հազարերորդականով մեծ է, իսկ հակառակ ուղղությամբ՝ մեկ հազարերորդականով թույլ միջին մեծությունից: Նման տարբերությունը համապատասխանում է Երկրի և ողջ Արեգակնային համակարգի շարժմանը՝ վայրկյանում մոտ 400 կիլոմետր արագությամբ ռադիոճառագայթման հարաբերությամբ:

Արեգակնային համակարգը մտնում է Գալակտիկայի կազմի մեջ, որը նույնպես պտտվում է, կատարելով մեկ պտույտ 250 միլիոն



տարվա ընթացքում: Արեգակը պտտվում է Գալակտիկայի կենտրոնի շուրջը վայրկյանում 300 կիլոմետր արագությամբ: Տիեզերագիտության համար հետաքրքրական է, թե որքան արագ է մեր Գալակտիկան ընդհանրապես շարժվում ռադիոճառագայթման հարաբերությամբ: Պարզվում է, որ դրա արագությունը մոտ է վայրկյանում 600 կիլոմետրին (Արեգակի շարժումը մասնակիորեն համակշռում է Գալակտիկայի շարժումը):

Այսպիսով, մեր Գալակտիկայի արագությունը ֆոնային ռադիոճառագայթման հարաբերությամբ չափված է: Այն, պարզվեց, տիեզերական մասշտաբներով համեմատաբար փոքր է: Բնական հարց է ծագում. իսկ ի՞նչ վիճակ է տիրում հեռավոր գալակտիկաներում և դրանց կուտակումներում: Մենք գիտենք, որ դրանք «փախչում են» մեզանից վայրկյանում տասնյակ հազարավոր կիլոմետր հսկայական արագություններով: Դրանք շարժվո՞ւմ են, արդյոք, ռադիոճառագայթման հարաբերությամբ: Պարզ է, որ մեզանից հեռու, այնտեղ, ուր կան գալակտիկաների կուտակումներ, յուրաքանչյուր կետում կա ճառագայթման հարաբերությամբ «դադարի» իր հասկացությունը, կոորդինատների իր անջատ սիստեմը:

Ինչպե՞ս ապացուցել, որ փախչող գալակտիկաներն իսկապես հեռանում են իրենց շրջապատող ճառագայթումների հետ միասին: Դադարի վիճակո՞ւմ են արդյոք իրենց շրջապատող ռադիոճառագայթման հարաբերությամբ հեռավոր կուտակումները, որոնցից լույսը մեզ է հասնում միլիոնավոր և միլիարդավոր տարիների ընթացքում: Ինչպե՞ս «համապատասխանեցնել» ողջ դիտարկվող աշխարհը Տիեզերքի ընդլայնմանն ուղեկցող կոորդինատների սիստեմին: Պարզվում է, որ այսօր արդեն հնարավոր է ստանալ պատասխան, օգտվելով ժամանակակից երկրային և արտամթնոլորտային սարքերից: Ուսումնասիրման մեթոդը տեսականորեն մշակել են հոդվածիս հեղինակները: Դրա էությունը հետևյալն է:

Պետք է ուսումնասիրել երկնքի ռադիոպայծառությունը գալակտիկաների կուտակումների ուղղություններով: Ռենտգենյան դիապազոնով կատարված դիտումների տվյալներից հայտնի է, որ կուտակված գալակտիկաների միջև տարածությունը լցված է տաք միջգալակտիկայի գազով: Այն ցրում է վերը նշված ֆոնային (միապաղաղ, համասեռ, միևնույն ուժի) տիեզերական ռադիոճառագայթման ֆոտոնները: Դիտորդներն այս նախնականի հետ միասին տեսնում են նաև մի ճառագայթում, որը ցրել են գազերի ամպերի էլեկտրոնները: Ցրված ճառագայթման ինտենսիվությունը և բևեռացումը պայմանավորված են հետևյալով՝ ամպը շարժվո՞ւմ է, արդյոք, թե՞ շրջապատող ռադիոճառագայթման հարաբերությամբ դադարի վիճակում է: Դիտելով կուտակումները սանտիմետրանոց և միլիմետրանոց ալիքներով, կարելի է չափել այդ արագությունը և որոշել դրա ուղղությունը:

Խնդիրը բարդանում է նրանով, որ ամպի, որպես ամբողջի, շարժումից բացի առկա է նաև գազի էլեկտրոնների քաոսային ջերմային շարժումը՝ վայրկյանում շուրջ 30—50 հազար կիլոմետր արագությամբ: Քաոսակերպ շարժվող տաք էլեկտրոնների ցրումն ամպի կողմից հանգեցնում է կուտակումների ուղղություններում երկնքի ռադիոպայծառության նվազեցմանը: Էֆեկտը շշմեցուցիչ է իր անակնկալությամբ. ֆոտոնների բախումը տաք գազի հետ հանգեցնում է ռադիոճառագայթման պայծառության նվազեցմանը և ոչ թե մեծացմանը: Բայց այդպիսին է վիճակը միայն երկար ալիքներով դիտելու դեպքում: Եվ եթե չափումները կատարվեն երկու և ավելի երկարության ալիքներով, ապա կարելի է բաժանել այս երկու էֆեկտները:

Այս ծրագրի մի մասն արդեն կատարված է: Ամպի մեջ էլեկտրոնների քաոսային շարժման առաջացրած երևույթները հստակորեն առանձնացված են: Այժմ նման ռադիոդիտումները դարձել են գալակտիկաների կուտակումներում տաք միջգալակտիկային գազի հայտնաբերման կարևոր մեթոդ: Ռենտգենյան դիապազոնում ստացված տվյալների հետ մեկտեղ ռադիոդիտումները հնարավորություն են ընձեռում միանգամից չափել գալակտիկաների կուտակումների և՛ բացարձակ (երկարության միավորներով), և՛ անկյունային չափերը: Դա արտակարգ կարևոր է տիեզերագիտության համար: Գիտենալով այդ երկու մեծությունները, հնարավոր է որոշել տարածությունը մինչև կուտակումները և դրանից հետո այն կապակցել հեռավոր գալակտիկաների ընդարձակման արագության հետ: Բացի այդ, հնարավոր է դառնում հաշվել նյութի միջին խտությունը Տիեզերքում, իսկ դա հիմք է հանդիսանում կանխագուշակելու նրա (Տիեզերքի) հեռավոր ապագան: Եթե միջին խտությունը մեկ խորանարդ մետրում երեք ատոմից պակաս լինի, ապա ընդարձակման պրոցեսը կշարունակվի անսահմանորեն երկար: Հակառակ դեպքում, տասնյակ միլիարդ տարիներ հետո այն կփոխարինվի խտացումով:

Արդեն եղած տվյալները հնարավորություն են ընձեռում հետևեցնել, թե գալակտիկաների կուտակումների արագությունները ռադիոճառագայթման հարաբերությամբ մեծ չեն: Այսպես, մեզանից երկու միլիարդ լուսատարի հեռու գտնվող և վայրկյանում 50.000 կիլոմետր արագությամբ հեռացող (եթե դատելու լինենք սպեկտրի գծերի տեղաշարժով) կուտակումը

գործնականում դադարի վիճակում է այն կոորդինատների սիստեմի նկատմամբ, որը կապված է մնացուկային ճառագայթման հետ (արագությունը՝ 50.000-ի տասը տոկոսից պակաս):

Այս դիտումները ՍՍՀՄ-ում սկսվել են Պուլկովոյում և ՌԱՏԱՆ-ի մեծ ռադիոդիտակով: Այնուհետև աշխատանքի մեջ ներքաշվեցին նաև ուրիշ երկրների գիտնականները: Դիտումների արդյունքները մեկ անգամ ևս հաստատում են ընդարձակվող (փախչող) գալակտիկաներով «տաք» Տիեզերքի ընդհանուր պատկերը: Բայց այն, ինչ դեռևս պետք է որոշել, մեծ հետաքրքրություն է ներկայացնում Տիեզերքի ավելի նուրբ կառուցվածքը ճանաչելու համար; հասկանալու համար այն, թե ինչպես անձև միատարր պլազմայից առաջացել են գալակտիկաների կուտակումները:

**ՅՈՒ. ՁԵԼԴՈՎԻՉ**

Ակադեմիկոս, սոցիալիստական աշխատանքի եռակի հերոս

**Ռ. ՍՅՈՒՆՅԱԵՎ**

Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտոր

«Правда», 8/X-1979 г

## «ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ» ԱՄՍԱԳՐԻ ՆՅՈՒԹԵՐԻՑ

### ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ Է ԵՆԹԱՐԿՎԵԼ

*«Партийная жизнь» ամսագրի խմբագրությանն ուղղած իր նամակներում Մ. Նիկողոսյանը հայտնում էր Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի գունավոր մետալուրգիայի վարչության արտադրական երկրաբանական-հետախուզական տրեստի ու նրա կառավարիչ Լ. Տեր-Աբրահամյանի գործունեության մեջ տեղ գտած լուրջ թերությունների մասին:*

*Միջոցներ ձեռնարկելու նպատակով Մ. Նիկողոսյանի նամակներն ուղարկվեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմ: Ինչպես հաղորդում է Կենտկոմի քարտուղար Գ. Անդրեևը, նամակներում նշված փաստերը հիմնականում հաստատվել են: Ահազանգների ավյալները ստուգելուց հետո ՍՍՀՄ գունավոր մետալուրգիայի մինիստրությունը 1979 թվականի հունվարին տրեստի կառավարիչ Լ. Տեր-Աբրահամյանին հայտարարել է նկատողություն՝ պետական ու ֆինանսական կարգապահությունը խախտելու համար:*

*1979 թ. ապրիլին Երևան քաղաքի 26 կոմիսարների անվան շրջանի կուսշրջկոմը ՍՄԿԿ անդամ Լ. Տեր-Աբրահամյանին հայտարարել է խիստ նկատողություն՝ պետական կարգապահության կոպիտ խախտումների, անտնտեսավարության, կադրերի հետ թույլ աշխատանքի համար:*

«ПАРТИЙНАЯ ЖИЗНЬ» № 24



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 05524   Պատվեր 3115   Թղթի չափսը 70×108¹/₁₆*   *Տիրաժ՝ 16.590   Գինը՝ 20 կոպ.*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:   Ստորագրված է տպագրության 10/I 1980 թ.:*

# Նոր գրքեր

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 24: «Հայաստան» հրատ., 1979:*

Լ. ԱՆԱՆՅԱՆ— Սովետական Հայաստանի ինդուստրիալ զարգացումը *(Նախապատերազմյան շրջան): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Լ. ՄԵԼՔՈՆՅԱՆ— Սոցիալիստական պլանավորման հարցերը արդյունաբերական ձեռնարկություններում: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Բ. ՍԵԼՎԻՆԱՋՅԱՆ— Արտադրական ռեսուրսների օգտագործման տնտեսական գնահատումը արդյունահանող արդյունաբերության մեջ: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Վեց հատորով: Հ. 1, Ե., ԳԱ հրատ., 1979:*

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Մ. Նալբանդյանի հնդկական ուղևորությունը: *Ե., «Սովետական գրող», 1979:*

Ս. ԴԱՐՈՆՅԱՆ— Միքայել Նալբանդյան: *Կյանքը և գործունեությունը: Ե., «Սովետական գրող», 1979:*

Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Գեղագիտական ուսմունքների պատմություն: *Համառոտ ակնարկ: ԵՊՀ հրատ., 1979:*

Նոր բառգիրք Հայկազեան լեզուի: *Հատոր առաջին: Ա—Կ: ԵՊՀ հրատ., 1979:*

ՀՐ. ԱՃԱՌՅԱՆ— Հայերեն արմատական բառարան: *Հ. Դ: Պ—Ֆ: «Հայագիտական ուսումնասիրությունների մատենաշար»: ԵՊՀ հրատ., 1979:*

Է. ԿՈՍՏԱՆԴՅԱՆ— Գարեգին Սրվանձտյանց *(Կյանքը և գործունեությունը): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Վ. ԴԱՎԹՅԱՆ—Բարի հսկան: *Հանդիպումներ Վիլյամ Սարոյանի հետ: Ե., «Սովետական գրող», 1979:*

Ե. ՌՈՄԱՆՅԵՎ— Օրինաչափ հրաշքներ: *«Հայաստան» հրատ., 1979:*

К. МАРКС И Ф. ЭНГЕЛЬС — **О социалистической революции.** Изд. 2-ое, доп. М., Политиздат, 1979.

**Воспоминания о Владимире Ильиче Ленине.** В 5-ти томах. Т. 3, 4. Изд. 2-ое. М., Политиздат, 1979.

**Слово в языке произведений В. И. Ленина.** Сборник статей. М., «Наука», 1979.

Л. И. БРЕЖНЕВ — **Об основных вопросах экономической политики КПСС на современном этапе.** Речи и доклады. Том первый, второй. Изд. второе, доп., М., Политиздат, 1979.

В. ГРИШИН — **Избранные речи и статьи.** М., Политиздат, 1979.

В. ДЯГИЛЕВ — **М. И. Ульянова.** Серия «Семья Ульяновых». Изд. второе, доп., М., Политиздат, 1979.

С. СУРНИЧЕНКО — **Ленинские принципы партийного руководства хозяйственным строительством.** М., Политиздат, 1979.

**Вопросы партийного руководства нравственным воспитанием.** По материалам Всесоюзной научно-практической конференции в Баку (25—27 апреля 1979 г.). М., Политиздат, 1979.

**Социальная политика КПСС в условиях развитого социализма.** Коллективная монография. М., Политиздат, 1979.

**Вопросы теории и методов идеологической работы.** Выпуск II. Комплексный подход к воспитанию: взаимодействие видов, направлений и средств идеологической деятельности. М., «Мысль», 1979.

**Мирное сосуществование и борьба за социальный прогресс.** М., Политиздат, 1979.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՇՎԻՉ ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՄԵՔԵՆԱՆ ԵՐԳԱՐՎԵՍՏՈՒՄ

*Երաժշտական բանահյուսության ոչ մի խորագիտակ չի կարող մրցել* EC—*1030 հաշվիչ էլեկտրոնային մեքենայի հետ, որը գտնվում է Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի արվեստագիտության, ազգագրության և բանահյուսության ինստիտուտի գիտնականների տրամադրության տակ։ Վեց վայրկյանում ավտոմատ համակարգը տալիս է տեղեկություններ ինստիտուտի ժողովածուներում զետեղված հազարավոր ժողովրդական երգերից ցանկացածի վերաբերյալ և միաժամանակ հաղորդում երգի կոդավորված մեղեդին։ Մեքենան կարելի է օգտագործել տարբեր ժողովրդների երգարվեստը համեմատելիս։*

## ԱՐՀԵՍՏԱԿԱՆ ՓԻՐՈՒԶ

*Սովետական գիտնականները լաբորատոր պայմաններում ստացել են կապտագույն թանկարժեք գունավոր հանքատեսակ՝ փիրուզ։ Դրա ստեղծման պրոցեսը, որի վրա բնությունը վատնում է միլիոնավոր տարիներ, հնարավոր եղավ հասցնել մի քանի օրվա։ Փիրուզի պատրաստման արդյունաբերական տեխնոլոգիան մշակվել է հանքային հումքի սինթեզման համամիութենական ինստիտուտում (Վլադիմիրի մարզ)։ Այստեղ պատրաստել են նաև վարդագույն, մորագույն, ոսկե-դեղնավուն, նարնջագույն, կապտագույն և կանաչավուն նռնաքարեր։ Հետազոտությունները հաստատել են այդ փայլաքարերի և բնական բյուրեղների նույնությունը։*

## ՌՈԲՈՏՆԵՐԻ ԼԱՐԻՉԸ

*Այնտեղ, ուր ռոբոտները հաստոցային ընդհանուր պարկի մի մասն են, հարմար է լեհական խմբային ԱԿՀ-ի ենթահամակարգի կիրառումը։ Դրա խնդիրն է՝ հսկել ամեն մի հաստոցի և տեխնոլոգիական ողջ շղթայի աշխատանքը— հումքի մատուցումից մինչև ստուգված արտադրանքի հանձնումը։ Յուրաքանչյուր ռոբոտ սինխրոնացվում է իր սպասարկած մեքենային, իսկ հաստոցների խումբը՝ աշխատանքային ցիկլի փուլերին։ Այդ ողջ բարդ գործը ղեկավարում է մինի-ԷՀՄ «50—20»-ը։ Այստեղ առավելությունն այն է, որ ժամանակի կողմից ստուգված ծրագիրը ցանկացած պահին կարելի է պատճենահանել և հաղորդել այլ ձեռնարկության։ Բացի դրանից, արտադրական ընթացքի և ձեռք բերված պլանային ցուցանիշների վերաբերյալ ենթահամակարգի կուտակած տվյալները* «EC—*1045» կոմպլեքսի ու տվյալների հեռուստամշակման պրոցեսորի միջոցով օպերատիվ կերպով կարելի է հաղորդել հարյուրավոր կիլոմետրերի վրա՝ ճյուղային մինիստրության հաշվիչ կենտրոններին ու ղեկավար պլանային մարմիններին։*

## ԿՈՄՊՅՈՒՏԵՐ ԺԱՄԱՑՈՒՅՑ

*«Հյուլետ-Պակարդ» ֆիրման (ԱՄՆ) թողարկել է էլեկտրոնային կոմպյուտեր՝ ձեռքի ժամացույցի տեսքով։ Այդ ունիվերսալ սարքը միաժամանակ կատարում է թվային էլեկտրոնային ժամացույցի և հաշվիչ մեքենայի ֆունկցիա։ Ժամացույցն ունի փոքր ստեղնաշար, որի վրա կարելի է հավաքել մի քանի թվաբանական գործողություն։ Արդյունքները հայտնվում են լուսատու փոքրիկ ցուցատախտակին։ Ստեղնաշարն այնքան փոքր է, որ կոճակը պետք է սեղմել միայն սանրի ծայրով։*

*Սարքը «ժամացույցային» ռեժիմի փոխադրելիս ցուցատախտակին առկայծում են վայրկյանները, հայտնվում են րոպեներն ու ժամերը։ Այն տեղեկացնում է և՛ շաբաթվա օրերի, և՛ տարվա ամիսների մասին։ Ժամացույցն ընդամենը 140 գրամ է, բայց տասնյակ անգամ թանկ է գրպանի սովորական կոմպյուտերից։*